

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**4**

ԱՊՐԻԼ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

**ИЗДАЕТСЯ С 1922 г.**
**Выходит один раз в месяц на армянском языке**

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը

# ՌՍԴԲԿ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 80-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

Ութսուն տարի առաջ՝ 1903 թվականի հուլիսի 30-ին, բացվեց ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը, որտեղ ստեղծվեց բոլշևիկյան կուսակցությունը: Համագումարն ավարտեց Վլադիմիր Իլյիչ Լենինի մշակած գաղափարական, քաղաքական և կազմակերպական սկզբունքներով Ռուսաստանի հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը: Պատմական ասպարեզ դուրս եկավ նոր տիպի կուսակցություն՝ բանվոր դասակարգի կուսակցությունը, գիտական կոմունիզմի կուսակցությունը, սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի կառուցման կուսակցությունը:

Լենինյան կուսակցության կազմավորումը հանդիսացավ հասարակակոն զարգացման օրինաչափ արգասիքը, շրջադարձային կետ եղավ ռուսաստանյան և միջազգային պրոլետարիատի ազատագրական պայքարի մեջ: 19-րդ և 20-րդ դարերի սահմանագծում կապիտալիզմը մտավ իմպերիալիստական ստադիա, որը ծայր աստիճան սրեց սոցիալ-տնտեսական բոլոր հակասությունները: Այդ հակասությունները բացառիկ ուժով դրսևորվեցին Ռուսաստանում, որտեղ դրանք խորանում էին ցարիզմի քաղաքական, հոգևոր և ազգային ճնշման հետևանքով: Այստեղ փոխադրվեց համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը: Բուրժուակալվածատիրական կարգերի դեմ պայքարի էր ելնում բանվոր դասակարգը, ուժեղանում էին աշխատավոր գյուղացիության ելույթները: Երկրում տեղի էր ունենում մարքսիզմի տարածման ինտենսիվ պրոցես, որի մեջ ակնառու դեր խաղաց «Աշխատանքի ազատագրություն» խումբը: Բանվորական շարժումը գիտական սոցիալիզմի հետ միացնելու խնդիրները պրոլետարական հեղափոխական կուսակցության օբյեկտիվ պահանջմունք էին առաջացնում:

Կուսակցության ստեղծումն անքաժանելի է հանճարեղ մտածող, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մեծ գործի հետևորդ ու շարունակող Վ. Ի. Լենինի տեսական ու գործնական վիթխարի գործունեությունից: Նա զարգացրեց նրանց ուսմունքը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի պայմաններում, հետևություն արեց սկզբնապես մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին, հեղափոխական փորձի ընդհանրացման ու համակողմանի վերլուծության հիման վրա տվեց բանվոր դասակարգի ազատագրական շարժման արմատական հարցերի պատասխանները: Հաղթահարելով օպորտունիզմի և ռեֆորմիզմի համառ դիմադրությունը, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց իսկական հեղափոխական կուսակցության անհրաժեշտությունը և գլխավորեց այդպիսի կուսակցության կազմավորման պայքարը:

1895 թվականին Վ. Ի. Լենինի կազմակերպած «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը» դարձավ այդպիսի կուսակցության սաղմը: 1898 թվականին կայացած ՌՍԴԲԿ առաջին համագումարը հռչակեց կուսակցության հիմնադրումը, բայց չկարողացավ ստեղծել այն՝ որպես միասնական կենտրոնացված կազմակերպություն: Այդ խնդիրը կատարեց լենինյան «Իսկրայի» նախապատրաստած երկրորդ համագումարը: «Բոլշևիզմը,— նշել

է Վ. Ի. Լենինը,— որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական կուսակցություն, գոյություն ունի 1903 թվականից» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 7): Բոլշևիկյան կուսակցությունը սկզբունքորեն տարբերվում էր երկրորդ ինտերնացիոնալի կուսակցություններից, որոնք ընդունակ չէին հեղափոխական գործողության: Նոր տիպի կուսակցության բնորոշ գծերն ու առանձնահատկությունները, որոնք նրան ներհատուկ են եղել իր առաջացման պահից և բյուրեղացել են հետագա զարգացման ընթացքում, արտահայտվում են այն բանում, որ նա՝

ղեկավարվում է մարքս-լենինյան ուսմունքով և ստեղծագործաբար զարգացնում է այն, ապահովում է հեղափոխական տեսության և հեղափոխական պրակտիկայի օրգանական միասնությունը.

հանդիսանում է բանվոր դասակարգի կոլեկտիվ քաղաքական առաջնորդը, նրա կազմակերպության բարձրագույն ձևը, բոլոր աշխատավորների ավանգարդը. մասսաների հետ ամենասերտ կապը նրա անսպառ ուժի աղբյուրն է.

իր գործունեությունը կառուցում է դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա, անդուլ կերպով ամրապնդում է իր շարքերի գաղափարական ու կազմակերպական միասնությունը, գիտակցական կարգապահությունը, զարգացնում է կուսակցության անդամների ակտիվությունը.

անհաշտ է ամեն տեսակ ֆրակցիոնության ու խմբակայնության նկատմամբ, ռևիզիոնիզմի, օպորտունիզմի և դոգմատիզմի դրսևորումների նկատմամբ.

քննադատաբար վերլուծում է իր հեղափոխական-վերակերտիչ գործունեության, իր քաղաքականության արդյունքները, մշտապես ուսումնասիրում, գնահատում և օգտագործում է միջազգային կոմունիստական շարժման կուտակած փորձը.

հետևողականորեն իրականացնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները:

Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով զինված բոլշևիկների կուսակցությունը գլխավորեց պրոլետարիատի և նրա դաշնակիցների ազատագրական պայքարը ռուսական երեք հեղափոխություններում և աշխատավոր մասսաներին հասցրեց հաղթական Հոկտեմբերին: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը արմատական հեղաշրջում նշանավորեց մարդկության պատմական ճակատագրում, բացեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարագլուխը:

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի շնորհիվ կուսակցության առջև ծառացան բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին պետության, պրոլետարիատի դիկտատուրայի պետության կառուցման ու պաշտպանության խնդիրները: Ջախջախելով ներքին հակահեղափոխության և միջազգային իմպերիալիզմի միացյալ ուժերին, հաղթականորեն ավարտելով քաղաքացիական պատերազմը, սովետական մարդիկ, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, տիտանական գործունեություն ծավալեցին սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման ուղղությամբ: Քայքայվածության, կապիտալիստական տերությունների կողմից տնտեսական ու քաղաքական շրջափակման պայմաններում սովետների երկրի աշխատավորները իրականացրին արմատական վերափոխումներ՝ սոցիալիստական ինդուստրացում, գյուղատնտեսության կոլեկտիվացում, կուլտուրական հեղափոխություն: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակը եղավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը, երկրի բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի համակողմանի վերելքը: Կուսակցության և ժողովրդի հեղափոխական-վերակերտիչ գործունեության շնորհիվ ՍՍՀՄ-ում կառուցվեց սոցիալիզմ: Նոր հասարակարգը մարդկության պատմության մեջ առաջին անգամ հաստատեց արտադրության միջոցների հանրային սեփականություն, վերջ տվեց դասակարգային և ազգային հակամարտություններին, շահագործմանն ու գործազրկությանը, բերեց իսկական ազատություն, նյութական և հոգևոր կուլտուրայի նվաճումները ի սպաս դրեց աշխատավորներին: Կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանն ավարտվելու և սոցիալիստական կացութաձևն ամրապնդվելու շնորհիվ երկրում ստեղծվեցին իրավահավասարության, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության հարաբերություններ, հաստատվեց ժողովրդի բարոյաքաղաքական միասնություն, մարքսիզմ-լենինիզմը դարձավ սովետական հասարակության տիրապետող գաղափարախոսությունը:



Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին կուսակցությունը հանդես եկավ որպես գերմանաֆաշիստական զավթիչների դեմ համաժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը: Նրա ղեկավարությամբ սովետական մարդիկ համաշխարհային պատմական հաղթանակ տարան, աշխարհի ժողովուրդներին փրկեցին ֆաշիստական ստրկացման սպառնալիքից: Հետպատերազմյան ժամանակաշրջանում երկիրը կարճ ժամկետում բուժեց պատերազմի ծանր վերքերը և նոր նշանակալի հաջողությունների հասավ էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի ստեղծարար գործունեության գլխավոր արդյունքը ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիզմի կառուցումն է: Մեր երկիրը գտնվում է կոմունիստական ֆորմացիայի կազմավորման այդ օրինաչափ և պատմականորեն տևական փուլի սկզբում: Արդի պայմաններում կուսակցության և ժողովրդի գործունեության հիմնական բովանդակությունը զարգացած սոցիալիզմի կատարելագործումն է, որի համեմատ էլ տեղի կունենա աստիճանական անցումը կոմունիզմին: Դա ենթադրում է արտադրողական ուժերի հետագա վերելք, կոլեկտիվիստական հասարակական հարաբերությունների, սովետական պետականության ու դեմոկրատիայի, սոցիալիստական գիտակցության, գիտության ու կուլտուրայի զարգացում և ամրապնդում: Կուսակցությունը նշում է, որ անհրաժեշտ է մեր հասարակությունը տեսնել ռեալ դինամիկայի մեջ, ճիշտ գնահատել նրա նվաճումներն ու պրոբլեմները, նրա հնարավորություններն ու կարիքները:

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց տասնմեկերորդ հնգամյակի և, ամբողջությամբ վերցրած, 80-ական թվականների խնդիրները: Կուսակցության ուշադրությունը կենտրոնում է հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, նրա ինտենսիվացման կուրսի իրականացումը: Հատուկ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի ըստ ամենայնի արագացմանը և ձեռքի աշխատանքի բաժնի կրճատմանը, ռեսուրսների բոլոր տեսակների խնայողությանն ու ռացիոնալ օգտագործմանը, կապիտալ ներդրումների հատույցի մեծացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումները, պարենային ծրագիրը նոր փուլ են նշանավորում կուսակցության արդի ագրարային քաղաքականության մեջ: Իրականացվում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ավելի խոր շրջադարձ դեպի գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի, ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման, երկրին անխափան կերպով սննդամթերքներ մատակարարելու գործի ապահովման պրոբլեմների լուծումը:

Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերվածը, կուսակցությունը տեսնում է նաև ժողովրդական տնտեսության զարգացման թերությունները, աշխատավորներին մոբիլիզացնում է դրանց վերացման համար: ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ճառում տրված է էկոնոմիկայի վիճակի խոր վերլուծությունը, բացահայտված են ռեզերվները, նշված են հասունացած պրոբլեմների լուծման ուղիները: Շեշտված է աշխատանքի արտադրողականության աճի բացառիկ նշանակությունը, մի բան, որը, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար: Առաջնահերթ նշանակություն է տրվում ինդուստրիայի, հատկապես նրա բազային ճյուղերի՝ վառելիքաէներգետիկ կոմպլեքսի, երկաթուղային տրանսպորտի, սև մետալուրգիայի, կապի-

տալ շինարարության հետագա զարգացմանը: Խնդիր է դրված ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջարկը արդյունաբերական և պարենային ապրանքների ասպարեզում: Պետք է արագացվի էկոնոմիկայի ղեկավարման ամբողջ ոլորտի՝ կառավարման, պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքը:

Սոցիալիստական արտադրության գերագույն նպատակը ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացումն է, անհատի համակողմանի զարգացման պայմանների ստեղծումը: Սովետական մարդու բարօրության նկատմամբ հոգատարությունը եղել ու մնում է մեր կուսակցության գլխավոր գիծը: ՍՄԿԿ-ն իրականացնում է նյութական և բարոյական խթանումը մշտապես կատարելագործելու կուրս, ձգտում է հասնել բաշխման սոցիալիստական սկզբունքների հետևողական հաստատման, նշում է, որ աշխատավարձը կարող է բարձրանալ միայն աշխատանքի արտադրողականության առավել արագ աճի հիման վրա: Սկզբունքային նշանակություն է տրվում աշխատանքի նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքի, պորտաբուծության, անաշխատ եկամուտների և մեր հասարակարգի էությանը խորթ այլ երևույթների դեմ մղվող պայքարին: Կուսակցությունը շեշտում է, որ միայն աշխատանքը և նրա արդյունքները կարող են լինել յուրաքանչյուր մարդու բարեկեցության աղբյուրը:

Կուսակցության առաջադրած խնդիրների կատարումը պահանջում է բարձրացնել աշխատավորների՝ բանվորից մինչև մինիստր, պատասխանատվությունը հանձնարարված բնագավառի համար, կարգուկանոն և կազմակերպվածություն հաստատել ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, ամրապնդել պլանային, աշխատանքային և պետական կարգապահությունը: Գործի շահերը թելադրում են աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևեր ներդնելու, առաջավոր փորձը լայնորեն տարածելու, սոցիալիստական մրցության ներգործունությունը բարձրացնելու անհրաժեշտությունը:

Երկրում տեղի է ունենում բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցման օբյեկտիվ պրոցեսը: Կուսակցությունն ու պետությունը նպաստում են սոցիալական միատարրության ուժեղացմանը, վարում են քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի աշխատողների միջև գոյություն ունեցող տարբերությունների հետագա վերացման հետևողական կուրս: Գնահատելով մեր հասարակության զարգացման փորձը, ՍՄԿԿ-ն գիտականորեն հիմնավորված այն հետևությունն արեց, որ հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմավորումը գլխավորապես և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում:

Լենինի կուսակցությունն իրավամբ հպարտանում է ազգային հարաբերությունների բնագավառում ձեռք բերած նվաճումներով: Ազգային հարցը այն ձևով, ինչ ձևով այն մեզ էր թողել շահագործական հասարակարգը, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն: Պատմության մեջ առաջին անգամ երկրի բազմազգ կազմը նրա թուլության աղբյուրից վերածվել է նրա ուժի և ծաղկման աղբյուրի: Հասարակության սոցիալական և ինտերնացիոնալ միասնության բարձրագույն արտահայտությունը եղավ մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումն ու զարգացումը: Եղբայր ժողովուրդների անխախտ համախմբվածության վառ ցույցի վերածվեց ՍՍՀ Միության կազմավորման 60-ամյակի տոնակատարությունը:

Մեր պետության նման խոշոր բազմազգ պետության զարգացումը դրա հետ մեկտեղ ծնում է նոր պրոցեսներ ու պրոբլեմներ, որոնք սևեռուն ուշադրություն են պահանջում: ՍՄԿԿ-ն ապահովում է արտադրողական ուժերի տեղաբաշխման հետևողական կատարելագործումը միասնական, ընդհանուրմիութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի շրջանակներում, հոգ է տանում բանվոր դասակարգի ազգային ջոկատների աճի, կուսակցական և պետական մարմիններում բոլոր ազգերի աշխատավորների պատշաճ ներկայացուցչության մասին, սովետական մարդկանց դաստիարակում է ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, իրենց միասնական սովետական հայրենիքի նկատմամբ սիրո ոգով:



Մեր հասարակության առաջընթացի կարևոր պայմանն է սոցիալիստական դեմոկրատիայի հետևողական ծավալումը: Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական սոցիալիստական պետության վերաճելը հսկայական կարևորություն ունեցող առաջխաղացում նշանակեց սոցիալիզմի քաղաքական սիստեմի և ժողովրդապետության զարգացման համար: ՍՍՀՄ նոր սահմանադրությունը ստեղծեց սովետական դեմոկրատիայի խորացման, նրա ձևերի ու մեթոդների հարստացման օրենսդրական բազա: Կուսակցությունը նպատակաուղղված աշխատանք է կատարում ամենալայն մասսաներին պետական ու հասարակական գործերի կառավարման մեջ ներգրավելու, ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և հասարակական այլ կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ակտիվությունը ժողովրդատնտեսական և սոցիալական խնդիրների լուծման ասպարեզում բարձրացնելու նպատակով: Միջոցներ են ձեռնարկվում օրինականությունն ու իրավակարգն ամրապնդելու ուղղությամբ:

Կուսակցության ուղղություն տվող գործունեությունը բարերար ազդեցություն է ունենում սովետական հասարակության հոգևոր կյանքի վրա: Ավարտվել է անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության, ստեղծվել է բարձրագույն, միջնակարգ-մասնագիտական և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության միասնական համակարգ, որը հիմնականում ժողովրդական տնտեսությունն ապահովում է մասնագետների ու բանվորների որակյալ կադրերով: Մեր ժամանակի բնորոշ հատկանիշը գիտության վրա հենվելն է, արտադրության հետ նրա կապի ամրապնդումը, գիտության վերածումը անմիջական արտադրողական ուժի:

Կուսակցությունը հոգ է տանում սոցիալիստական կուլտուրայի զարգացման մասին, գրականության և արվեստի գործիչներին կողմնորոշում է դեպի կուսակցականության և ժողովրդայնության ոգով ներթափանցված բարձրարվեստ ստեղծագործությունների կերտումը: Նա ամենալայն մասսաներին ակտիվորեն ներգրավում է կուլտուրական շինարարության մեջ, նպաստում է մարդկանց ընդունակությունների ու ձիրքերի բացահայտմանը:

Ամրապնդելով սոցիալիստական ապրելակերպի նյութական ու հոգևոր հիմքերը, ՍՄԿԿ-ն հաստատակամորեն լուծում է հասարակության անդամների մեջ մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու, նրանց մեջ կոմունիզմի իդեալների նկատմամբ նվիրվածություն, երկրի տիրոջ զգացում, քաղաքական և բարոյական կուլտուրա, բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության նկատմամբ անհաշտության զգացում դաստիարակելու խնդիրները: Աշխատանք է կատարվում քաղաքական-դաստիարակչական գործունեության գաղափարատեսական ու կազմակերպական մակարդակը բարձրացնելու, կյանքի հետ նրա կապն ամրապնդելու նպատակով: Մեր նվաճումների համոզիչ ցուցադրումը, նոր պրոբլեմների լուրջ վերլուծությունը, մտքի ու խոսքի թարմությունը կուսակցությունը համարում է պրոպագանդայի կատարելագործման ուղին, պրոպագանդա, որը միշտ պետք է լինի ճշմարտացի և ռեալիստական, հետաքրքիր ու մատչելի, ուրեմն և՝ ավելի ներգործուն:

Իր բոլոր նվաճումները մեր ժողովուրդն իրավամբ կապում է ՍՄԿԿ-ի բազմաբեղուն գործունեության հետ, որը սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, նրա քաղաքական սիստեմի միջուկը: Ութսուն տարում հեղափոխական մարքսիստների ոչ մեծ կազմակերպությունից նա վերածվել է հզոր ու համախմբված կուսակցության, որն իր շարքերում այժմ ունի ավելի քան 18 միլիոն կոմունիստներ: Զարգացած սոցիալիզմի պայմաններում, դառնալով ամբողջ ժողովրդի կուսակցությունը, ՍՄԿԿ-ն չի կորցնում դասակարգային բնույթը և իր էությամբ մնում է բանվոր դասակարգի կուսակցություն: Սովետական հասարակության կյանքում կոմունիստական կուսակցության դերը անշեղորեն աճում է:

Կուսակցությունն ապահովում է դեմոկրատական ցենտրալիզմի, կուսակցական կյանքի լենինյան նորմերի անշեղ կիրառումը: Դրանց հիման վրա

նա հաստատակամորեն լուծում է իր որակական կազմի բարելավման, կուսակցական շարքերի համախմբվածության, սկզբնական կազմակերպությունների մարտունակության բարձրացման, աշխատավորական կոլեկտիվներում նրանց ազդեցության ուժեղացման հարցերը:

Կադրերի հետ կատարվող աշխատանքում կուսակցությունը ձգտում է այն բանին, որ կուսակցական, պետական, տնտեսական և կուլտուր-դաստիարակչական գործունեության բոլոր ասպարեզներում կանգնած լինեն քաղաքականապես հասուն և բարձրաբարո, իրազեկ ու նախաձեռնող մարդիկ՝ օժտված կազմակերպչական ընդունակություններով և նորի զգացումով: Սկզբունքայնության ու պահանջկոտության բարձրացումը, քննադատության և ինքնաքննադատության զարգացումը, վերահսկողության և կատարման ստուգման սիստեմի կատարելագործումը կուսակցությունը համարում է թերությունները հայտնաբերելու և վերացնելու, կուսակցական ու պետական ապարատի բոլոր օղակներում կազմակերպվածությունն ու կարգապահությունն ամրապնդելու հուսալի միջոց:

ՍՄԿԿ-ն կարևոր նշանակություն է տալիս ամենուրեք աշխատանքի լենինյան ոճի՝ ստեղծագործական ոճի հաստատմանը, որն ապահովում է գիտական մոտեցումը բոլոր հասարակական պրոցեսներին, մասսաների վրա մշտապես հենվելը, բարձր գործարարությունը, կոնկրետությունն ու պահանջկոտությունը, ձևամոլության, բյուրոկրատիզմի և պարադայնության բոլոր դրսևորումների նկատմամբ անհաշտությունը: Կուսակցությունը շեշտում է՝ գործարարություն և ոչ թե մեծադղորդ խոսքեր՝ ահա թե ինչ է հարկավոր այսօր:

Սովետական հասարակության անխորտակելիության, սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկման աղբյուրը եղել ու մնում է կուսակցության և ժողովրդի անսասան միասնությունը: Որքան կոմունիստները հետևողականորեն և լրիվ են կատարում իրենց ավանգարդային դերը, այնքան ամուր ու բեղմնավոր է կուսակցության կապը մասսաների հետ: ՌՍԴԲԿ երկրորդ համագումարում Վ. Ի. Լենինը կոչ էր անում «կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունն ավելի, ավելի ու ավելի բարձրացնել» (**ԵԼԺ**, հ. 7, էջ 363—364): Կուսակցությունը այսօր էլ հավատարիմ է այդ պատգամին: ՍՄԿԿ-ն հոգ է տանում, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ լինի կուսակցության մեծ իդեալների հաղթանակի համար պայքարող անձնվեր մարտիկ, խորապես իմանա, հասկանա և կենսագործի մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, կուսակցության քաղաքականությունը: Կուսակցությանը պատկանելությունը ոչ մի առանձնաշնորհում չի տալիս, այլ նշանակում է լոկ կոմունիստների ավելի բարձր պատասխանատվություն այն ամենի համար, ինչ արվում է երկրում, սոցիալիստական շինարարության և հասարակական առաջընթացի բախտի համար:

Կոմունիստական կուսակցության ուժն այն է, որ նա իր ամբողջ գործունեությունը, իր յուրաքանչյուր քայլը ստուգում է Մարքսի, Էնգելսի, Լենինի անմահ ուսմունքով, որը տալիս է հասարակական զարգացման ամենաբարդ հարցերի միակ ճիշտ պատասխանները, հանդիսանում է իրականության ճանաչման ու վերափոխման գործուն մեթոդը: Կուսակցությունը որպես կարևոր ու մշտապես հրատապ խնդիր է դիտում սոցիալական փորձի և ծագող պրոբլեմների իմաստավորումը, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացումը՝ անհրաժեշտ պայման համարելով հավատարմությունը նրա հիմնարար սկզբունքներին:

Հիմնադրման պահից Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը անշեղորեն ղեկավարվում է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով: Նրա ողջ պատմությունը ազգայինի և միջազգայինի անխզելի զուգորդման ամենավառ օրինակն է: Արդի պայմաններում ՍՄԿԿ-ն հետևողականորեն լուծում է երկմիասնական ինտերնացիոնալ խնդիր՝ իր երկրում իրականացնում է նոր հասարակության հաջող կառուցումը, դրանով իսկ ակտիվորեն ներգործելով համաշխարհային ազատագրական շարժման ընթացքի վրա և օգնություն ու աջակցություն է ցույց տալիս արդիականության հեղափոխական, առաջադիմական շարժումներին:



Հասարակական առաջընթացի վճռական գործոն է դարձել սոցիալիզմի համաշխարհային սիստեմը: Սոցիալիստական պետությունների ընկերակցությունը ներկայացնում է միջազգային հարաբերությունների նոր տիպ, որոնք կառուցվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների՝ գաղափարական միասնության, նպատակների ընդհանրության, ընկերական փոխօգնության վրա՝ երկրներից յուրաքանչյուրի շահերը, առանձնահատկությունները ու ավանդույթները լիովին հարգելու պայմաններում: Սոցիալիզմի երկրների հզորության ամրապնդման և նրանց սոցիալական առաջընթացի նպատակին են ծառայում Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեությունը, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրերի իրականացումը: Սոցիալիստական ընկերակցության հուսալի վահանը Վարշավայի պայմանագրի կազմակերպությունն է: Եղբայրական երկրների հետ բարեկամությունն ու համագործակցությունն ամրապնդելու հարցերը միշտ առանձնահատուկ, առաջնային տեղ են գրավել և կգրավեն ՍՄԿԿ-ի ու սովետական պետության միջազգային քաղաքականության մեջ:

Սոցիալիստական երկրների ժողովուրդները կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ մեծ հաջողությունների են հասել սոցիալիզմի կառուցման գործում: Դրա հետ մեկտեղ նոր հասարակարգի կատարելագործումը բարդ պրոցես է և ընթանում է միջազգային ոչ դյուրին իրադրության մեջ: Իմպերիալիզմը մշտական ճնշում է գործադրում սոցիալիստական երկրների վրա, ուժեղացնում է նրանց դեմ ուղղված քայքայիչ աշխատանքը, կազմակերպում է ստի և զրպարտության կենտրոնացված կամպանիաներ: Այդ պայմաններում քաղաքականության մեջ թույլ տրված սխալները, կուսակցության ղեկավար դերի նվազագույն թուլացումը, գաղափարական աշխատանքի մեջ եղած վրիպումները դասակարգային հակառակորդի կողմից կարող են օգտագործվել սոցիալիզմի դիրքերը թուլացնելու համար: Մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին հավատարմությունը, նոր հասարակության կառուցման ընդհանուր օրինաչափությունների և տվյալ երկրի առանձնահատկությունների ճիշտ հաշվառումը, մասսաների հետ մարքս-լենինյան կուսակցությունների սերտ կապը սոցիալիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման անհրաժեշտ պայմաններն են:

Գաղութատիրության վերացման համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության վճռական պայքարը, ազգային-ազատագրական շարժմանը ցույց տրված օգնությունն ու աջակցությունը նպաստեցին գաղութային սիստեմի խորտակմանը: Մեր կուսակցությունը ակտիվորեն պաշտպանում է ազատագրված ժողովուրդների պայքարը իրենց քաղաքական ու տնտեսական անկախության համար, առանձնահատուկ ուշադրություն նվիրելով սոցիալիստական կողմնորոշում ունեցող երկրների հետ բազմակողմանի կապերի զարգացմանը: ՍՄԿԿ-ն բարձր է գնահատում չմիանալու շարժումը, նրա հակաիմպերիալիստական ուղղվածությունը, պայքարը գաղութատիրության, ագրեսիայի և պատերազմական վտանգի դեմ, միջազգային արդարացի տնտեսական հարաբերությունների հաստատման համար:

Որպես հեղափոխական պայքարի, ամբողջ դեմոկրատական ու հակաիմպերիալիստական շարժման գլխավոր շարժիչ ուժ հանդես է գալիս միջազգային բանվոր դասակարգը: Մեր կուսակցությունը համերաշխ է այն քաջարի պայքարի հետ, որ ոչ սոցիալիստական երկրների բանվոր դասակարգը մղում է իր կենսական շահերի համար, մոնոպոլիաների անսահման իշխանության դեմ, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի համար: ՍՄԿԿ-ն հետևողականորեն վարում է միջազգային կոմունիստական շարժման դիրքերը, նրա համախմբվածությունն ամրապնդելու գիծ՝ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա, հանուն խաղաղության ամրապնդման և հասարակական առաջընթացի:

Կուսակցությունը վճռական հակահարված է տալիս գաղափարական հակառակորդներին, ռեալ սոցիալիզմի վրա նրանց հարձակումներին: ՍՄԿԿ-ն մյուս մարքս-լենինյան կուսակցությունների հետ համատեղ ակտիվորեն հանդես է գալիս և այսուհետև էլ հանդես կգա ռևիզիոնիզմի և օպորտունիզմի

դեմ, որոնք ձգտում են նսեմացնել կոմունիստական կուսակցությունների ղեկավար դերը բանվոր դասակարգի շահերի, աշխատավորների իշխանության համար մղվող պայքարում, սոցիալիզմի կառուցման գործում, ձտում են խարխլել նրանց միասնությունը: Բոլոր կոմունիստների ինտերնացիոնալ պարտքն է՝ պաշտպանել ու հաստատել մարքս-լենինյան ուսմունքը կուսակցության մասին:

ՍՄԿԿ-ն, ղեկավարվելով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով, հետևողականորեն ու հաստատակամորեն պայքարում է խաղաղության պահպանման և ամրապնդման համար: 80-ական թվականների համար ՍՄԿԿ XXVI համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը ցույց է տալիս մարդկությանը ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքից փրկելու, նրան սպառազինությունների մրցավազքի բեռից ազատելու ռեալ, գործնական ուղին:

Մեր կուսակցության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, վերջին ժամանակներս Սովետական Միության կողմից, ինչպես նաև Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Պրագայի խորհրդակցության քաղաքական դեկլարացիայում առաջ քաշված խոշոր նախաձեռնությունները արժանանում են միջազգային հասարակայնության ավելի ու ավելի մեծ պաշտպանությանը: Սովետական մարդիկ իրենց համերաշխությունն են հայտնում խաղաղության օգտին, սպառազինությունների մրցավազքի դեմ պայքարող մարտիկների՝ ուրիշ երկրներում լայնորեն ծավալված մասսայական շարժման նկատմամբ:

ՍՄԿԿ-ն, ամբողջ սովետական ժողովուրդը, եղբայրական կուսակցությունների, սոցիալիստական ընկերակցության երկրների աշխատավորների, բոլոր առաջադիմական ուժերի հետ մեկտեղ, վճռականորեն հանդես են գալիս իմպերիալիզմի և ամենից առաջ ԱՄՆ-ի ռազմատենչ շրջանների դեմ, որոնք փորձում են կազմակերպել հակակոմունիստական «խաչակրաց» արշավանք, աշխարհին սպառնում են միջուկային պատերազմով:

Հետևողականորեն պաշտպանելով խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործը, ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը միաժամանակ իրենց հաշիվ են տալիս այն բանում, որ քանի դեռ իմպերիալիզմը չի հրաժարվել ուժերի ստեղծված հավասարակշռությունը խախտելու և ռազմական գերազանցություն ստանալու ձգտումից, կարևոր է սովետական զինված ուժերն ապահովել այն ամենով, ինչ անհրաժեշտ է ՍՍՀՄ-ի, նրա դաշնակիցների ու բարեկամների պաշտպանության համար: Հետևելով Լենինի պատգամներին, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը անշեղորեն ցուցաբերում են բարձր զգոնություն, անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում մեր հայրենիքի պաշտպանունակությունն ամրապնդելու նպատակով:

Լենինյան կուսակցության անցած ուղին հիրավի պայքարի ու հաղթանակների հերոսական ուղի է: Նրա ղեկավարությամբ իրագործվեցին վիթխարի վերափոխումներ, որոնք վճռական ազդեցություն գործեցին ոչ միայն երկրի ճակատագրի վրա, այլև արմատապես փոխեցին համաշխարհային պատմության ընթացքը: Սովետական ժողովուրդը ի դեմս ՍՄԿԿ-ի տեսնում է իր փորձված ավանգարդին, իր արմատական շահերի արտահայտչին, լիակատար կերպով պաշտպանում է կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, ակտիվորեն պայքարում նրա կենսագործման համար:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է՝

ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակը լայնորեն նշել որպես մեր կուսակցության և սովետական ժողովրդի պատմության նշանակալի տարեթիվ: Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, սովետական մարմիններին, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններին, զինված ուժերի քաղմարմիններին առաջարկել՝ այդ կապակցությամբ քաղաքական ու կազմակերպչական ակտիվ աշխատանք ծավալել:



Այդ աշխատանքը կատարել կուսակցության և ժողովրդի անխախտ միասնության, ՍՄԿԿ-ի շուրջը աշխատավորների հետագա համախմբման նշանաբանով, մասսաներին կուսակցության XXVI համագումարի և դրան հաջորդած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների, կուսակցության Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումում, «ՍՍՀՄ վաթսուն տարին» զեկուցման մեջ, «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում և այլ ելույթներում ու փաստաթղթերում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի առաջ քաշած խնդիրների հաջող կատարման համար մոբիլիզացնելու նշանաբանով:

Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքում ջանքերը կենտրոնացնել գիտական սոցիալիզմի գաղափարների, կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի, ՍՄԿԿ-ի համաշխարհային պատմական փորձի պրոպագանդման վրա, այդ աշխատանքը կատարել Կ. Մարքսի ծննդյան 165-ամյակին և մահվան 100-ամյակին նվիրված միջոցառումների հետ սերտորեն շաղկապված: Վառ ու համոզիչ կերպով բացահայտել կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական նվաճումները, ՍՄԿԿ-ի բազմաբեղուն գործունեությունը, նրա հարաճուն նշանակությունը մեր հասարակության կյանքում: Աշխատավորության, հատկապես երիտասարդության շրջանում կատարվող դաստիարակչական աշխատանքում լայնորեն օգտագործել սոցիալիզմի համար մղված պայքարի փառավոր ավանդույթները, հասնել այն բանին, որ կոմունիստները ու կոմերիտականները լավ իմանան կուսակցության պատմությունը, հաստատ ու անշեղորեն կենսագործեն նրա որոշումները ու քաղաքականությունը:

Մոսկվա քաղաքում անցկացնել կուսակցության Երկրորդ համագումարի 80-ամյակին նվիրված հանդիսավոր նիստ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ Սովետական Միության կոմունիստները, բոլոր աշխատավորները արժանավայել կդիմավորեն կուսակցության պատմության փառապանծ տարեթիվը և այն կնշանավորեն աշխատանքային նոր մեծագործություններով ի բարօրություն մեր մեծ սոցիալիստական հայրենիքի, հանուն խաղաղության և սոցիալական առաջընթացի գործի հաղթանակի:

---

# ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱՅԻ» ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ: Մարտի 28-ին պրեզիդենտ Ռեյգանը հանդես եկավ ԱՄՆ-ի ռազմական քաղաքականության հարցերի վերաբերյալ ծավալուն հայտարարությամբ: Դուք ինչպե՞ս եք գնահատում այդ ելույթը:

*ՊԱՏԱՍԽԱՆ: Վերջին ժամանակներս Վաշինգտոնից ուղղակի ճառերի տարափ է տեղում՝ նվիրված նույն բանին՝ ռազմական պատրաստություններին, ռազմական ծրագրերին, զենքի նոր տեսակների ստեղծմանը: Հենց այդ մասին խոսեց պրեզիդենտը նաև այս անգամ:*

*Պրեզիդենտի հիշյալ ճառը, ըստ երևույթին, մտահղացված է եղել, որպեսզի փորձ արվեր ներազդելու Միացյալ Նահանգներում տրամադրությունների վրա, հանգստացնելու վարչակազմի ռազմատենչ կուրսի առթիվ երկրում հարաճուն տագնապը: Թե ամերիկացիներն իրենք ինչպես կգնահատեն պրեզիդենտի ասածը, իհարկե, իրենց գործն է:*

*Սակայն այն, ինչի մասին խոսեց պրեզիդենտը, վերաբերում է ոչ միայն ամերիկացիներին: Չէ որ ճառի ամբողջ իմաստը հանգում է այն բանին, որ Ամերիկան պետք է ուժգնորեն զինվի, դառնա աշխարհի գերիշխող ռազմական տերություն: Ընդ որում, ձգտելով հիմնավորել այդ գերիշխանական հավակնությունները, թույլ են տրվում Սովետական Միության քաղաքականության այնքան անպատկառ աղավաղումներ, կիրառվում այնքան անմաքրաբարո հնարքներ, որ, անկեղծ ասած, հարց է ծագում, իսկ ի՞նչ պատկերացումներ ունի պրեզիդենտը ուրիշ պետությունների հետ գործեր վարելու ստանդարտների մասին:*

*Եթե լսելու լինենք պրեզիդենտին, ստացվում է, թե իբր ԱՄՆ-ը ավելի թույլ է Սովետական Միությունից և՛ այստեղ, և՛ այնտեղ, և՛ նույնիսկ իր քթի տակ: Եվ այդ ամենը այն պատճառով, որ վերջին երկու տասնյակ տարիների ընթացքում ՍՍՀՄ-ն իբր արագ տեմպերով մեծացրել է իր զինված ուժերը, իսկ ահա Միացյալ Նահանգները նստած են եղել իբր ձեռքները ծալած, և նրանց զինված ուժերը անկում են ապրել:*

*Այո, ՍՍՀՄ-ը ամրապնդել է իր պաշտպանունակությունը: Սովետական տերիտորիայի մոտակայքում ռազմական բազաներ ծավալելու, միջուկային և այլ զենքի նորանոր տեսակներ ստեղծելու ԱՄՆ-ի տենդագին գործունեության դեմ հանդիման ՍՍՀՄ-ը ստիպված է եղել այդ բանն անել, որպեսզի վերացնի ամերիկյան ռազմական առավելությունը, որի համար այժմ այնքան թախծում են Վաշինգտոնում: Ձեռք բերված ռազմաստրատեգիական հավասարությունը ԱՄՆ-ին զրկեց միջուկային սպառնալիքով մեզ շանտաժի ենթարկելու հնարավորությունից: Այդ հավասարությունը խաղաղության հուսալի երաշխիքն է, և մենք ամեն ինչ կանենք այն պահպանելու համար:*

*Իսկ ինչ վերաբերում է այն պնդումներին, թե Միացյալ Նահանգները վերջին քսանամյակում իբր ոչինչ չեն արել, ապա դրան կարող են հավատալ միայն միամիտ մարդիկ: Այդ բանը հաստատելու համար դիմենք մի քանի առավել կարևոր փաստերի:*



*Հայտնի է, որ հենց այդ ժամանակաշրջանում տեղի ունեցավ ամերիկյան ստրատեգիական ուժերի շեշտակի որակական փոփոխություն: Բավական է ասել, որ ԱՄՆ-ը անցավ իր բալիստիկ հրթիռների վրա բաժանվող մարտագլխիկների տեղադրմանը: Եվ նա այդ բանն արեց հակառակ մեր հաստատակամ կոչերին՝ հրաժարվելու դրանից, որպեսզի հրթիռային սպառազինությունների մրցավազքի նոր փուլ չսկսվի: Եթե պրեզիդենտը ջանար խորամուխ լինել բանակցությունների փաստաթղթերի մեջ, ապա նա հեշտորեն կհամոզվեր, որ բանը հենց այդպես է եղել:*

*Թե հետևանքն ինչ եղավ, ակնբախորեն երևում է թեկուզև այն օրինակից, որ այդպիսի վերազինումից հետո ամերիկյան սուզանավում մեկ հրթիռը մրանգամից 14 նշանակետ խոցելու ունակություն ձեռք բերեց: Իսկ յուրաքանչյուր սուզանավում այդպիսի 16 հրթիռ կա: Դրանց գումարային հզորությունը հավասար է Հիրոսիմայի վրա գցված ատոմային ռումբի նման գրեթե հինգ հարյուր ատոմային ռումբերի հզորության:*

*Ընդհանուր առմամբ, ԱՄՆ-ի կարծեցյալ անգործության ժամանակաշրջանում, ինչի մասին խոսում է պրեզիդենտը, ԱՄՆ-ի ստրատեգիական զինված սպառազինություններում միջուկային լիցքերի թիվը չորս հազարից հասել է ավելի քան տասը հազարի: Մի՞թե կարելի է միջուկային զինանոցը երկուսուկես անգամ մեծացնելը անգործություն համարել: Դա բնավ էլ անգործություն չէ անվանի:*

*Հիմա Եվրոպայի մասին, որտեղ, Սպիտակ տան ղեկավարի ասելով, ԱՄՆ-ի և ընդհանրապես ՆԱՏՕ-ի դրությունը ուղղակի ծանր է: Բայց եթե նորից դիմենք փաստերին, ապա հեշտ է համոզվել, որ այստեղ միայն ամերիկյան միջուկային զինամթերքի ընդհանուր քանակը այդ նույն ժամանակաշրջանում ավելացել է երեք անգամ և այժմ անցնում է 7 հազար միավորից: Սա, ինչ է, նույնպե՞ս անգործության հետևանք է:*

*Պրեզիդենտը այնպիսի տեսք է ընդունում, թե իբր Եվրոպայի գոտում գոյություն չունեն ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցների միջին հեռավորության գրեթե հազար միջուկային միջոցներ, թե իբր իրեն հայտնի չէ, որ այդ միջոցների միջուկային լիցքերի գումարային քանակով ՆԱՏՕ-ն մեկուկես անգամ առավելություն ունի ՍՍՀՄ-ի համեմատությամբ:*

*Բավական չէ, որ պրեզիդենտն այս ամենը լռության է մատնում, նա ակնհայտորեն ճիշտ չի ասում, պնդելով, թե Սովետական Միությունը չի պահպանում միջին հեռավորության հրթիռների ծավալման վերաբերյալ իր հայտարարած միակողմանի մորատորիումը:*

*Նա լռության է տալիս նաև այն, որ միջին հեռավորության ամերիկյան սպառազինությունները գտնվում են ոչ թե ինչ-որ տեղ, այլ բառացիորեն մեր շեմին: Մինչդեռ այդ տեսակետից մեզ համար տարբերություն չկա դրանց և ԱՄՆ-ի տերիտորիայում տեղաբաշխված ստրատեգիական զենքի միջև: Եվ դա վերաբերում է ոչ միայն Եվրոպային: ՍՍՀՄ-ի ամբողջ պարագծով կենտրոնացված են ամերիկյան բազում հարյուրավոր արձակման միջոցներ, որոնք կարող են միջուկային հարված հասցնել մեր տերիտորիային: Իսկ պենտագոնի պաշտոնապես հայտարարված պլանների համաձայն, դրանց թիվը պետք է բազմապատիկ ավելանա: Նախատեսված է ծավալել ավելի քան 12 հազար հենց միայն մեծ հեռավորության թևավոր հրթիռներ:*

*Պրեզիդենտը ցուցադրեց լատինաամերիկյան մի երկրի քաղաքացիական օդանավակայանի լուսանկարը, հաջողեցնելով դա էլ ներկայացնել իբրև սպառնալիք ԱՄՆ-ի համար: Բայց նա ցույց չտվեց Միացյալ Նահանգներից հազարավոր մղոններով հեռու ընկած հարյուրավոր թռիչքադաշտերի լուսանկարները, որտեղ ցանկացած պահին թռչելու պատրաստ կանգնած են միջուկային զենք կրող ամերիկյան ինքնաթիռներ:*

*Եվ այդ ամենը, պարզվում է, քիչ է ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմի համար: Դրոշմվում են տրիլիոնավոր դոլարներ գետնի, ջրի վրա, օդում, տիեզերքում ավելի շատ զենք ունենալու համար: Պլանավորված է միջուկային սպառազինությունների բոլոր տեսակների շեշտակի ավելացում: Պրեզիդենտը նաև*

*հայտարարեց, որ լայն մասշտաբի միջոցներ են ձեռնարկվում սովորական զենքի որակապես նոր սիստեմների ստեղծման համար: Դրանով իսկ բացվում է ևս մի ուղղություն սպառազինությունների մրցավազքում:*

*Զանձրացուցիչ ճամարտակություններն այն մասին, թե այդ ամենն արվում է ի պատասխան «սովետական ռազմական սպառնալիքի», որքան էլ կրկնվեն, ոչ ոքի չպիտի մոլորության մեջ գցեն: Այն ամենը, ինչ արել է և անում է Սովետական Միությունը, ամենևին չի վկայում ռազմական գերազանցության հասնելու նրա ձգտման մասին: Այն պայմանագրերն ու համաձայնագրերը, որ մենք կնքել ենք և պատրաստ ենք կնքելու ամերիկյան կողմի հետ, նպատակամղված են միջուկային դիմակայության մակարդակի նվազեցմանը՝ առանց հավասարության խախտման, այսինքն վնաս չհասցնելով ոչ ՍՍՀՄ-ի և ոչ էլ ԱՄՆ-ի անվտանգությանը:*

*Եվ նրանց համար, ովքեր խորտակեցին հենց այդ նպատակը հստակորեն արձանագրած ՍՍՍ—2 պայմանագիրը, սազական չէ հիմա փորձել հաշտարարի կեցվածք ընդունել: Մերժելով մեր այն առաջարկությունները, որ Սովետական Միությունը և ՆԱՏՕ-ն Եվրոպայում ունենան հավասար թվով հրթիռներ, հավասար թվով ինքնաթիռներ, կամ որ այնտեղ ընդհանրապես չլինի ոչ մի միջուկային զենք՝ ոչ միջին հեռավորության, ոչ էլ տակտիկական, նրանք դեռ խոսում են գերազանցության հասնելու ՍՍՀՄ-ի ձգտման մասին: ՍՍՀՄ-ի քաղաքականությունը վարկաբեկելու համար Վաշինգտոնի ներկայիս ղեկավարների կողմից կիրառվող հնարքները անթույլատրելի են պետությունների փոխհարաբերություններում:*

ՀԱՐՑ: Պրեզիդենտ Ռեյգանը հայտարարեց, թե ինքն իբր հայտնագործել է ինչ-որ նոր պաշտպանական կոնցեպցիա: Ի՞նչ է դա նշանակում իրականում:

*ՊԱՏԱՍԽԱՆ: Դրա վրա արժե առանձնակի կանգ առնել: Ուզածին չափ շատախոսություններ անելով «սովետական ռազմական սպառնալիքի» մասին, պրեզիդենտ Ռեյգանն արտահայտվեց այն իմաստով, թե իբր ժամանակն է այլ կերպ մոտենալ ԱՄՆ-ի ստրատեգիական շահերի ապահովման հարցին, և այդ կապակցությամբ հայտարարեց, որ սկսվել է լայն մասշտաբի և բարձրարդյունավետ հակահրթիռային պաշտպանության մշակում:*

*Առաջին հայացքից, անիրազեկ մարդկանց դա կարող է նույնիսկ գրավիչ թվալ. չէ՞ որ պրեզիդենտը խոսում է կարծես թե պաշտպանական միջոցառումների մասին: Բայց դա այդպես է թվում միայն առաջին հայացքից և միայն նրանց, ովքեր ծանոթ չեն այդ հարցերին: Իրականում լրիվ ընթացքով կշարունակվի ԱՄՆ-ի ստրատեգիական հարձակողական ուժերի զարգացումն ու կատարելագործումը, ընդ որում միանգամայն որոշակի՝ առաջին միջուկային հարված հասցնելու պոտենցիալ ձեռք բերելու ուղղությամբ:*

*Այդ պայմաններում հակահրթիռային պաշտպանության օգնությամբ մյուս կողմի համապատասխան ստրատեգիական միջոցները ոչնչացնելու, այսինքն պատասխան հարված հասցնելուց նրան զրկելու հնարավորություն ստանալու մտադրությունը նպատակամղված է ամերիկյան միջուկային սպառնալիքի դեմ հանդիման Սովետական Միության զինաթափմանը: Դա հարկավոր է պարզորոշ տեսնել՝ այդ «նոր կոնցեպցիայի» իսկական իմաստը ճիշտ գնահատելու համար:*

*Իր ժամանակին, երբ ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը ձեռնամուխ եղան ստրատեգիական սպառազինությունների պրոբլեմի քննարկմանը, նրանք համատեղ ընդունեցին, որ ստրատեգիական հարձակողական և պաշտպանական սպառազինությունների միջև գոյություն ունի անխզելի փոխադարձ կապ: Եվ պատահական չէ, որ 1972 թվականին մեր երկրների միջև միաժամանակ կնքվեցին հակահրթիռային պաշտպանության սիստեմների սահմանափակման մասին պայմանագիր և ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին առաջին համաձայնագիրը:*

*Այլ կերպ ասած, կողմերն ընդունեցին և վերոհիշյալ փաստաթղթերում արձանագրեցին, որ հակահրթիռային պաշտպանության բնագավառում միայն փոխադարձ զսպվածությունը հնարավորություն կընձեռի առաջ ընթանալու*



*հարձակողական սպառազինությունների սահմանափակման և կրճատման ուղիով, այսինքն կասեցնելու և ետ շրջելու ամբողջությամբ վերցրած ստրատեգիական սպառազինությունների մրցավազքը: Իսկ հիմա ԱՄՆ-ը մտադրվել է խզել այդ փոխադարձ կապը: Նման կոնցեպցիայի հետևանքը, եթե այն իրականանար, փաստորեն կլիներ շլյուզների բացումը ստրատեգիական զենքի՝ թե՛ հարձակողական և թե պաշտպանական զենքի բոլոր տեսակների անկասելի մրցավազքի համար: Սա է Վաշինգտոնի «պաշտպանական կոնցեպցիայի» իսկական իմաստը, այսպես ասած, հակառակ երեսը:*

ՀԱՐՑ: Ի՞նչ ընդհանուր եզրակացություն պետք է անել ԱՄՆ-ի պրեզիդենտի վերոհիշյալ ճառի կապակցությամբ:

*ՊԱՏԱՍԽԱՆ: Կպատասխանեմ համառոտակի և միանշանակ կերպով. ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմը շարունակում է ընթանալ ծայրահեղ վտանգավոր ուղիով: Պատերազմի և խաղաղության հարցերին չի կարելի այդքան թեթևամտորեն վերաբերվել: ՍՍՀՄ-ի նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու բոլոր ճիգերն ապարդյուն են: Սովետական Միությունը երբեք թույլ չի տա այդ բանը, նա երբեք անզեն չի մնա ցանկացած սպառնալիքի դեմ հանդիման: Թող այս բանը լավ յուրացնեն Վաշինգտոնում: Ժամանակն է, որ այնտեղ դադարեն հայտնագործել նորանոր տարբերակներ, թե ինչպես ավելի լավ կլինի սանձազերծել միջուկային պատերազմ՝ այդ պատերազմը շահելու հույսով: Այդ զբաղմունքը ոչ միայն անպատասխանատու, այլև խելահեղ զբաղմունք է:*

*Թեև պրեզիդենտն իր ճառում առաջին հերթին անդրադարձավ Սովետական Միությանը, բայց այդ ճառը շոշափում է բոլոր պետությունների և ժողովուրդների շահերը: Մենք մեզ պետք է հաշիվ տանք, որ ամերիկյան ղեկավարները այսօր փորձում են եվրոպական երկրները դարձնել միջուկային պատանդներ: Վաշինգտոնի գործողությունները սպառնում են ամբողջ աշխարհին:*

*Այսօր բոլոր ջանքերը պետք է նպատակամղված լինեն մի բանի՝ միջուկային աղետի կանխմանը: Մենք Միացյալ Նահանգներին վճռականորեն կոչ ենք անում՝ կանգնել այդ ուղու վրա:*

---

Կարլ Մարքսի ծննդյան 165-ամյակի

և մահվան 100-ամյակի առթիվ

# ՄԱՐՔՍԻ ՈՒՍՄՈՒՆՔԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՈՒՂԵՑՈՒՅՑ Է

## ԸՆԿԵՐ Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ*

Ընկերնե՛ր։ Քիչ տարիներ չեն բաժանում մեզ այն ժամանակվանից, երբ Կարլ Մարքսն ստեղծեց մի ուսմունք, որն անմահացրեց նրա անունը։ Մենք ապրում ենք այն դարաշրջանում, որը, ինչպես կանխատեսել է Վ. Ի. Լենինը, ամենամեծ հաղթանակը բերեց այդ ուսմունքին։ Մեր աչքի առջև տեղի ունեցան ու տեղի են ունենում հեղափոխական մեծագույն վերափոխումներ։ Արմատապես փոխվել են շատ պետությունների սոցիալական, դասակարգային էությունը, ժողովուրդների մեծամասնության կենսապայմաններն ու ապրելակերպը։ Մինչ այդ մարդկությունը երբեք չի իմացել նման մասշտաբի փոփոխություններ։

20-րդ դարում աշխարհով անցավ համաշխարհային երկու պատերազմների կրակե մրրիկը։ Բայց 20-րդ դարը դարձավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության դար, որը վերջ տվեց աշխարհում եղած այն կարգին, երբ տիրապետող մի դասակարգը փոխվում էր մյուսով, իսկ շահագործումն ու ճնշումը մնում էին։

Մարդկային հասարակության զարգացումը շեշտակիորեն շրջվեց սոցիալիզմի կողմը, որն ընդմիշտ վերացնում է շահագործումն ու ճնշումը, փոքրամասնության իշխանությունը մեծամասնության նկատմամբ։ Սոցիալիզմը ցույց տվեց իր անհաղթահարելի ուժը իմպերիալիզմի դեմ մղած դաժան գոտեմարտերում, իմպերիալիզմ, որը փորձում էր պատմությունը ետ շրջել։ Ջախջախելով գերմանական ֆաշիզմին և ճապոնական միլիտարիզմին, սոցիալիզմի առաջին երկիրն օգնեց մյուս ժողովուրդներին ազատության և անկախության համար մղած նրանց պայքարում, վճռական ավանդ ներդրեց հետագա համաշխարհային պրոգրեսի համար բարենպաստ պայմաններ ստեղծելու գործում։ Բուլղարիայում, Հունգարիայում, ԳԴՀ-ում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ռումինիայում, Հարավսլավիայում, Վիետնամում, Չինաստանում, Կորեայում, Կուբայում, Լաոսում տեղի ունեցած հեղափոխությունները սոցիալիզմը վերածեցին համաշխարհային սիստեմի։

Հեղափոխական ճանապարհով, դարձյալ սոցիալիստական ուղիով, ընթանում են Անգոլան, Աֆղանստանը, Եթովպիան, Հարավային Եմենը, Մոզամբիկը, մի քանի այլ երկրներ։

Մարքսը, հանրագումարի բերելով փիլիսոփայական մտքի ողջ պատմությունը, առաջադրեց նշանավոր դրույթը՝ «Փիլիսոփաները լոկ տարբեր կերպ բացատրել են աշխարհը, բայց խնդիրը այն փոխելն է»։ Բանվոր դասակարգը, աշխատավոր մարդիկ, ոգեշնչվելով սոցիալիզմի իդեալներով, վիթխարի հաջողությունների հասան այդ խնդրի լուծման գործում։ Այսպես են կյանքում մարմնավորվում Մարքսի և Լենինի միտքն ու գործը, շարունակվում նրանց մեծ սխրանքը։

Ինչի՞ համար ենք մենք մեծարում Մարքսին։ Հարյուրամյակներ շարունակ մարդկությունը տառապում էր շահագործումից, ազգային և ռասայական ճնշումից, բնաջնջող և ավերիչ պատերազմներից։ Մարքսը առաջին անգամ բացահայտեց այդ աղետների սոցիալական ակունքները։ Իսկ գլխավորը՝ ի հայտ բերեց դրանցից փրկվելու նյութական հիմքերն ու օբյեկտիվ հնարավորությունները։ Նրա անմահ ծառայությունն այն է, որ նա հայտնագործեց հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, ստեղծեց գիտություն այն մասին, թե ինչպե՛ս պայքարել ու հաղթանակ տանել կապիտալիզմի դեմ, ինչպե՛ս ստեղծել նոր, սոցիալիստական հասարակարգ։

— Մարքսը տվեց համաշխարհային պատմության շարժման մատերիալիստական բացատրությունը, մշակեց ուսմունք սոցիալ-տնտեսական ֆորմացիաների զարգացման ու փոփոխման մասին։

— Նա ստեղծեց միակ գիտական քաղաքատնտեսությունը, հայտնագործեց բուրժուազիայի հարստացման աղբյուրը՝ հավելյալ արժեքը, դրանով իսկ բացահայտելով կապիտալիզմի օրոք շահագործման գաղտնիքը և ապացուցելով նրա հեղափոխական տապալման անխուսափելիությունը։

— Նա հիմնավորեց բանվոր դասակարգի պատմական առաքելությունը, այն դասակարգի, որը կոչված է վերացնելու վերջին շահագործողական կարգը և գլխավորելու սոցիալիզմի կառուցումը։

— Նա մշակեց բնության ու հասարակության հետազոտման խիստ գիտական, դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդը, հասարակական պրոցեսների և իրադարձությունների պրոլետարականորեն դասակարգային, այսինքն՝ իսկական ճանաչման, դրանց նկատմամբ իսկական ռեալիստական մոտեցման մեթոդաբանությունը։

Այդ դարակազմիկ հայտնագործությունների շնորհիվ սոցիալիզմը ուտոպիայից վերածվեց գիտության։

Բայց Մարքսը ո՛չ միայն հանճարեղ գիտնական էր։ Իր բովանդակ կյանքը նա նվիրեց այն բանին, որպեսզի իր ստեղծած գիտությունը դառնար բանվոր դասակարգի ազատագրության միջոց։ «Մարքսը նախ և առաջ հեղափոխական էր»,— ասել է Էնգելսը իր մեծ բարեկամի մասին։ Գիտությունը նա դիտում էր որպես «պատմության հուժկու լծակ, որպես հեղափոխական ուժ՝ բառիս ամենաբարձր նշանակությամբ»։

Հեղափոխական մտքի և հեղափոխական պրակտիկայի միացումից ծնվեցին մարքսիզմի այն մեծ բազմաթիվ գաղափարները, որոնք դարձան հետագա համաշխարհային առաջընթացի վճռական ուժը։

Դա, նախ և առաջ, պրոլետարական կուսակցության ստեղծման ու նրա գործունեության գաղափարն ու սկզբունքային հիմքերն են, այն կուսակցության, առանց որի բանվոր դասակարգը չի կարող «իր մեջ դասակարգից» դառնալ «դասակարգ իր համար» և ամբողջ մարդկության համար։

Դա դասակարգային պայքարի և պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունն է, որը, ինչպես ցույց տվեց ռեալ սոցիալիզմը, վերաճում է համաժողովրդական պետության և դնում է անդասակարգ հասարակության անցնելու սկիզբը։

Դա պատերազմների և հեղափոխությունների սոցիալական էության ու պատճառների բացահայտումն է։

Դա գյուղացիության և աշխատավորության մյուս խավերի հետ բանվոր դասակարգի դաշինքի գաղափարն է։

Դա հետևությունն է մետրոպոլիաների և գաղութների աշխատավորների արմատական շահերի միասնության մասին։

Դա պրոլետարական ինտերնացիոնալիզմի գիտական հիմնավորումն է։

Դա գիտական կանխատեսումն է կոմունիստական հասարակական ֆորմացիայի երկու փուլերի մասին։

Սրանք մարքսիզմի միայն ամենահիմնական դրույթներն են, որոնք նրա

* Արտասանվել է Կարլ Մարքսի ծննդյան 165-ամյակին և մահվան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում 1983 թ. մարտի 30-ին, Մոսկվայում։









համար գործնական զենքի դեր ապահովեցին աշխարհի հեղափոխական վերակերտման գործում։

Հատկանշական է, որ գիտական սոցիալիզմի առաջին տեսական համապարփակ փաստաթուղթը՝ «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», երևան եկավ որպես հեղափոխական գործողության ծրագիր։ Նրանում առաջին անգամ Մարքսը և Էնգելսը հանճարեղ խորաթափանցությամբ և ներգործության զարմանալի ուժով ու գեղեցիկ ձևով, ծավալուն, ամբողջական կերպով շարադրեցին պրոլետարական գաղափարախոսությունը։ «Մանիֆեստի» ստեղծմամբ, որն իրավամբ անվանում են մարքսիզմի «Երգ երգոցը», առմիշտ դրվեց բանվոր դասակարգի հեղափոխական ուսմունքի անխախտ հիմքը։ Զուր չէ, որ այն մինչև օրս էլ մնում է յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր գիտակից հեղափոխականի սեղանի գիրքը։

Նոր դարաշրջանում Լենինի հանճարով գիտական սոցիալիզմը նոր բարձունքի հասցվեց։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, եղբայրական կոմունիստական կուսակցություններն անհերքելիորեն ապացուցեցին ի սկզբանե նրանում առկա ստեղծագործական զարգացման ունակությունը։ Դրա շնորհիվ ողջ հասարակական զարգացումը գտնվում է մարքս-լենինյան հավերժ կենդանի ուսմունքի հարաճուն ներգործության ներքո։

Իբրև գիտություն մարքսիզմ-լենինիզմը համապարփակ է, դրանում, ինչպես կուռ համաձուլվածքում, միահյուսված են փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, հանուն սոցիալիզմի և կոմունիզմի մղվող պայքարի տեսությունը։ Նա անցել է ամենադժվարին, բայց և ամենահամոզիչ ստուգումը՝ ստուգում ավելի քան հարյուրամյա պրակտիկայով։ Նա հաղթանակ է տարել տասնյակ այլ տեսությունների ու կոնցեպցիաների նկատմամբ, որոնք տապալվել են, որովհետև նրա հետ չեն կարող մրցել ո՛չ աշխարհը բացատրելու, ո՛չ էլ, մանավանդ, այն փոխելու հարցերում։ Դա ճշմարիտ, ուստի և կենսահաստատ, լավատեսական ուսմունք է։

Պատմությունն ընթացել է, ընթանում է և կընթանա ըստ Մարքսի, ըստ Լենինի։

## I. «...ԿԱՊԻՏԱԼԻ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ, ՀԱՄԱՏԱՐԱԾ ՊԱՅՔԱՐ Է, ՄԻ ԽՈՍՔՈՎ, ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԲՆՈՒՅԹ Է ԿՐՈՒՄ»

(ՄԱՐՔՍ)

Ընկերնե՛ր։ Աշխարհը ցնցած սոցիալական հեղափոխությունները հանգեցրին այն բանին, որ կապիտալիզմի տիրապետության ոլորտն անշեղորեն նեղանում է։ Բայց կապիտալիստական սիստեմը պահպանվում է աշխարհի մի զգալի տարածքում, մարդկության ոչ փոքր մասը շարունակում է կրել նրա ճնշումը։ Դա չի կարելի հաշվի չառնել քաղաքականության մեջ։

Այն, ինչ տեղի է ունենում կապիտալիզմի հետ մեր ժամանակներում, հնարավոր չէ ո՛չ հասկանալ, ոչ էլ ճիշտ գնահատել՝ չհենվելով Մարքսի վրա, նրա կյանքի գլխավոր աշխատության՝ «Կապիտալի» վրա։ Իմպերիալիզմի մասին Լենինի ուսմունքը Մարքսի տնտեսագիտական տեսության ուղղակի ստեղծագործական զարգացումն է։ Լենինն ապացուցեց, որ կապիտալիզմի այդ վերջին փուլում ստեղծվում են բոլոր օբյեկտիվ նախադրյալները սոցիալիզմին անցնելու համար, մարդկությունն ընդհուպ մոտենում է արմատական հեղափոխական վերակերտումների անհրաժեշտությանը։

Սոցիալիզմի հակառակորդները, դատողություններ անելով մարքսիզմ-լենինիզմի «հնացածության» մասին, սովորաբար վկայակոչում են այժմյան կապիտալիզմի համար բնորոշ նոր երևույթները։ Այո՛, քսաներորդ դարի վերջի կապիտալիզմը շատ բանով այլ է։ Նրա էվոլյուցիան արտացոլում է թե՛ արտադրողական ուժերի, աշխատանքի հանրայնացման հսկայական աճը, թե՛ գաղութային կայսրությունների փլուզումը, թե՛ բանվորական, դեմոկրատական շարժման խոշոր նվաճումները։ Եվ, իհարկե, կապիտալիստական սիստեմն իր



վրա կրում է աճող և ամրապնդվող ռեալ սոցիալիզմի բազմապիսի ու զորեղ ներգործությունը։ Կապիտալիզմն ընդմիշտ կորցրել է ժողովուրդների բախտը մենաշնորհյալ ձևով տնօրինելու հնարավորությունը։ Նա ստիպված է հարմարվել։ Այդ հարմարվելու հիմնական ձևերն են դարձել էկոնոմիկային ցույց տրվող պետական միջամտությունը՝ մինչև ուղղակի կարգավորում, արդի գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումը, կապիտալի հետագա ինտերնացիոնալացումն ու ինտեգրացումը, տարազգային մոնոպոլիաների աճը, կապիտալիստական պետությունների տնտեսական քաղաքականությունը կոորդինացնելու ձգտումը։

Կապիտալիզմին հաջողվեց երկարացնել իր գոյությունը։ Բայց դա շատ ու շատ թանկ նստեց և թանկ է նստում ժողովուրդներին։ Ավելին, սպառնալիք է ստեղծել երկրի վրա բուն կյանքի համար։

Այնուամենայնիվ, «պատմության ծեր խլուրդը», ինչպես Մարքսը պատկերավոր անվանել է հեղափոխությունը նախապատրաստող պրոցեսները, շարունակում է իր գործը։ Շարունակում է, որովհետև չեն փոխվել կապիտալիզմի բնույթը, նրա արմատական հակասությունների էությունը, կուտակվում և աճում են նրա սոցիալական արատները։

**Չի անհետացել, այլ ուժեղանում** է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահագործումը։ Սրվում է հակամարտությունը կապիտալի և աշխատանքի միջև, մոնոպոլիաների և ժողովրդի գերակշռող մեծամասնության միջև, իմպերիալիզմի և զարգացող երկրների միջև։

**Չեն դադարել, այլ խորանում են** իմպերիալիստական հակասությունները։ Մրցակցությունը առանձին երկրների միջև և իմպերիալիզմի հիմնական կենտրոնների միջև (ԱՄՆ, Արևմտյան Եվրոպա, Ճապոնիա) վերաճում է առևտրական պատերազմների, վաճառահանման շուկաների և հումքի աղբյուրների համար մղվող սուր գոտեմարտերի։

**Չեն դադարել, այլ ավելի հաճախակի են դարձել** տնտեսական ճգնաժամերը։ Հաստատվեց դրա վերաբերյալ Մարքսի կանխագուշակությունը։ Կյանքը հողմացրիվ արեց ծաղկուն և «անճգնաժամ» կապիտալիզմի մասին պատրանքները։ 70-ական թվականների սկզբներից կապիտալիստական աշխարհն արդեն երրորդ տնտեսական ճգնաժամն է ապրում։ Միայն կապիտալի՝ արդյունաբերականորեն զարգացած երկրներում այժմ ավելի քան 30 միլիոն գործազուրկներ կան, որոնք դատապարտված են նյութական ծանր զրկանքների ու բարոյական տառապանքների։ Կապիտալիստական էկոնոմիկայի հերթական տեխնոլոգիական վերակառուցումն սպառնում է այնպիսի աղետներով, բոլոր հակասությունների այնպիսի սրումով, որը կարող է ավարտվել շատ ավելի ծանր ճգնաժամով, քան 30-ական թվականներին։

**Չի նեղացել, այլ ընդլայնվել** է անդունդը հարստության և աղքատության միջև, բնակչության մեծամասնության և մի բուռ մուլտիմիլիոնատերերի միջև, որը կապիտալիստական կուտակման՝ Մարքսի հայտնաբերած ընդհանուր օրենքի անխուսափելի հետևանքն է։ ԱՄՆ-ում կորպորացիաների շահույթները 70-ական թվականներին ավելացան մեկուկես անգամ, իսկ բանվորների ռեալ աշխատավարձը նվազեց գրեթե մեկ հինգերորդով։ Ամերիկյան հասարակության վերնախավի մոտավորապես 4,5 հազար մեծահարուստներից յուրաքանչյուրի տարեկան եկամուտն անցնում է մեկ միլիոն դոլարից։ Իսկ 32 միլիոն մարդ՝ բնակչության 14 տոկոսը, ապրում է աղքատության պաշտոնական նշագծից ցած։

**Չեն նվազել, այլ աճում են** գիտատեխնիկական առաջընթացի կապիտալիստական օգտագործման հակասությունները։ Այստեղ ինչպես չվերհիշել Մարքսի խարազանող սարկազմը այն առթիվ, որ կապիտալիզմի օրոք պրոգրեսը, նոր մեքենաների գյուտը ուժասպառ են անում մարդկանց, բերում գործազրկություն, աղքատություն. տեխնիկայի հաղթանակները գնվում են «բարոյական անկման գնով»։ Իր տիրապետությունը երկարացնելու նպատակով արդի կապիտալիզմը գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օգտագործում է, նախ և առաջ, այնպիսի զենք ստեղծելու համար, որն ընդունակ լինի ոչնչացնել մարդկությանը։ Նա, Մարքսի արտահայտությամբ, իրոք նման-

վում է «հեթանոսական այն նողկալի հրեշակուռքին, որը չէր կամենում նեկտարը խմել այլ կերպ, քան սպանվածների գանգերով»:

Բուրժուական հասարակության որ կողմն էլ վերցնելու լինենք, ամենուրեք երևում են նրա ընդհանուր ճգնաժամի նշանները: Պարբերական ճգնաժամերին ավելացել են մի շարք կառուցվածքային ճգնաժամեր՝ հումքային, էներգետիկ, պարենային: Կապիտալիզմի խրոնիկական հիվանդությունների մասին են վկայում մշտական ինֆլյացիան, վարկաֆինանսական և վալյուտային ցնցումները: Հատկապես ծանր հետևանքներ են ունենում անզուսպ միլիտարիզմը, սպառազինությունների մրցավազքը: Առկա է հոգևոր, բարոյական անկում՝ մարդկանց մեկուսացածություն, մենակություն, ինքնասպանությունների աճ, թմրամոլություն, հանցագործություններ, տեռորիզմ:

Նույնիսկ արևմտյան շատ գործիչներ ստիպված են խոստովանել, որ կապիտալիզմը հիվանդ է: Վիճում են ախտորոշման և բուժման եղանակների մասին: Բայց ախտորոշումը կա— այն տվել է Մարքսը: Սոցիալական այն սիստեմը, որն ամեն ինչ ենթարկում է կանխիկ փողի պաշտամունքին, շահութավազքին, անբուժելի է:

Լիովին արդարացան Մարքսի դրույթները բանվոր դասակարգի պատմական դերի մասին, որը գործնականում ապացուցեց իր ունակությունը վերջ տալու կապիտալիստական շահագործման հասարակարգին, գլխավորելու ժողովուրդների պայքարը ազատության ու հավասարության համար, ապահովելու սոցիալիզմի հաղթանակը:

Մեկուկես հարյուրամյակում բանվոր դասակարգը անչափ աճել է, ամենից առաջ, թվապես: Մարքսի կենդանության օրոք այն կազմում էր մոտ 10 միլիոն մարդ: Այժմ բանվոր դասակարգ կա բոլոր երկրներում, բոլոր մայրցամաքներում, և նրա թիվն անցնում է 700 միլիոնից:

Առկա են բանվոր դասակարգի մեջ կատարված որակական վիթխարի փոփոխություններ: Մի շարք երկրներում նա դարձել է կառավարող և զարգանում է որպես սոցիալիստական բանվոր դասակարգ: Բայց աշխարհի կապիտալիստական մասում ևս բանվոր դասակարգի դրության մեջ, նրա կազմում, նրա բուն կերպարում խոշոր փոփոխություններ են կատարվել: Բնակչության նորանոր խմբեր, ենթարկվելով պրոլետարականացման, ներհոսում են բանվոր դասակարգի շարքերը: Բազմապատկվում են նրա դաշնակիցները, որոնք իրենց հասարակական դիրքով մոտիկ են բանվորներին:

Դրա շնորհիվ բանվոր դասակարգի քաղաքական ազդեցությունը շարունակում է աճել: Եվ նրանից են բխում արմատական փոփոխությունների անհրաժեշտության գիտակցությունը, հավատը սոցիալիզմի՝ որպես կապիտալիստական հասարակության խոցերից ու արատներից փրկվելու միակ ուղու, նկատմամբ:

Ժամանակակից բուրժուազիան ճանաչել է բանվոր դասակարգի ուժը: Նա ամեն ինչ անում է քայքայելու, ետ շպրտելու բանվորական շարժումը, նրա առաջավոր ջոկատները մեկուսացնելու մասսաներից: Եվ երբեմն նրա ճիգերն անհետ չեն անցնում: Բայց, հակառակ ամեն ինչի, աշխատանքի ու կապիտալի միջև պայքարն աճում է: Սրվող ճգնաժամի աղետները մասսայական բողոք են հարուցում: Աշխատավորները մոնոպոլիաների և կառավարությունների հարձակմանը պատասխանում են պրոլետարաբար՝ գործադուլներով, ցույցերով, ձեռնարկությունների գրավմամբ: Այսպիսին է դասակարգային պայքարի երկաթյա տրամաբանությունը:

Նրա աճագնացող ալիքների դեմ անզոր են թե՛ ռեպրեսիաները, թե՛ հակակոմունիստական դեմագոգիան, թե՛ ջրանետներն ու արտասվաբեր գազերը, թե՛ ոստիկանական մահակները:

Հազարամյակների ընթացքում փարավոններն ու կայսրերը, կայզերներն ու ցարերը, պրեզիդենտներն ու մյուս տիրակալները փորձել են կանխել սոցիալական փոփոխությունները: Այդ բոլոր փորձերը մշտապես ձախողմամբ են վերջացել, քանի որ այն, ինչ հասունացել է հասարակության ընդերքում, ինչ պայմանավորված է պատմության բուն օբյեկտիվ ընթացքով, անկասելի է: Նրա անողոք երթը գաճաճների է վերածում նրանց, ովքեր նզովում են կո-



մունիզմը, ովքեր սոցիալիզմի, հեղափոխությունների, ազատագրական շարժումների մեջ տեսնում են «Մոսկվայի ձեռքը» և փորձում են նրանց հակադրել իմպերիալիստական թելադրանքի և «խաչակրաց արշավանքների» կամայականությունը: Հեղափոխությունները, նշել է Վ. Ի. Լենինը, «աճում են այն ժամանակ, երբ տասնյակ-միլիոնավոր մարդիկ հանգում են այն հետևության, որ այսպես ապրել այլևս հնարավոր չէ»:

Այս օբյեկտիվ օրենքը փայլուն հաստատում գտավ 20-րդ դարի բոլոր հեղափոխական մեծագործություններում: Այն հաստատվեց նաև մեր ժամանակի հակագաղութային հեղափոխություններով, որոնց անխուսափելիությունը կանխագուշակում էր Մարքսը: Այսօր նախկին կայսրությունների հսկայական տարածություններում գոյություն ունեն տասնյակ ինքնուրույն պետություններ: Եվ գիտական սոցիալիզմը, որը նրա հակառակորդները ճգնում էին պատկերել որպես «զուտ եվրոպական» երևույթ, դառնում է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի սոցիալական վերափոխման ավելի ու ավելի ակներև գործոն: Գաղութարարների ծնունդ հանդիսացող դարավոր հետամնացության հաղթահարման համար, կյանքը իրենց ուզած ձևով կառուցելու՝ ժողովուրդների իրավունքի նկատմամբ իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ մղվող պայքարը համաշխարհային հեղափոխական պրոցեսի կարևոր հոսանքն է:

Լիովին հաստատվեցին Մարքսի գաղափարները հասարակության հեղափոխական վերակերտման մեջ կոմունիստների, պրոլետարական կուսակցությունների, կոմունիստական շարժման դերի մասին: Այդ ուսմունքին է պատկանում մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթը: Դրանով են ներթափանցված նրա բոլոր հիմնական մասերը՝ աշխարհայացքայինից մինչև զուտ քաղաքականն ու տակտիկականը: Գիտական սոցիալիզմը որպես տեսություն ստեղծվել է առաջին՝ իրոք պրոլետարական կուսակցության ձևավորման հետ անմիջական կապի մեջ:

«Կոմունիստական մանիֆեստում», կուսակցական մյուս փաստաթղթերում, «Կոմունիստների միության», 1-ին ինտերնացիոնալի, Եվրոպայի առաջին սոցիալիստական կուսակցությունների փորձի և աշխատանքի հետ առնչվող բազմաթիվ հոդվածներում ու նամակներում, Մարքսի և Էնգելսի՝ որպես կուսակցական ղեկավարների, բուն գործունեության մեջ ընկած են բանվոր դասակարգի կուսակցության կառուցման ելակետային սկզբունքներն ու գաղափարները: Դրանց վրա էր հենվում Լենինը, ստեղծելով իր մեծ ուսմունքը նոր տիպի կուսակցության մասին, դրանք մտել են համաշխարհային կոմունիստական շարժման ոսկե ֆոնդը:

Մեր օրերում կոմունիստական կուսակցություններ են գործում գրեթե հարյուր երկրներում: Դրանցից շատերը կառավարող կուսակցություններ են, մի շարք կուսակցություններ դարձել են մասսայական: Կոմունիստներն այժմ հանդես են գալիս որպես իսկապես համաշխարհային մասշտաբի ուժ: Նրանց ընդհանուր թիվն արդեն ոչ թե մի քանի հարյուր է, ինչպես Մարքսի օրոք, այլ ավելի քան 70 միլիոն: Բայց կոմունիստների խնդիրների ծավալն ու բարդությունը, արդի հեղափոխական ողջ պոտենցիալի օգտագործման համար նրանց պատասխանատվությունը նույնպես անչափ աճել են: Իսկ այս կապակցությամբ Մարքսի արտահայտած միտքն այժմ նույնքան ճիշտ է, որքան ճիշտ էր իր կենդանության օրոք, այն է՝ «...նույնիսկ ամենաբարենպաստ քաղաքական պայմաններում բանվոր դասակարգի ամեն մի լուրջ հաջողություն պայմանավորված է այն կազմակերպության հասունությամբ, որը դաստիարակում և կենտրոնացնում է նրա ուժերը»:

Կոմկուսների կողմից արդիականության ամենաառաջավոր քաղաքական ուժի դերի կատարման երաշխիքը Մարքսի, Էնգելսի, Լենինի գաղափարներին հավատարիմ լինելն է: Շատ տասնամյակների ընթացքում սոցիալիզմի համար մղվող պայքարի պատմությունը ցույց է տալիս, որ միայն մարքսիզմ-լենինիզմով ղեկավարվող կուսակցություններն են հաստատորեն պաշտպանում ու կենսագործում այն, իհարկե, հաշվի առնելով իրենց երկրների կոնկրետ պայմանները, միայն այդպիսի կուսակցություններն են հաղթանակներ տանում, որոնք օգուտ են բերում բանվոր դասակարգին, ժողովրդական մասսա-

ներին։ Մարքսիզմ-լենինիզմից նահանջելը կամ նրա ռևիզիան միշտ էլ, վերջին հաշվով, հղի են ծանր հետևանքներով տվյալ երկրի բանվորական շարժման համար, խաղաղության և սոցիալիզմի գործի համար։

Մարքսիզմի հիմնադիրներն իրենց համախոհներին ուսուցանում էին «իսկական ինտերնացիոնալիստական վարքագիծ», կոմունիստներին պատգամում էին պահպանել բանվորական շարժման ինտերնացիոնալության սկզբունքը։ Համաշխարհային ասպարեզում դասակարգային սուր հակամարտության արդի փուլում դա հատկապես անհրաժեշտ է։ Կասկածի ենթակա չէ նաև այն, որ իր ներքին խնդիրների լուծման գործում յուրաքանչյուր կոմկուսի հաջողությունները նույնքան հուսալի, ամուր են, որքան նա հետևողականորեն է կենսագործում աշխարհի առաջավոր բանվորներին ուղղված Մարքսի կոչը՝ «Ամուր կանգնել միմյանց թիկունքին...»։

## II. «...ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ ԱՇԽԱՏՈՂ ԱԶԱՏ ՄԱՐԴԿԱՆՑ ՄԻՈՒԹՅՈՒՆ»

(ՄԱՐՔՍ)

Ընկերնե՛ր։ Մարքսի ամբողջ ուսմունքից արվող գլխավոր հետևությունը սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունն է։ Մենք իրավունք ունենք հպարտանալու, որ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը կատարվեց մեր երկրում, որ սոցիալիզմի ուղին մարդկության համար հարթեց լենինյան կուսակցության ղեկավարած ռուսաստանյան պրոլետարիատը։

Պետք է ասել, Մարքսը և Էնգելսը, որոնք ուշադիր հետևում էին Ռուսաստանում տիրող իրադրությանը, կարծում էին, որ այն կարող է համաշխարհային ծավալի հեղափոխական դեր խաղալ, որ ռուսական հեղափոխությունը կարող է դառնալ «արևմուտքում պրոլետարական հեղափոխության ազդանշան»։

Սոցիալիզմի համար մղվող պայքարում մեր ժողովրդի հաղթանակի կարևորագույն պայմանն այն էր, որ կուսակցությունն ստեղծագործաբար զարգացնում և հմտորեն կիրառում էր Մարքսի, Էնգելսի, Լենինի ստեղծած հեղափոխական գիտությունը։

ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության հիմքում դրվեցին այն գաղափարները, որոնք առաջ էին քաշվել Մարքսի կողմից և ամբողջական տեսության վերածվեցին Լենինի կողմից։ Դա, ամենից առաջ, սկզբունքորեն նոր, սոցիալիստական տիպի պետության ստեղծումն էր, հեղափոխության նվաճումների պաշտպանությունը և, ամենագլխավորը՝ երկրի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական արմատական վերափոխումը, ինչպես ասում էր Մարքսը, «Արտադրության միջոցների ազգային կենտրոնացման» և աշխատանքը «ընդհանուր և ռացիոնալ պլանով» կազմակերպելու միջոցով։

Իշխանության գլուխ անցած պրոլետարիատի կարևորագույն խնդիրներից մեկը Մարքսը և Էնգելսը համարում էին այն, որ «հնարավորին չափ ավելի արագ ավելացվի արտադրողական ուժերի գումարը»։ Եվ, իսկապես, սոցիալիզմի առաջին երկիրը զարմացրեց աշխարհին, կարճ ժամանակում դառնալով ամենահզոր ինդուստրիալ տերություններից մեկը։ Տնտեսական աճի արագ տեմպերը բնորոշ են սոցիալիստական սիստեմի երկրների մեծամասնությանը։ 1950 թվականից մինչև 1980 թվականը ՏՓԽ-ի անդամ երկրներում արդյունաբերական արտադրությունն աճեց գրեթե 13 անգամ, մինչդեռ զարգացած կապիտալիստական երկրներում՝ 4 անգամից էլ պակաս։

Միևնույն ժամանակ Մարքսը սոցիալիզմի ապագա կառուցողների համար պարտադիր էր համարում կոնկրետ խնդիրների «ռեալիստական ըմբռնումը» զարգացման յուրաքանչյուր տվյալ փուլում։ Այդպիսի ըմբռնումից էլ ելնում է մեր կուսակցությունը։ Հենց այդ մոտեցումն է մարմնացում գտել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում։

Այն հսկայական հետաքրքրությամբ և հավանությամբ ընդունվեց սովե-



տական ժողովրդի կողմից, սոցիալիստական երկրներում, առաջ բերեց միջազգային լայն արձագանք՝ որպես սոցիալիզմի ամրապնդման ու կատարելագործման պրոբլեմների տեսական վերլուծության և պրակտիկ առաջադրման համար Մարքսի ժառանգությունն ստեղծագործաբար կիրառելու օրինակ։ «Այսօր,— շեշտվում է մասնավորապես հոդվածում,— առաջադրվում է մի հիմնական խնդիր՝ մտածել ու հետևողականորեն իրականացնել այնպիսի միջոցներ, որոնք ունակ լինեն ավելի մեծ ասպարեզ տալու մեր էկոնոմիկայում առկա վիթխարի ստեղծարար ուժերի գործողությանը։ Այդ միջոցառումները պետք է լինեն հանգամանորեն նախապատրաստված, ռեալիստական, ուրեմն և դրանց մշակման ժամանակ անհրաժեշտ է անշեղորեն ելնել սոցիալիզմի տնտեսական սիստեմի զարգացման օրենքներից։ Այդ օրենքների օբյեկտիվ բնույթը պահանջում է ձերբազատվել էկոնոմիկան նրա էությանը խորթ մեթոդներով կառավարելու ամեն տեսակ փորձերից»։

Ներկա փուլում կուսակցության ստրատեգիական կուրսը զարգացած սոցիալիստական հասարակության համակողմանի կատարելագործումն է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների հիման վրա։ Այժմ առաջնահերթ նշանակություն են ստանում նեղ տեղերի, դժվարությունների հաղթահարման, թերությունների վերացման կոնկրետ ծրագրերն ու գործնական միջոցները՝ այն հաշվով, որ է՛լ ավելի ամրապնդվեն այն հիմքերը, որոնց վրա հիմնվում է սոցիալիստական ապրելակերպը։ Դրան են նպատակամղված ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները։ Ի կատարումն այդ որոշումների, արդեն շատ բան է արված։ Մենք ամենքս տեսնում ենք, թե Կենտրոնական կոմիտեն, քաղբյուրոն, բոլոր կուսակցական կազմակերպությունները ինչպիսի մեծ աշխատանք են ծավալել արդի փուլում երկրի զարգացման հիմնական ուղղություններում։ Կյանքը կրկին ու կրկին հաստատում է, որ ՍՄԿԿ-ի ուժը ժողովրդի հետ խոր և անխզելի կապն է, այն, որ կուսակցությունը ժողովրդի շահերից ու կարիքներից բացի ուրիշ հոգսեր չունի։

Նախատեսելով նոր բնագծեր, մոբիլիզացնելով աշխատավորների եռանդը, կուսակցությունը շարունակում է իր ողջ գործունեության մեջ հաստատակամորեն ամրապնդել լենինյան ոճը։ Դա իր մեջ որոշումների գիտական հիմնավորվածությունը միացնում է գործարարության, ռեալիզմի և ինքնաքննադատության հետ, բարձր ակտիվությունն ու նախաձեռնությունը՝ արդյունքների խիստ վերահսկողության հետ, կուսակցական բարոյականությունից և կարգապահությունից կատարվող շեղումների նկատմամբ անհանդուրժողության հետ։ Դա շատ հեռուն նայելու, մասշտաբայնորեն մտածելու ընդունակությունը զուգակցում է գործնական կոնկրետ խնդիրների լուծմանը մշտական նպատակամղվածության հետ։ Լենինյան ոճը ենթադրում է ղեկավար պոստերում առաջ քաշել քաղաքականապես հասուն, ձեռնհաս ընկերների, որոնք ունեն սթափ միտք և գործնական դատողություն, իրենց մեջ բարձր գաղափարայնությունը զուգորդում են, ինչպես ասում էր Լենինը, մեծ թվով մարդկանց ամուր, համերաշխ աշխատանքը կազմակերպելու կարողության հետ։

Այժմ կուսակցության աշխատանքի կենտրոնում ամենալայն իմաստով աշխատանքի այնպիսի կազմակերպումն է, որն ընթացքի մեջ դներ տնտեսական արդյունավետության բոլոր գործոնները ժողովրդատնտեսական կոմպլեքսի բոլոր հարկերում՝ աշխատատեղից և ձեռնարկությունից մինչև ընդհանուր միութենական մակարդակը։

«Խնայողական էկոնոմիկայի» սկզբունքը վերջին հաշվով նշանակում է ժամանակի խնայողություն։ «Ժամանակի խնայողությունը,— գրում էր Մարքսը,— ինչպես և ըստ արտադրության տարբեր ճյուղերի աշխատաժամանակի պլանաչափ բաշխումը, մնում է առաջին տնտեսական օրենքը կոլեկտիվ արտադրության հիման վրա»։

Արդի փուլում այդ օրենքի իրականացման գործում հիմնական տեղը պատկանում է գիտությանը։ Ահա թե ինչու կուսակցությունն այդքան սրությամբ է դնում գիտության և տեխնիկական առաջընթացի դերի բարձրացման հարցը։ Այստեղ մենք նույնպես գործում ենք ըստ Մարքսի։ Նրա ամենախոր կանխատեսումների թվին է դասվում այն միտքը, որ սոցիալիստական հասա-

րակության մեջ. գիտությունը «դասակարգային տիրապետության գործիքից վերածվում է ժողովրդական ուժի»։ Եվ կուսակցությունը մեր գիտական ու գործնական աշխատողներին կողմնորոշում է այն բանին, որ անհրաժեշտ ամեն ինչ արվի այդ «ժողովրդական ուժի» մեծացման ու առավելագույն օգտագործման համար, իսկ ժամանակակից լեզվով ասած, սոցիալիզմի հնարավորությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության միացման համար։

Գիտության զարգացումը և արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ դրա ներդրումը նաև միջազգային հսկայական նշանակություն ունեն՝ սոցիալիզմի հեղինակության, կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցության մեջ հաջողության հասնելու համար։ Իսկ հաջողությանը մենք վստահ ենք, որովհետև, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, «Գիտության ներկայացուցիչների, պրոլետարիատի և տեխնիկայի միության հանդեպ չի կարող դիմանալ և ոչ մի մութ ուժ»։

Մարքսն ընդգծում էր, որ սոցիալիզմի զարգացումը պահանջում է մշտական ուշադրություն «արտադրության կազմակերպման» նկատմամբ՝ «ազատ և միավորված աշխատանքի» համար։ Մեր երկրում տարբեր փուլերում այդ պրոբլեմը տարբեր կերպ է լուծվել։ Ահա այժմ էլ, երբ խոսքը վերաբերում է հանրային արտադրության էքստենսիվ գործոններից դեպի ինտենսիվ գործոններն անցումն արագացնելուն, կուսակցությունը լրջորեն բարելավում է կառավարումը, պլանավորումը, տնտեսական ողջ մեխանիզմը։

Այդ կապակցությամբ խնդիր է դրվում ուժեղացնել ինչպես պետության կոորդինացնող դերը, այնպես էլ աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական ակտիվությունը։ Չէ՞ որ համաժողովրդական սեփականությունն աբստրակցիա չէ. այն ենթադրում է, որ աշխատավորներն իրենք էլ իրենց կոլեկտիվների և կազմակերպությունների միջոցով մասնակցեն դրա տնօրինմանը։ Ահա թե ինչու բրիգադային կապալը դարձավ մեր արդյունաբերական պոտենցիալի ավելի լրիվ օգտագործման հաջող գտնված ձև։ Ահա թե ինչու կուսակցությունը այդպիսի նշանակություն է տալիս գյուղատնտեսության մեջ կոլեկտիվ կապալի ներդրմանը։ Ահա թե ինչու խիստ անհրաժեշտ է մինչև վերջ արմատախիլ անել ձևամոլությունն ու պարադայնությունը սոցիալիստական մրցության մեջ։

Մենք գիտենք, որ կատարվում է արտադրության միջոցների հանրային սեփականության առավելությունների իրացման՝ արդի պահանջներին համապատասխանող նաև այլ մեթոդների որոնում։

ՍՍՀՄ սահմանադրությունը նախատեսում է նաև անհատական աշխատանքային գործունեության, անձնական օժանդակ տնտեսությունների զարգացում՝ հօգուտ հասարակության։ Դա առանձնապես կարևոր է պարենային ծրագրի կատարման համար հիրավի ժողովրդական պայքարի ծավալման նպատակով։

Դրա հետ մեկտեղ, և դա նույնպես շատ կարևոր է, արտադրական և հասարակական կյանքի բոլոր ոլորտներում շահագրգռվածության և պատասխանատվության սկզբունքի հետևողական կենսագործումն այժմ դիտվում է որպես ամբողջությամբ վերցված սովետական սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման հրատապ ուղղություններից մեկը։

Միայն սոցիալիզմն է հնարավորություն ստեղծում իրականացնելու մարդկանց դարավոր երազանքը հավասարության, բարօրության, վաղվա օրվա հանդեպ վստահության մասին, այն մասին, որ աշխատանքն իսկական գոհունակություն պատճառի, որ դրանում լիովին բացահայտվեն մարդու ընդունակությունները։ Եվ ոչ մի բան ի վիճակի չէ մեզ շեղելու այն ուղուց, որով ընթանալով, մարքսիզմի հիմնադիրների կարծիքով, «յուրաքանչյուրի համար կապահովվի նրա խելացի պահանջմունքների բավարարումը հարաճուն չափերով»։ Հենց խելացի պահանջմունքների. Մարքսը դատապարտում էր, ինչպես ինքն էր արտահայտվում, «անմարդկային» պահանջմունքները, այլասեր քմահաճույքները, պերճանքի ձգտումը, որոնք անհարիր են սոցիալիզմի ոգուն։ Նա նաև նշում է, որ պահանջմունքները բավարարելիս կարելի է նկնել միայն



հասարակության առկա արտադրողական ուժից։ Միայն դրա բազմապատկումն է հնարավորություն ընձեռում ընդլայնելու նաև սպառման ֆոնդը։ Այսպիսին է օբյեկտիվ տնտեսական օրենքը։ Այս մասին ՍՄԿԿ-ն լուրջ, գործնական խոսակցություն է վարում սովետական մարդկանց հետ, կազմակերպելով զարգացած սոցիալիզմի հասարակության բոլոր հնարավորությունների և աշխատանքային ռեսուրսների եռանդուն օգտագործումը։

Տնտեսական, սոցիալական, քաղաքական զարգացման պրոբլեմները կուսակցությունը լուծում է գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքի հետ սերտորեն փոխկապակցված։ Չկա մարքսիզմին ավելի խորթ բան, քան հասարակության զարգացման մեջ գաղափարների դերի թերագնահատումը։ Հենց Մարքսին է պատկանում այն թևավոր արտահայտությունը, որ այնքան գնահատում էր Լենինը. «Տեսությունը նյութական ուժ է դառնում, հենց որ այն տիրապետում է մասսաներին»։ Մենք բոլորս նաև գիտենք, որ Լենինը, ստեղծելով բոլշևիկյան կուսակցությունը, նրա առաջնային խնդիրն էր համարում բանվորական շարժման զինումը սոցիալիստական գաղափարներով։ Արդի պայմաններում նույնպես հսկայական դեր են խաղում մասսաների մեջ սոցիալիստական գիտակցության ամրապնդումն ու տարածումը, ամենօրյա պրակտիկայում գիտական տեսության հետևությունների ներդրումը։

Մեր երկրի, սոցիալիզմի մյուս երկրների փորձը ցույց է տալիս, որ այդ աշխատանքը յուրաքանչյուր փուլում պահանջում է նոր և ոչ քիչ ջանքեր։ Բանը ո՞չ միայն այն է, որ հարկավոր է հաղթահարել մասնավոր սեփականատիրական հազարամյա հոգեբանությունը, որը թշնամական պրոպագանդան ձգտում է աշխուժացնել։ Այստեղ խոսքը վերաբերում է նաև հենց սոցիալիստական գիտակցության հիմքին, այսինքն՝ հասարակական հարաբերությունների զարգացման օբյեկտիվ դժվարություններին ու հակասություններին։ Մասսայական գիտակցությունն անմիջականորեն պայմանավորված է այդ հարաբերությունների այնպիսի կողմերի վիճակով, ինչպիսին են հասարակություն—կոլեկտիվ—անհատ, ղեկավար—կատարող, քաղաք—գյուղ, մտավոր և ֆիզիկական աշխատանք, աշխատանքի ու սպառման չափ և այլն։

ՍՄԿԿ-ն անդուլ ուշադրություն է նվիրում բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության դաշինքի հետագա ամրապնդմանը, սովետական ժողովրդի սոցիալական և ինտերնացիոնալ միասնության ամրապնդմանը։ Այդ պրոցեսներն աստիճանաբար տանում են դեպի հասարակության անդասակարգ կառուցվածք՝ գլխավորապես և հիմնականում դեռևս զարգացած սոցիալիզմի շրջանակներում։

Մասսաների գաղափարայնության բարձրացումն այժմ առանձնապես սերտորեն կապված է աշխատանքի նկատմամբ իրոք սրտացավ վերաբերմունքի, արդի պահանջներին համապատասխանող արտադրության իսկական կուլտուրայի արմատավորման հետ։ Դա մեծապես կորոշվի նաև կարգապահության և կարգուկանոնի խախտումներին, այնպիսի երևույթներին վերջ դնելու հաստատ վճռականությամբ, ինչպիսին են վատնողությունը, կաշառակերությունը, պորտաբուծությունը, հափշտակումները, ժողովրդի հաշվին ապրելու բոլոր միջոցներին վերջ դնելու վճռականությամբ։ Կուսակցությունը, ինչպես դուք գիտեք, վճռական կռիվ է հայտարարել սոցիալիզմի սկզբունքները խախտողներին, որպեսզի հասարակությունն ազատի, ինչպես պահանջում էր Լենինը, «կապիտալիզմի ժառանգությունը պահպանողներից», «անբաններից, ձրիակերներից, գանձագողերից...»։ Եվ այդ գործում կուսակցությանը պաշտպանում է ողջ ժողովուրդը։

Ասվածն ամենևին չի նսեմացնում գաղափարախոսական աշխատանքի հսկայական ինքնուրույն դերը, որը կոչված է, Մարքսի խոսքերով ասած, հասարակական գիտակցությունը վերածելու հասարակական ուժի։

Երկրի զարգացման ներկա փուլը պահանջում է առաջին հերթին ավելի բարձր մակարդակ և ավելի մեծ գործնական արդյունավետություն այն ամբողջ ոլորտի, որը Մարքսը բնորոշում էր որպես հոգևոր արտադրություն, դրա մեջ ներառնելով գիտությունը, գրականությունը, արվեստը, ժուռնալիստիկան, մշակույթի բոլոր տեսակները։

Գաղափարախոսական աշխատանքի ներկա և ապագա մակարդակը կուսակցությունը գնահատում է ըստ այն բանի, թե այդ աշխատանքը սովետական մարդկանց գիտակցության, նրանց վարքագծի մեջ որքան հաջողությամբ է ձևավորում և ամրապնդում սոցիալիզմի գաղափարական ու բարոյական հիմունքները, նրանց օգնում ակտիվ կենսադիրք գրավելու, իրենց ավանդը ներդնելու նոր սոցիալիստական քաղաքակրթության ստեղծման համաժողովրդական մեծ գործում։

Հասարակության գաղափարական պոտենցիալի մեծացմանն է ծառայում նաև մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության բարելավումը գաղափարախոսական աշխատանքի այն չափանիշների հիման վրա, որոնք մշակել է կուսակցությունը և որոնք նա ճշտում ու զարգացնում է կյանքի նոր պահանջներին համապատասխան։

Ընկերնե՛ր։ ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կատարելագործումը ամբողջ սոցիալիստական աշխարհի և դիրքերի աճի ու ամրապնդման անբաժանելի, կարևորագույն մասն է։ Սոցիալիստական ընկերակցության մեջ, նրա կուտակած բազմակողմանի փորձում, ուրվագծվում են ազատագրված աշխատանքի համաշխարհային ընկերակցության կարևորագույն հատկանիշները, ինչի մասին երազում էին Մարքսն ու Էնգելսը։

Սոցիալիզմը, գրում էր Մարքսը, կպահանջի «արտադրության հանրային ձևերի ինտերնացիոնալ կոորդինացում»։ Այդ կանխատեսումն այսօր մարմնավորվում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացման մեջ, այն նոր խնդիրներում, որ առաջադրում և իրար հետ համաձայնեցնում են կառավարող կոմունիստական կուսակցությունները։

Սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրությունը և նրա հեղինակությունն անբաժանելի են սոցիալիստական ինտերնացիոնալիզմից։ Այն դրված է նոր տիպի միջազգային հարաբերությունների հիմքում և ներառնում է լիակատար իրավահավասարությունը, անկախության, տերիտորիալ ամբողջականության և ազգային սուվերենության փոխադարձ հարգանքը, միմյանց գործերին չմիջամտելը, փոխադարձ օգնությունն ու ընկերական համագործակցությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննարկելով Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ վերջերս Պրագայում կայացած խորհրդակցության արդյունքները, կրկին շեշտեցին, որ եղբայրական երկրների հետ բարեկամության ու համագործակցության գործը միշտ հատուկ, առաջնային տեղ է գրավել ու կգրավի մեր միջազգային քաղաքականության ոլորտում։

Գիտական կոմունիզմի հիմնադիրները կանխատեսել էին, որ հաղթանակած սոցիալիզմի երկրները իրենցից կներկայացնեն «մի այնպիսի վիթխարի ուժ և այնպիսի օրինակ», որ մյուս ժողովուրդներն իրենք կձգտեն նմանվել նրանց։ Դա հենց այդպես եղավ և այդպես էլ կլինի, որովհետև սոցիալիզմը վստահորեն առաջ է ընթանում՝ հաղթահարելով արգելքներն ու դժվարությունները, մշտապես քննադատելով իրեն, ինչպես կանխատեսել էր Մարքսը, դենետելով հնացածը, համարձակորեն վերցնելով և հաստատելով նորը։

## III.« ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՎԵՐԱՑՈՒՄ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ, ԿՈՂՈՊՈՒՏՆԵՐԻ ՈՒ ԲՌՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԱԴԱՐԵՑՈՒՄ՝ ՀԵՆՑ ՍԱ Է ՄԵՐ ԻԴԵԱԼԸ...»

(ԼԵՆԻՆ)

Ընկերնե՛ր։ Մարքսը բազմիցս նշել է, որ կապիտալիզմի բոլոր արատներից ամենածանրը, ամենավտանգավորը պատերազմներն են, որոնք նրա գիշատչական էության ծնունդ են։ Առավել հիմնավորվածությամբ այդ կործանարար հատկությունը իմպերիալիզմի դարաշրջանում մատնանշեց Լենինը։ Իմպերիալիստական հակասությունները հանգեցրին ամբողջ պատմության ընթացքում երկու ամենածանր համաշխարհային պատերազմներին և, չնայած այն հսկայական զոհերին ու ավերածություններին, որ դրանք պատճառեցին ժողովուրդներին, իմպերիալիզմը, ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմը, բերում է համաշխարհային նոր, այս անգամ արդեն ջերմամիջուկային պատերազմի սպառնալիք։

Գիտական սոցիալիզմի հիմնադիրները պարզաբանեցին պատերազմական վտանգի պատճառներն ու ակունքները։ Դա հսկայական դեր է խաղացել և շարունակում է խաղալ ագրեսիվ պատերազմներից ձերբազատվելու համար մղվող պայքարի կազմակերպման գործում։ Թե՛ Մարքսը, թե՛ Էնգելսը և թե Լենինը կանխատեսել են, որ պատերազմական գործողություններ մղելու նյութական միջոցների զարգացումը կարող է միանգամայն նորովի առաջադրել պատերազմի ու խաղաղության ողջ պրոբլեմը։ Հենց այդպես էլ կատարվեց միջուկային զենքի երևան գալուց հետո։ Համաշխարհային պատերազմը այդ պայմաններում աղետ կլիներ քաղաքակրթության համար։ Մեր չափազանց պատասխանատու ժամանակներում, երբ մարդկության առջև ողջ հասակով մեկ ծառացել է «լինել, թե չլինել» հարցը, չկա ավելի կարևոր խնդիր, քան այդ սպառնալիքի վերացումը։

Խաղաղության սովետական փիլիսոփայությունը հիմնված է վսեմ իդեալների ու արժույթների վրա, որոնք, սկզբնավորվելով անցյալի մեծ հումանիստներից, օրգանապես ընկալվել են մարքսիզմ-լենինիզմի կողմից։ Խաղաղության սովետական քաղաքականությունը խորապես ռեալիստական է։ Այդ քաղաքականությունը բխում է միջուկային պատերազմի հետևանքների գիտական գնահատումից, պատերազմ, որի համար ոչ մի արդարացում չկա։ Այդ քաղաքականությունը հաշվի է առնում ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի ու իմպերիալիզմի միջև, նրանց ռազմական հավասարությունը։ Այդ քաղաքականությունը հենվում է խաղաղ գոյակցության օգտին հանդես եկող երկրների ու ժողովուրդների բարոյական ու քաղաքական հարաճուն պոտենցիալի վրա։

«Կեղծ բարեպաշտական բոլոր դոգմաներից ոչ մեկը,— գրել է Մարքսը ավելի քան հարյուր տարի առաջ,— այնքան չարիքներ չի պատճառել, որքան այն դոգման, ըստ որի «Եթե խաղաղություն ես ուզում՝ պատրաստվիր պատերազմի»։ Այս մեծ ճշմարտությունը, որը գլխավորապես աչքի է ընկնում իր բովանդակած մեծ ստով, այն մարտակոչն է, որը զենքի կոչեց ամբողջ Եվրոպան...»։ Բայց հիմա էլ նույն մեծ ստուն է ընկած ամերիկյան վարչակազմի քաղաքականության հիմքում, որը մի գլուխ փողհարում է, թե ԱՄՆ-ի ռազմական հզորության մեծացումը, իբր, ծառայում է խաղաղության գործին։ Դա կրկնում է ամերիկյան պրեզիդենտը, հայտարարելով, թե «պատերազմին պատրաստ լինելը խաղաղության պահպանման առավել արդյունավետ միջոցն է»։

Իրականում սա նշանակում է ձգտում՝ փոխելու կողմերի ռազմաստրատեգիական հավասարությունը, ռազմական գերազանցության հասնելու ՍՍՀՄ-ի նկատմամբ և նրան զրկելու միջուկային ագրեսիայի դեպքում պատասխան հարված հասցնելու ունակությունից։ Սովետական Միությունը այդ բանը երբեք թույլ չի տա։ Նա երբեք անզեն չի մնա որևէ սպառնալիքի դեմ հանդիման։ Այս մասին ամենայն վճռականությամբ հայտարարեց Յու. Վ. Անդրոպովը «Պրավդայի» թղթակցի հարցերին տված պատասխաններում։ Այդ պատասխանները բովանդակում են զինաթափման հրատապ հարցերում մեր դիրքավորումների սկզբունքորեն կարևոր շարադրանքը, բոլոր ժողովուրդների համար, ողջ մարդկության համար վտանգավոր ամերիկյան վարչակազմի արտաքին քաղաքական կուրսի մեր գնահատականը։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը մերկացրեց այն անազնիվ եղանակները, որոնց դիմում է ԱՄՆ-ի վարչակազմը՝ փորձելով խեղաթյուրել Սովետական Միության քաղաքականությունը, արդարացնել միջուկային պատերազմի նորանոր տարբերակների մշակումը։

Այդ անխոհեմ կուրսի հիմքում ընկած է ռազմատենչ, մոլի հակակոմունիզմը։ Միայն սոցիալիզմի նկատմամբ տածվող ատելությամբ և, իհարկե, բացարձակ անգիտությամբ կարելի է բացատրել այն հայտարարությունները,

թե մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները և այդ ուսմունքի կողմնակիցները, իբր, «մերժում են բարոյականությունը», քանի որ նրանք այդ երևույթին մոտենում են դասակարգային դիրքերից: Ո՛չ, աշխատավոր մարդկանց, այսինքն՝ երկրագնդի բնակչության հսկայական մեծամասնության շահերն արտահայտող հենց դասակարգային դիրքավորումն է կոմունիստներին հնարավորություն ընձեռում՝ հետևողականորեն պաշտպանելու համամարդկային բարոյական արժույթները:

Եվ կոմունիստներին խրատ կարդալու ոչ մի իրավունք չունեն նրանք, ովքեր, չարաշահելով հավատացյալների կրոնական զգացմունքները, փորձում են աստծո անունով քողարկել սպառազինությունների մրցավազքի քաղաքականությունը, ովքեր գրկախառնվում են Սաբրայի ու Շաթիլայի խաղաղ բնակիչների կոտորածի կազմակերպիչների հետ և ներում են շնորհում Սոնգմիի դահիճներին, ովքեր հովանավորել և թաքցնում են նացիստ հանցագործներին, խրախուսում և զինում են Կենտրոնական Ամերիկայի և Աֆրիկայի հարավի տեռորիստական ու ռասիստական վարչակարգերին, ագրեսիայի են դրդում հեղափոխական Նիկարագուայի դեմ, ովքեր պլանավորում են «հաղթանակի» հասնել միջուկային պատերազմում և սառնարյուն կերպով հաշվարկում են այդ պատերազմի հարյուր միլիոնավոր զոհերին:

Մեր հայրենիքի, սոցիալիստական ընկերակցության կենսական շահերը, սոցիալիզմի նվաճումների պաշտպանության անհրաժեշտությունը մեզ պարտավորեցնում են լինել կազմ ու պատրաստ, ունենալ հզոր պաշտպանություն: Այս առթիվ տեղին է վերհիշել Մարքսի հետևյալ իմաստուն դիտողությունը. մարդկության պատմության մեջ, գրել է նա, գոյություն ունի հատուցման նման ինչ-որ բան և, ըստ պատմական հատուցման օրենքի, այն զենքը, որ կռում է իշխել ցանկացողը, շուռ է գալիս հենց իր դեմ: Միջուկային զենքի հետ հենց այդպես էլ եղավ: Երբ իմպերիալիզմը գիտության մեծ նվաճումը՝ ատոմային էներգիայի հայտնագործումը, վերածեց մարդկանց բնաջնջման միջոցի, Սովետական Միությունն ստեղծեց դրա հակակշիռը, որպեսզի կանխի միջուկային պատերազմը և փրկի մարդկությանը:

Բայց մենք միշտ էլ դեմ ենք եղել և դեմ կլինենք այն բանին, որ միջուկային ռումբերի ու հրթիռների կուտակումը դիտվի որպես խաղաղության միջոց: Ո՛չ, խաղաղության գործին միայն ծառայում են միջուկային զենքի գործադրումից, առաջինը միջուկային հարվածի դոկտրինաներից հրաժարվելը, սպառազինությունների մրցավազքի դադարեցումը: Ահա թե ինչու բոլոր երկրներում այնպիսի լայն արձագանք ստացան Վարշավայի պայմանագրի երկրների առաջարկությունները, Յու. Վ. Անդրոպովի առաջ քաշած կոնստրուկտիվ, ռեալիստական նախաձեռնությունները:

Համընդհանուր խաղաղության, ջերմամիջուկային պատերազմի կանխման գաղափարները տիրապետում են մարդկանց ավելի ու ավելի մեծ զանգվածների գիտակցությանը: Հակապատերազմական, հակահրթիռային շարժումը հսկայական թափ է առել և չտեսնված հարձակողական բնույթ ստացել: Արևմտյան Եվրոպայի երկրներում, ԱՄՆ-ում, Կանադայում, Ճապոնիայում այդ շարժման մեջ ընդգրկվել են տասնյակ միլիոնավոր մարդիկ: Նրանց բոլորին այսօր համախմբում է յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր մարդու առաջնագույն իրավունքը՝ ապրելու իրավունքը պաշտպանելու ընդհանուր կամքը:

Ավելի քան մեկ դար առաջ Մարքսը կոչ է արել «հասնել այն բանին, որ բարոյականության ու արդարության այն հասարակ օրենքները, որոնցով իրենց փոխհարաբերություններում պետք է առաջնորդվեն առանձին մարդիկ, բարձրագույն օրենքներ դառնան նաև ժողովուրդների հարաբերություններում»: Մեծագույն հումանիստի այս կոչը մեր ժամանակներում կարելի էր գրել խաղաղության մարտիկների մի քանի հարյուր միլիոնանոց բանակի դրոշին:

Կոմունիստական կուսակցությունները հնարավոր ամեն ինչ անում են պատերազմի վտանգի դեմ մասսաների պայքարը ծավալելու համար: Ինչպես մեր կուսակցությունը, նրանք ևս հանդես են գալիս միջուկային պատերազմի սպառնալիքի առթիվ մտահոգված քաղաքական ու հասարակական բազմազան ուժերի ամենալայն համագործակցության և փոխըմբռնման օգտին: Բեղմ-



նավոր կերպով են զարգանում ՍՄԿԿ-ի կոնտակտները սոցիալիստական ու սոցիալ-դեմոկրատական, լեյբորիստական կուսակցությունների հետ, նպատակ ունենալով պաշտպանել լարվածության թուլացումը, ամրապնդել խաղաղ հարաբերությունները Արևմուտքի և Արևելքի միջև: Սոցիալիստների և սոցիալ-դեմոկրատների վրա, որոնք կառավարություններ են գլխավորում Եվրոպայի յոթ երկրներում և որոնք վայելում են տասնյակ միլիոնավոր մարդկանց պաշտպանությունը, լուրջ պատասխանատվություն է ընկած խաղաղության պահպանման, բանվորական շարժման հակապատերազմական մեծ ավանդույթը գործով շարունակելու համար:

Մեզ համար ակնբախ է իրատեսորեն մտածող պետական գործիչների ազդեցությունը միջազգային քաղաքականության վրա: Վարելով խաղաղասիրական քաղաքականություն՝ Սովետական Միությունը հույս ունի, որ նրանք նույնպես կգործեն ժողովուրդների հանդեպ իրենց պարտքի ըմբռնումով, որոնք ծարավի են խաղաղության իրենց համար և գալիք սերունդների համար:

Մենք ապրում ենք այնպիսի ժամանակներում, երբ միաժամանակ աճում են թե՛ համաշխարհային պատերազմի վտանգը և թե այն ուժերը, որոնք ընդունակ են թույլ չտալու այդպիսի պատերազմ: ՍՄԿԿ-ն այդ բանը հաշվի է առնում թե՛ իր արտաքին քաղաքականության մեջ և թե միջազգային ասպարեզում մղվող գաղափարախոսական պայքարում: Նա այսուհետ ևս կմերկացնի իմպերիալիզմի դիտավորություններն ու տակտիկան, խոսքով ու գործով կապացուցի, որ Սովետական Միությունը անընդունելի է համարում միջուկային պատերազմը: Մենք դեմ ենք, որ գաղափարների վեճը վերածվի միջպետական առճակատման: Տարբեր հասարակարգ ունեցող պետությունների հարաբերությունների համար չկա և չի կարող լինել ուրիշ բանական հիմք, բացի խաղաղ գոյակցությունից: Այսպիսին է մեր կուսակցության անսասան դիրքավորումը:

Ընկերնե՛ր: Մարքսիզմը ունեցել է առանձնահատուկ ճակատագիր, որպիսին չի ունեցել և չունի հասարակական մտքի ուրիշ ոչ մի հոսանք: Մարքսից հետո անցած հարյուր տարում նրա ուսմունքը հարստացել է միջազգային բանվորական և ամբողջ հեղափոխական շարժման վիթխարի փորձով: Լենինի շնորհիվ մի ողջ դարաշրջան բացվեց մարքսիստական տեսության զարգացման ասպարեզում և, որ գլխավորն է՝ այդ տեսության հաջող կենսագործման ասպարեզում: Այժմ գիտական սոցիալիզմը ներառնում է թե՛ հաղթական սոցիալիստական հեղափոխությունների, ամենից առաջ, անշուշտ, մեծ Հոկտեմբերի փորձը, թե՛ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության փորձը և թե մի ամբողջ շարք երկրներում սոցիալիզմի կառուցման փորձը: Մարդկությունն իր տրամադրության տակ ունի մի անգին հարստություն՝ սոցիալիզմի կառուցման ուսմունքը և ռեալ կերպով գոյություն ունեցող սոցիալիստական հասարակությունը, որն իրեն պաշտպանել է իմպերիալիզմի դեմ մղված մարտերում և վստահորեն առաջ է ընթանում:

Մեր ժամանակներում անկարելի է մարքսիզմ-լենինիզմը ուսումնասիրել, պրոպագանդել, պաշտպանել՝ առանց հաշվի առնելու այդ մեծ ու անշրջելի նվաճումները: Այդ նվաճումները նոր փուլ են նաև հենց մարքս-լենինյան ուսմունքի մեջ: Դրանք բանվոր դասակարգին, աշխարհի բոլոր աշխատավորներին ցույց են տվել, որ գիտական սոցիալիզմի տեսության վրա հիմնված վսեմ իդեալները միանգամայն իրագործելի են: Մեծապես դրանով է բացատրվում սոցիալիստական գաղափարների ավելի ու ավելի լայն տարածումը ողջ աշխարհում: Դրա վառ վկայությունն է նաև այն մեծ թափը, որով տարբեր երկրներում, բոլոր մայրցամաքներում այժմ նշվում է Մարքսի հոբելյանը: Հանրաճանաչ է դառնում այն, որ աշխարհը այնպիսին չէր լինի, ինչպիսին է, եթե եղած չլինեին Մարքսն ու Լենինը: Սոցիալիզմի՝ որպես ամբողջ մարդկության հեռանկարի պատկերացումը, թափանցում է մոլորակի բնակչության ամենալայն խավերի գիտակցության մեջ:

Մեզ համար՝ կոմունիստներիս, սովետական մարդկանց համար մեծ ուսուցիչներին անմիջականորեն դիմելն անհրաժեշտ է մեր այսօրվա գործերում ու հոգսերում: Վերհիշենք Ն. Կ. Կրուպսկայայի խոսքերն այն մասին, թե Լե-

նինն ինչ վերաբերմունք է ունեցել Մարքսի նկատմամբ։ «Մարքսից,— գրել է նա,— Լենինը սովորում էր քննադատաբար նայել կյանքին, խորամուխ լինել կյանքի երևույթներում, հիմնականը զանազանել երկրորդականից, սովորում էր տեսությունը կապել պրակտիկայի հետ...»։ Լենինը մշտապես «խորհրդակցում էր» Մարքսի հետ, հեղափոխության ամենադժվարին, ամենաբեկումնային պահերին նրա մոտ էր փնտրում հրատապ հարցերի պատասխանները։ «Տեսությունը Իլյիչին տալիս էր,— ոգևորությամբ ասել է Ն. Կ. Կրուպսկայան,— կյանքի գիրքը կարդալու կարողություն»։ Սովետական կոմունիստները Լենինից սովորում են, թե ինչպես ուսումնասիրեն Մարքսին և միևնույն ժամանակ՝ թե ինչպես ուսումնասիրեն հենց Լենինին և թե ինչպես կենսագործեն նրանց ուսմունքը։

Մարքսիզմը, Լենինի բառերով ասած, «յուրացրեց և վերամշակեց այն ամենը, ինչ արժեքավոր է մարդկային մտքի և կուլտուրայի ավելի քան երկու հազարամյա զարգացման մեջ»։ Ինքը՝ Մարքսը, սկզբունքայնության, գիտական բարեխղճության, պատվի, պատասխանատվության մարմնացումն է։ Նրան բնորոշ էին բարձր ինքնակարգապահությունը և աշխատանքային անխոնջությունը, կրքոտությունն ու անընկճելիությունը իր առջև դրված նպատակին հասնելու գործում։ Ուստի Մարքսին, ինչպես և Էնգելսին, Լենինին իմանալը ո՛չ միայն լավագույն եղանակն է իսկական կուլտուրային հաղորդակցվելու, այլև անսպառ աղբյուր է դաստիարակության, գաղափարական հոգևոր հարստացման և բարոյական կատարելության հասնելու համար։ Եվ մենք օգտվում ենք այդ աղբյուրից, որպեսզի հաջողությամբ լուծենք մեր կյանքի ու պայքարի խնդիրները։

Տիրապետել, պաշտպանել, զարգացնել, հմտորեն օգտագործել պրակտիկայում ամենատարբեր պայմաններում. հակիրճ այսպես կարելի է ձևակերպել մեր կուսակցության վերաբերմունքը գիտական սոցիալիզմի նկատմամբ։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ-ի համար, հանուն բանվոր դասակարգի շահերի, ժողովուրդների ազատության ու երջանկության պայքարող բոլոր իսկական մարտիկների համար գիտական սոցիալիզմը, մարքսիզմ-լենինիզմը եղել են և կլինեն լույսի ու բանականության ոգեշունչ աղբյուր, գործողության հուսալի և իմաստուն ուղեցույց։

Մարքսի-Լենինի ուսմունքի հիման վրա պատմական մեծ հաղթանակներ են նվաճված։

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով դեպի նոր հաղթանակներ՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի և կոմունիզմի։

---

# ՄԵԾԱԳՈՒՅՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱԶԱՐԱՎՈՐ ՏԱՐԻՆԵՐ մարդկությունն ապրել է սոցիալ-դասակարգային հակամարտության պայմաններում, ուր իշխել է ոչ միայն մարդ-անհատների, սոցիալական խավերի ու դասակարգերի, այլև ազգերի ու ժողովուրդների ենթարկում ու ճնշում, անխնա շահագործում, բռնություն ու թշնամություն։ Անցյալի նշանավոր մտածողները փնտրում ու չէին գտնում սոցիալական այդ անարդարության հաղթահարման իրական ուղիները։ Լավագույն դեպքում նրանք ստեղծում էին սոցիալական ուտոպիաներ, երազում մարդկության արդարացի, հաշտ ու խաղաղ ապագայի մասին։

Կարլ Մարքսն առաջինն էր, որ բացահայտեց շահագործման ու սոցիալական ճնշման բոլոր ձևերից մարդկությունն ազատագրելու իրական ուղիները, հիմնավորեց կապիտալիզմի և դրան կուգընթաց պահպանված մյուս շահագործողական ֆորմացիաների վերացման ու անդասակարգ կոմունիստական հասարակարգի հաղթանակի անխուսափելիությունը։ Մարքսն ապացուցեց, որ համաշխարհային-պատմական վերափոխումն իրականացնելու ունակ միակ սոցիալական ուժը արդյունաբերական բանվորների դասակարգն է, և նա բանվորներին զինեց իրենց պատմական առաքելության գիտակցությամբ, կռեց նրանց ազատագրական պայքարի անհաղթելի զենքը՝ հեղափոխական տեսությունը։

Կարլ Մարքսի ըմբռնմամբ բանվոր դասակարգի ազատագրումը սոսկ մեկ դասակարգի կյանքի պայմանների փոփոխություն չէ, այլ հասարակության կյանքի բոլոր կողմերի արմատական վերափոխում, ողջ հասարակության ազատագրում արտադրամիջոցների մասնավոր սեփականությամբ պայմանավորված շահագործումից ու ճնշումից։ Քանի դեռ պահպանվում է մասնավոր սեփականությունը, ոչ միայն բանվորն ազատ չի կարող լինել, այլև ազատ չեն կարող լինել ժողովուրդները, և անհնար են նրանց միջև իսկական բարեկամական հարաբերությունները։ Ուրեմն, մարդկության ազատագրման առաջին պայմանը արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականության, մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացումն է և դրա հիման վրա ժողովուրդների միջև հավասարների եղբայրական հարաբերությունների հաստատումը։

Այս կարևորագույն միտքը Մարքսը ձևակերպեց իր հեղափոխական գործունեության արշալույսին։ «Որպեսզի ժողովուրդները կարողանան իսկապես միավորվել, նրանք պետք է ընդհանուր շահեր ունենան։ Որպեսզի նրանց շահերն ընդհանուր լինեն, պետք է ոչնչացնել սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները, որովհետև սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները պայմանավորում են որոշ ժողովուրդների շահագործումը մյուսների կողմից. սեփականության գոյություն ունեցող հարաբերությունների ոչնչացման գործում շահագրգռված է միայն բանվոր դասակարգը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, «Հայպետհրատ», 1960, էջ 38)։ Այստեղից Մարքսը հանգեց այն եզրակացության, որ պրոլետարիատի հաղթանակը բուրժուազիայի նկատմամբ կնշանավորվի ոչ միայն իրեն՝ բանվոր դասակարգի ազատագրությամբ, այլև հնարավոր

կդարձնի հաղթահարելու ժողովուրդների միջև թշնամանք հրահրող ազգային ու հասարակական բոլոր բախումները։

Ուսումնասիրելով մարդկության զարգացման պատմական ընթացքը, Մարքսը նկատեց, որ արտադրության կապիտալիստական եղանակի զարգացումը հանգեցնում է հակասական հետևանքների։ Այն, մի կողմից, մի շարք, մասնավորապես հետամնաց ժողովուրդների քաղաքական ու տնտեսական կախման մեջ է դնում ուժեղ, արդյունաբերապես զարգացած կապիտալիստական երկրներից, ծնում թալանչիական ու նվաճողական պատերազմներ, ստեղծում գաղութակալության համաշխարհային սիստեմ, թշնամացնում ժողովուրդներին, մյուս կողմից՝ կապիտալիզմի ստեղծած համաշխարհային տնտեսությունը նպաստում է ազգային կղզիացածության և տնտեսական մեկուսացածության անհետացմանը։ Այդ պրոցեսը դրսևորվում է նրանում, որ կապիտալիզմի տիրապետությունը բոլոր երկրներում հանգեցնում է վերջիվերջո բուրժուական հարաբերությունների առաջացման, ծնում ազգային բուրժուազիա ու պրոլետարիատ, իսկ վերջինս իր վիճակով ու նպատակներով սոսկ ազգային մնալ չի կարող։ Պրոլետարիատն իր կյանքի պայմաններով, տնտեսական դրությամբ միջազգային է, նրա դասակարգային թշնամին միջազգային է, նրա ազատագրության պայմանները նույնպես միջազգային են և, հետևաբար, նա չի կարող մեկուսացած մնալ ու պետք է ձգտի բոլոր երկրների բանվորների հետ համաշխարհային միասնության։

Տասնիններորդ դարում, բուրժուադեմոկրատական հեղափոխությունների ժամանակ, բանվոր դասակարգն արդեն իր կնիքն էր դնում հասարակական շարժման վրա և դրա շնորհիվ (մասնավորապես՝ Եվրոպայի մի շարք երկրներում) այդ հեղափոխությունները միահյուսվում են ազգային-ազատագրական շարժմանը։ Սակայն բուրժուազիայի տիրապետությունը, ինչպես ճիշտ ըմբռնեց Կ. Մարքսը, ի վիճակի չէր վերջնականապես հաղթահարելու ժողովուրդների շահագործումն ու ճնշումը, որովհետև այն պահպանում է ճնշման հիմքը՝ արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։ Ժողովուրդների կղզիացման ու նրանց հակադրությունների լիակատար հաղթահարումը հնարավոր է միայն կապիտալիզմի կործանումից և պրոլետարիատի տիրապետության հաստատումից հետո։ Այդ միտքը որոշակի և ավարտուն հռչակվեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի **Կոմունիստական կուսակցության մանիֆեստում**՝ գիտական կոմունիզմի հանճարեղ ծրագրային փաստաթղթում։ «Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից։

Ազգերի ներսում եղած դասակարգերի հակամարտության հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերություններն ազգերի միջև» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր**, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972, էջ 161)։

Կ. Մարքսը բազմիցս նշել է, որ պրոլետարիատի հաղթանակը զարգացած կապիտալիստական երկրում միաժամանակ ճնշված ազգերի ազատագրման ազդանշան կլինի։ Այսպիսով, իշխող ազգի պրոլետարիատը պետք է ձգտի, առաջին հերթին, տապալել իր ազգի կապիտալիստների իշխանությունը, որով կհասնի նաև ճնշված ազգերի ազատագրությանը։ «Ահա թե ինչու,— նշում էր Մարքսը,— Լեհաստանը պետք է ազատագրել ո՛չ թե Լեհաստանում, այլ Անգլիայում» (**Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին**, էջ 39)։

Կապիտալիզմի տապալումը չի կարող սոսկ մի երկրի, սոսկ տեղական հարց լինել, այն միջազգային, համաշխարհային հարց է, որի իրականացման համար անհրաժեշտ է բոլոր երկրների բանվորների միջազգային միավորում։ Հանգամանորեն վերլուծելով 1848—1851 թթ. բուրժուադեմոկրատական հեղափոխությունների արդյունքները Եվրոպայում, Մարքսը ցույց տվեց, որ նրանց պարտությունը եվրոպական մի շարք ժողովուրդների գցեց խոշոր կապիտալիստական տերությունների լծի տակ։ Բայց, միաժամանակ, այդ ժողովուրդների ազգային անկախության համար մղվող հեղափոխական պայքարն ուղղակի կախման մեջ դրվեց սոցիալիստական հեղափոխության ճակատագրից, լքացավ նրանց կարծեցյալ ոչ կախվածությունը սոցիալական մեծ հեղաշրջումից։ «Ո՛չ հունգարը, ո՛չ լեհը, ո՛չ էլ իտալացին,— իրավացիորեն եզրա-



կացրեց Մարքսը,— ազատ չեն լինի, քանի դեռ բանվորը մնում է ստրուկ» (**Ընտիր երկեր**, հ. 1, էջ 303)։

Մեծ մտածողը բանվորների միջազգային միավորումը համարում էր բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրման առաջին պայմաններից մեկը։ Կապիտալիզմի համապարփակ տիրապետության պայմաններում անիմաստ կլիներ առաջադրել բոլոր ժողովուրդների միավորման ու համերաշխության նշանաբանը։ Իրավ, այն ժամանակ միավորվել ու համերաշխվել կարող էին միայն տարբեր ազգերի բանվորները։ Անձնվեր հեղափոխականն իր կյանքը նվիրեց բոլոր երկրների ու ազգերի բանվորներին համախմբելու, միավորելու և կապիտալիզմի ու բռնության դեմ անհաշտ պայքար մղելու գործին։ Նա ցույց տվեց, որ այդ միավորումն ինքնին չի ստեղծվի, որ դրա համար անհրաժեշտ է երկարատև ու համառ գիտակցական պայքար։ Չէ որ կապիտալիստները պայմաններ են ստեղծում տարբեր ազգերի բանվորներին թշնամացնելու և ամեն կերպ ձգտում պահպանել այդ թշնամությունը։ Մարքսն ուղղակի նշում էր, որ անգլիական բուրժուազիան ոչ միայն շահագործում է իռլանդական ժողովրդին, ստիպում իռլանդական չքավորներին հարկադրաբար ներգաղթել Անգլիա, այլև խոր հակամարտություն է սերմանում անգլիական ու իռլանդական բանվորների միջև։ 1870 թ. գրած իր նամակներից մեկում Մարքսը շեշտում էր, որ դրա հետևանքով «Անգլիայի արդյունաբերական և առևտրական բոլոր կենտրոններն այժմ ունեն երկու **թշնամական** բանակի **բաժանված** բանվոր դասակարգ՝ անգլիական պրոլետարիատ և իռլանդական պրոլետարիատ» և խորությամբ բացահայտում էր այդ թշնամության տնտեսական, սոցիալական և քաղաքական աղբյուրները. «Սովորական անգլիացի բանվորն ատում է իռլանդական բանվորին՝ որպես իր կյանքի միջին մակարդակն իջեցնող մրցակցի։ Նա վերջինիս նկատմամբ իրեն զգում է **տիրապետող** ազգի անդամ և հենց դրա համար էլ գործիք է դառնում իր արիստոկրատների և կապիտալիստների ձեռքին ընդդեմ **Իռլանդիայի** և դրանով ամրապնդում է նրանց տիրապետությունը **հենց իր վրա**։ Նա կրոնական, սոցիալական և ազգային նախապաշարմունքներ ունի դեպի Իռլանդիայի բանվորը։ Նա վերաբերվում է իռլանդացուն մոտավորապես այնպես, ինչպես սպիտակ աղքատները (poor whites) վերաբերվում են նեգրերին ամերիկյան միության նախկին ստրկատիրական նահանգներում։ Իռլանդացին վճարում է նրան նույն փողով՝ տոկոսներն էլ հետը։ Նա անգլիացի բանվորին համարում է **Իռլանդիայի անգլիական տիրապետության** միաժամանակ և՛ մասնակիցը, և՛ կույր գործիքը» (**Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին**, էջ 121)։

Մյուս կողմից՝ նվաճված երկրներում գաղութակալ բուրժուազիան արտոնյալ պայմաններ է ստեղծում իր ազգությանը պատկանող բանվորների վերնախավերի համար, և դրա հետևանքով ճնշված ազգերի աշխատավորները նրանցում տեսնում են ոչ թե իրենց բախտակիցներին, այլ ճնշողներին ու հարստահարողներին։ Բուրժուազիան արհեստականորեն բորբոքում ու պաշտպանում է այդ հակամարտությունը, քանզի նա գիտե, որ «այդ երկպառակության մեջ է **իր հզորությունը պահպանելու իսկական գաղտնիքը**» (Նույն տեղը, էջ 115)։

Բուրժուազիան ձգտում է հավերժացնել ժողովուրդների ստրկացումը, ազգամիջյան պայքարը։ Հակադրելով ճնշող և ճնշված ժողովուրդներին, նա ազատությունից զրկում է ո՛չ միայն ճնշված, այլև ճնշող, գաղութակալ ազգին, որովհետև ոչ մի ազգ չի կարող ազատ լինել, շարունակելով ճնշել ուրիշ ազգերի։ «Այն ժողովուրդը,— գրում է Մարքսը,— որը հարստահարում է մի ուրիշ ժողովրդի, կռում է իր սեփական շղթաները» (Նույն տեղը)։ Այդ վիճակից պրոլետարիատը կարող է ազատվել միայն հեղափոխության միջոցով։

Իր բազմաթիվ հոդվածներում ու ելույթներում Մարքսն անմիջականորեն արձագանքում ու խրախուսում էր ճնշված ժողովուրդների պայքարն իրենց անկախության համար։ Տասնյակ հոդվածներ ու ելույթներ է նվիրել նա Իռլանդիայի, Լեհաստանի ազատագրական պայքարին, բազմիցս մերկացրել անգլիական բուրժուազիայի գաղութային քաղաքականության և դիվանագիտության գաղտնի քայլերը, կոչ արել անգլիական պրոլետարիատին պայքա-

բելու բրիտանական կայսրության լծի տակ հեծող ժողովուրդների ազատագրության համար: Մեծագույն համակրանքով էր վերաբերվում Մարքսը իտալական ժողովրդի ազատագրական պայքարին: Իր բազմաթիվ հոդվածներում, նամակներում նա մերկացնում էր ֆրանսիական ու ավստրիական բռնակալների նվաճողական քաղաքականությունն Իտալիայում, բացահայտում նրանց ստոր գործարքները և ոգեշնչում իտալական աշխատավորներին՝ երկրի անկախության համար մղվող նրանց հերոսական պայքարում: Արդեն իսկ իր գործունեության սկզբում Կ. Մարքսը, խոսելով կոմունիստների ինտերնացիոնալիստական դիրքորոշման մասին, որոշակիորեն նշել է. «Մենք կպաշտպանենք իտալական անկախության գործը, մենք մահացու պայքար կմղենք ավստրիական բռնակալության դեմ Իտալիայում, ինչպես նաև Գերմանիայում ու Ավստրիայում» (նույն տեղը, էջ 171): Ընդսմին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը շեշտում էին, որ նրանք անվերապահ պաշտպանում են բոլոր ճնշված ազգերի անկախության և ինքնորոշման համար պայքարը: Այսպես, Ֆ. Էնգելսը, ելնելով Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հիմնադրույթներից, ուղղակի նշում էր. «Առանց վերականգնելու յուրաքանչյուր առանձին ազգի անկախությունն ու միասնությունը՝ հնարավոր չէ ո՛չ պրոլետարիատի միջազգային միավորումը, ո՛չ էլ այդ ազգերի խաղաղ ու գիտակցական համագործակցությունը՝ ընդհանուր նպատակներին հասնելու համար» (նույն տեղը, էջ 277):

Բացահայտելով գաղութակալության անմիջական կախումը կապիտալիզմի զարգացումից, Կ Մարքսն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց Արևելքի ժողովուրդների վիճակին ու նրանց պատմական զարգացման հեռանկարներին: Նա մեծ գոհունակությամբ էր արտահայտվում գաղութակալների դեմ ծավալվող ամեն մի ապստամբության մասին: Իր բազմաթիվ հոդվածներում նա հանգամանալից վերլուծել է XIX դարի կեսերի հնդկական ու չինական ապստամբությունները և վճռականորեն պաշտպանել գաղութակալության դեմ այդ ժողովուրդների զինված պայքար մղելու իրավունքը, անխնա մերկացրել Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս գաղութակալ տերությունների թալանչիական քաղաքականությունը Հնդկաստանում, Չինաստանում, Իրանում, Աֆղանստանում, Սիրիայում, նեգրական ծագում ունեցող բնակչության նկատմամբ կիրառվող խտրականությունը՝ ԱՄՆ-ում:

Գնահատելով անգլիական գաղութարարների դեմ հնդկական ապստամբության պատմական նշանակությունը, Մարքսը նշեց, որ թեև այն էական փոփոխություն չմտցրեց Հնդկաստանում տիրող գաղութային կարգերում, սակայն բացահայտեց հնդիկ ժողովրդի ատելությունը գաղութային ստրկության նկատմամբ և ակնհայտ դարձրեց իր ազատագրության համար վճռական պայքարի ելնելու նրա ունակությունը:

«Պարոն Ֆոգտը» հայտնի պամֆլետում և բազմաթիվ հոդվածներում Կ. Մարքսը վճռականորեն դատապարտեց նվաճումների ու զավթումների քաղաքականությունը, դիմակազերծեց տիրապետող բուրժուական դասակարգի դիվանագիտության կողմից կիրառվող ահաբեկման ու շանտաժի ստոր մեթոդները, փոքր երկրների գործերին կոպտորեն միջամտելու, մի ազգը մյուսի դեմ գրգռելու անհամար փաստերը:

Մերկացնելով գաղութակալության շահադիտական նպատակները և լուսաբանելով ճնշված ժողովուրդների պայքարը օտար լծի դեմ, Կ. Մարքսը բանվորներին դաստիարակում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի, բոլոր երկրների աշխատավորների հետ համերաշխության ու միասնության ոգով: Մարքսը ցույց տվեց, որ ազգային հարաբերություններում, ինչպես ներազգային (այսինքն՝ ազգի ներսում տարբեր դասակարգերի ու խավերի), այնպես էլ և միջազգային հարաբերություններում հիմնականը, առաջնայինը սոցիալտնտեսական գործոններն են, սակայն այդ պրոցեսում կարևոր դեր են խաղում նաև դրանց իդեալական արտացոլումները մարդկանց գիտակցության մեջ՝ հասարակական հոգեբանության և գաղափարախոսության տարբեր ձևերը՝ քաղաքական, իրավական, կրոնական, բարոյական, գեղագիտական և այլ զգացմունքներն ու տեսությունները: Այսպես, սոցիալական պայմանների, ինչպես և պատմական զարգացման յուրահատկությունների հիման վրա ամեն մի ազգի



մոտ ձևավորվում են հասարակական հոգեբանության և գաղափարական ըմբռնումների առանձնահատկություններ, այսպես կոչված ազգային խառնվածքը կամ բնավորությունը, որոշակի ազգային զգացմունքներ՝ ազգային արժանապատվություն, հպարտություն և այլն: Դրանց հետ հաշվի չնստել չի կարելի, սակայն պետք է միշտ նկատի ունենալ, որ հակամարտ դասակարգերի բաժանված հասարակարգում գաղափարախոսությունը դրսևորվում է երկփեղկված՝ որպես տարբեր դասակարգերի հակադիր գաղափարախոսություն:

Ազգային հարաբերությունների բնագավառում տիրապետող շահագործող դասակարգերին հատուկ են ազգային գործոնի գերագնահատումը, տիրող ազգի դերի, պատմության ուռճացումը, ազգային սնապարծությունն ու արհամարհանքը նվաճված և ճնշված ժողովուրդների նկատմամբ, նրանց հնարավորությունների ու դերի թերագնահատումը: Դա նացիոնալիզմի ու շովինիզմի գաղափարախոսությունն է, որը բուրժուազիան ամեն կերպ ձգտում է արմատացնել նաև աշխատավորների գիտակցության մեջ՝ իրար հակադրելու, երկպառակելու համար տարբեր ազգերի բանվորներին: Պրոլետարիատը դրան հակադրում է իր գաղափարախոսությունն ազգային հարցում՝ բոլոր ժողովուրդների հավասարության և բոլոր ազգերի բանվորների էական շահերի միասնության ու նրանց սերտ համախմբման գաղափարախոսությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը: Ինչպես հետագայում հստակ ձևակերպել է Վ. Ի. Լենինը, դրանք բուրժուազիայի և պրոլետարիատի արմատապես հակադիր ըմբռնումներն են ազգային հարցում. «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու անհաշտ ու թշնամական լոզունգներ, որոնք համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (ԵԼԺ, հ. 24, էջ 154):

Կապիտալիզմի պայմաններում հնարավոր չէ ազգերի լիակատար միասնություն և բարեկամություն՝ այդ կարգը ամեն գնով պահպանում և սրում է ժողովուրդների հակադրությունն ու թշնամությունը, հրահրում ազգայնականշովինիստական քաղաքականություն, ծնում նվաճողական և ազգակործան պատերազմներ: Կապիտալիզմի օրոք միասնությունը և համերաշխությունը հնարավոր է տարբեր ազգերի պրոլետարների միջև միայն: Միայն պրոլետարներն են կարող զուգակցել ազգային և ինտերնացիոնալ շահերը, ճիշտ հասկանալ և հաշվի առնել ժողովուրդների ընդհանուր, հիմնական շահերը: Ինչպես իրավացիորեն նշել է Ֆ. Էնգելսը, «բանվորական շարժման մեջ իսկական ազգային գաղափարները, որոնք համապատասխանում են տվյալ ազգի վիճակը բնութագրող, արդյունաբերական ու գյուղատնտեսական, տնտեսական փաստերին, միաժամանակ հանդիսանում են իսկական ինտերնացիոնալ գաղափարներ» (Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, էջ 191): Այդ իսկական ինտերնացիոնալ գաղափարների անմիջական կրողները կոմունիստներն են՝ բանվոր դասակարգի առաջատար ու կազմակերպված ջոկատը, որն ի մի է բերում բոլոր երկրների, բոլոր ազգերի բանվորների ազատագրական պայքարը: Առաջ քաշելով «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» համաշխարհային-պատմական լոզունգը և հիմնադրելով բանվորների միջազգային ընկերությունը՝ Առաջին Ինտերնացիոնալը, Կ. Մարքսը գործնականում իրականացրեց տարբեր ազգերի հեղափոխական բանվորների միջազգային միավորումը: «Անցյալի փորձը ցույց տվեց,— նշել է Մարքսը Ինտերնացիոնալի հիմնադիր մանիֆեստում,— որ արհամարհական վերաբերմունքը եղբայրական այն դաշինքի նկատմամբ, որ պետք է գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանելու միմյանց, պատժվում է նրանց ցաքուցրիվ ջանքերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 15):

Խորապես ու հիմնովին ուսումնասիրելով համաշխարհային պատմությունը և հատկապես իրենց ապրած դարաշրջանի միջազգային հարաբերությունները, մարքսիզմի հիմնադիրները վերը նշվածի հետ միաժամանակ բացահայտեցին ազգային հարաբերություններում սուբյեկտիվ մոմենտի՝ քաղաքա-

կան, գիտական, փիլիսոփայական, կրոնական, բարոյական, գեղագիտական գաղափարների, շարժման գլուխ կանգնած քաղաքական կազմակերպությունների ու դրանց ղեկավարների որոշակի դերը, նշեցին այդ հարաբերություններում հոգեբանական, կրոնական, լեզվական հանգամանքների, ազգային ավանդույթների նշանակությունը։ Լինելով հետևողական ինտերնացիոնալիստներ, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բացահայտեցին ազգայինի և միջազգայինի (ինտերնացիոնալի) իրական դիալեկտիկական կապն ու փոխպայմանավորվածությունը։ Նրանք բարձր էին գնահատում առողջ ազգային զգացմունքը, ազգային հպարտությունն ու արժանապատվությունը, դրանք հստակ տարբերակելով ազգային սնապարծությունից, էգոիզմից, նացիոնալիզմից ու շովինիզմից։ Նշում էին, որ բանվոր դասակարգն էլ, ինտերնացիոնալիստ լինելով, ապազգային չէ. «Եթե ոչ ըստ բովանդակության, ապա ըստ ձևի պրոլետարիատի պայքարն ընդդեմ բուրժուազիայի՝ սկզբից ազգային պայքար է հանդիսանում։ Յուրաքանչյուր երկրի պրոլետարիատ պետք է, իհարկե, նախ և առաջ հաշիվ մաքրի իր սեփական բուրժուազիայի հետ» (Ընտիր երկեր, հ. 1, էջ 152)։

Տեսականորեն, քաղաքականապես և կազմակերպչորեն նախապատրաստելով սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում, Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի մեծ գործի շարունակող Վ. Ի. Լենինը ոչ միայն ուսումնասիրեց ազգային հարցի քաղաքական, տնտեսական, սոցիալ-դասակարգային, հոգեբանական, լեզվական-կուլտուրական, հաղորդակցական ասպեկտները, այլև մշակեց ազգային հարցի մարքսիստական լուծման կոնկրետ ծրագիրը՝ որպես կոմունիստական կուսակցության ընդհանուր ծրագրի կարևոր բաղկացուցիչ մաս։ Այդ ծրագրի էությունը հետևյալն էր. ազգերի լիակատար իրավական հավասարություն՝ ընդհուպ մինչև անջատվելու և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքի ճանաչումը. ազգերի բոլոր արտոնությունների և սահմանափակությունների վերացում, ազատագրված ազգերի միավորում կամավոր դաշինքի սկզբունքով, ազգերի փաստական՝ քաղաքական, տնտեսական, կուլտուրական հավասարություն։ Եվ որպես դրանց իրականացման իրական պայման՝ բոլոր ազգերի աշխատավորների միավորում միասնական-քաղաքական, արհեստակցական և այլ կազմակերպությունների մեջ և մասնավոր սեփականության վերացում ու սոցիալիստական կարգերի հաստատում։

Պատմության փորձը հաշվի առնելով, Վ. Ի. Լենինը հիմնավորեց և առաջադրեց սոցիալիզմի ուղու վրա կանգնած ժողովուրդների դաշնադրության նոր, ամենակատարյալ ձևը՝ ՍՍՀՄ-ը, որը 1922 թվականին միավորվեց վեց դաշնակից սոցիալիստական հանրապետությունների, իսկ հետագայում աճեցդարձավ 15 սոցիալիստական հանրապետությունների միություն։

Սոցիալիստական ազգերի այս նոր դաշնադրությունն ամուր հիմքերի վրա խարսխելու համար Լենինը ոչ միայն վիթխարի գործնական, այլև խորագույն տեսական աշխատանք կատարեց, հատուկ ուշադրություն նվիրեց ազգային և միջազգային շահերի զուգակցման ճիշտ մեթոդների մշակմանը, շեշտելով. «Մեր փորձը մեր մեջ անսասան համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է բախումների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակ ինտրիգների երկյուղը, ստեղծում է, մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե փոքր ի շատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 457)։

Այսօր, երբ Կ. Մարքսի մահվանից անցել է մեկ դար, և ՍՍՀՄ-ը բոլորել է իր առաջին վաթսունամյակը, կարող ենք հպարտությամբ նշել, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքները վերաճել են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, այսինքն՝ դարձել են սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու խավերի, անկախ նրանց ռասայական ու ազգային պատկանելության, եղբայրական համագործակցություն և միասնություն կյանքի բոլոր բնագավառներում։ Դա պայմանավորված է, նախ և առաջ, ազգային



հարաբերությունների բնագավառում ՍՄԿԿ հետևողական ինտերնացիոնալիստական քաղաքականությամբ։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում պրոլետարական-սոցիալիստական ինտերնացիոնալիզմը ոչ միայն քաղաքական, այլև իրավական և բարոյական սկզբունք է։ Այդ առումով հատկանշական են ՍՄԿԿ ծրագրում առաջադրված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի «ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարեկամություն և եղբայրություն, անհանդուրժողականություն ազգային ու ռասայական անբարյացակամության նկատմամբ», «Եղբայրական համերաշխություն բոլոր երկրների աշխատավորների, բոլոր ժողովուրդների հետ», «Հավատարմություն կոմունիզմի գործին, սեր դեպի սոցիալիստական հայրենիքը, դեպի սոցիալիզմի երկրները» սկզբունքները։

ՍՍՀՄ-ում ինտերնացիոնալիզմի սկզբունքները, ինտերնացիոնալիստականի և ազգայինի ներդաշնակ զուգակցումը վավերացված են ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ, ուր սովետական հասարակությունը բնութագրվում է որպես սոցիալիստական հասուն հասարակական հարաբերությունների հասարակություն, որտեղ «բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի մերձեցման, բոլոր ազգերի ու ազգությունների իրավաբանական ու փաստական հավասարության, նրանց եղբայրական համագործակցության հիման վրա կազմավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ։ Դա հայրենասեր և ինտերնացիոնալիստ աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության և գիտակցականության հասարակություն է» (ՍՍՀՄ սահմանադրություն, «Հայաստան» հրատ., 1979, էջ 4—5)։

Ահա հենց այս իրողությունը՝ սովետական մարդկանց մոտ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության, ազգային ու ինտերնացիոնալ արժանապատվության ներդաշնակ զուգակցումը վկայում է, որ սովետական սոցիալիստական հասարակության մեջ իրականանում է Կ. Մարքսի առաջադրած այն դրույթը, թե մարդկանց ու ազգերի փոխհարաբերության մեջ պետք է ձգտել, որ «բարոյականության ու արդարության պարզ օրենքները, որոնցով պիտի ղեկավարվեն մասնավոր անձերն իրենց փոխհարաբերություններում, բարձրագույն օրենքներ դառնան նաև ժողովուրդների փոխհարաբերությունների մեջ» (Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, էջ 76)։

ՍՄԿԿ XXVI համագումարը, անդրադառնալով մեր երկրում ազգային հարաբերությունների հետագա զարգացման հարցերին, արձանագրեց. «Սովետական ազգերի միասնությունն այսօր ամուր է, քան երբևէ։ Դա, իհարկե, չի նշանակում, թե ազգային հարաբերությունների ոլորտում բոլոր հարցերն արդեն լուծված են։ Այնպիսի խոշոր բազմազգ պետության զարգացման դինամիկան, ինչպիսին մերն է, քիչ պրոբլեմներ չի ծնում, որոնք պահանջում են կուսակցության զգայուն վերաբերմունքը», դրա համար էլ «կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 91, 92)։

Ազգային հարաբերությունների բնագավառում այսօր մեր կուսակցությունը խնդիր է դնում միութենական հանրապետություններում ապահովել կուսակցական և պետական մարմիններում այնտեղ ապրող բոլոր ազգերի պատշաճ ներկայացուցչության իրավունքի հետևողական իրականացում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր մարդու գործնական ու գաղափարաբարոյական հատկությունները, ավելի լավ հաշվի առնել և բավարարել հանրապետությունների ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների յուրահատուկ պահանջները լեզվի, կուլտուրայի և կենցաղի բնագավառներում։

Կ. Մարքսի առաջադրած ինտերնացիոնալիզմի սկզբունքները նշանավորեցին ազգերի ու ազգությունների միջև փոխհարաբերության արմատապես նոր կողմնորոշում՝ ոչ թե ազգայինի կամ համամարդկայինի գերադասություն, ուռճացում և ոչ էլ դրանցից մեկի կամ մյուսի արհամարհում, այլ ազգայինի և ինտերնացիոնալի, ազգային և համամարդկային շահերի ներդաշնակ զու-

գակցում՝ համաշխարհային-պատմական խնդիրների լուծման ժամանակ ազգային մանր շահերը ենթարկելով համամարդկային շահերին և ժողովուրդների միասնական ջանքերով հասնել նրանցից յուրաքանչյուրի ազատ ու համակողմանի զարգացման։ Կ. Մարքսի այս գաղափարն իր մարմնացումը գտավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, ուր, հիրավի, «Յուրաքանչյուր սովետական հանրապետություն կարող է այսուհետև էլ ծաղկել և ամրապնդվել միայն ՍՍՀՄ եղբայրական սոցիալիստական ազգերի մեծ ընտանիքում» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 182)։ Այսօր այդ դրույթը լիովին վերաբերում է նաև սոցիալիստական երկրների համաշխարհային ընկերակցությանը, ուր միավորված է արդեն մարդկության մեկ երրորդը։ Պրոլետարական-սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան սկզբունքներով առաջնորդվող այդ ընկերակցությունն այսօր վիթխարի դրական ազդեցություն է գործում ամբողջ աշխարհի երկրների, բոլոր ազգերի փոխհարաբերությունների վրա և՛ խաղաղ ու բարեկամական համագործակցության օրինակ տալով, և՛ իր միասնությամբ, ու հավաքական ուժով վճռական դեր խաղում ջերմամիջուկային պատերազմի կանխման գործում։

Ընդհանրացնելով ՍՍՀՄ-ում ազգերի համակողմանի զարգացման ու նրանց ինտերնացիոնալ համախմբման վաթսունամյա հոյակապ արդյունքները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը նշեց, որ «Լիովին հաստատված է Մարքսի-Լենինի այն ուսմունքի պատմական ճշմարտացիությունը, որ ազգային հարցը կարող է լուծվել միայն դասակարգային հիմքի վրա։ Սոցիալական հակամարտությունների հետ մեկտեղ անցյալի գիրկն են անցել ազգային երկպառակությունը, ռասայական և ազգային անիրավահավասարության ու ճնշման բոլոր տեսակները»։ Նա միաժամանակ նշեց, որ այդ գործում առանձնահատուկ ավանդ ունի ռուս ժողովուրդը, որը ոչ միայն ամովին հրաժարվեց իր նախկին արտոնություններից, այլև անշահախնդիր եղբայրական օգնության ձեռք մեկնեց մեր երկրի բոլոր ժողովուրդներին։ Դրա համար էլ «մեր երկրի ժողովուրդները երախտագիտության առանձնակի խոսքեր են հղում ռուս ժողովրդին։ Առանց նրա անշահախնդիր, եղբայրական օգնության՝ ոչ մի հանրապետության այսօրվա նվաճումները հնարավոր չէին լինի»։

Եվ մենք իրավամբ կարող ենք ասել, որ այսօր սոցիալիզմի երկրների ժողովուրդներին և առաջավոր մարդկությանը համակած պրոլետարական ինտերնացիոնալիզմի Կ. Մարքսի ձևակերպած վեհ սկզբունքները դառնում են մարդկային փոխհարաբերության սկզբունք, դառնում Կարլ Մարքսի կենդանի հուշարձանը։

---



# ՊԱՀԱՆՋԿՈՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔՆ Է

**Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովի
նախագահ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1982 թ. նոյեմբերյան պլենումը կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս կազմակերպությունների առջև խնդիր դրեց ամրապնդել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունը, ապահովել սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերը, բարձրացնել նրա արդյունավետությունը, հատկապես հասարակական աշխատանքի արդյունավետությունը, կատարելագործել արտադրության կառավարումը։

Նոր, սոցիալիստական կարգապահությունը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, երկնքից չի ընկնում, ոչ էլ բարի ցանկություններից է ծնվում։ Առաջնորդի բնորոշմամբ, սոցիալիստական կարգապահությունը պահպանվում և ամրապնդվում է «Նախ՝ պրոլետարական ավանգարդի գիտակցականությամբ և հեղափոխությանը նրա նվիրվածությամբ, նրա տոկունությամբ, անձնազոհությամբ, հերոսությամբ։ Երկրորդ՝ աշխատավորների ամենալայն մասսայի, առաջին հերթին պրոլետարական, բայց նաև ոչ պրոլետարական աշխատավոր մասսայի հետ կապվելու, մերձենալու, որոշակի չափով, եթե կուզեք, ձուլվելու նրա հմտությամբ։ Երրորդ՝ այդ ավանգարդի կողմից իրագործվող քաղաքական ղեկավարության ճշտությամբ, նրա քաղաքական ստրատեգիայի ու տակտիկայի ճշտությամբ, այն պայմանով, որ ամենալայն մասսաները սեփական փորձով համոզվեն այդ ճշտության մեջ» (ԵԼԺ, հ. 41, էջ 7—8)։

Կարգապահության ամրապնդման, կադրերի պատասխանատվության բարձրացման, կազմակերպվածության և կարգ ու կանոնի հաստատման գործում ժամանակակից կառավարման գիտությունը մեծ տեղ է հատկացնում պահանջկոտությանը, առանց որի կարգապահության ամրապնդման վերաբերյալ մեր կոչերն ու լոզունգները կմնան սոսկ որպես բարի ցանկություններ։

ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումից հետո կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն բարձրացրին պահանջկոտությունը կոմունիստների, կադրերի հանդեպ, որի շնորհիվ զգալիորեն ամրապնդվեց կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունը, բարձրացավ կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, բարելավվեց արտադրության կուսակցական ղեկավարումը։ Այդ ամենն էլ ապահովեց մեր հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման լուրջ հաջողությունները վերջին տարիներին։ Հունվարյան պլենումի որոշումները, որոնք գործողության մարտական ծրագիր դարձան մեր հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս կազմակերպությունների համար,

ծայրեծայր տոգորված էին բարձր պահանջկոտությամբ, գործնականությամբ և գործիմացությամբ։ Բնականաբար, դրանք խոր հետք թողեցին մեր հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում, ունեցան հսկայական ներգործության ուժ և դաստիարակչական նշանակություն։

Այդ պրոցեսը, որը հետզհետե ավելի է ծավալվում ու խորանում, դեռևս ավարտված չէ։ Մենք այժմ էլ գործունեության տարբեր բնագավառներում ունենք լուրջ թերություններ ու վրիպումներ, որոնք հիմնականում ղեկավարման ու կառավարման բնույթի սխալների հետևանք են և որոնց հաղթահարումը պայմանավորված է մեզնով, մեր աշխատանքի որակով։ Գործունեության առանձին օղակներում դեռևս խիստ թույլ է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, լիովին հաղթահարված չեն լիբերալիզմն ու անսկզբունքայնությունը, թողտվությունն ու ամեն ինչ ներելու հոգեբանությունը։

Վ. Ի. Լենինը միամտություն և անհեթեթություն է համարել այն կարծիքը, թե անցումը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ հնարավոր է առանց հարկադրանքի։ Նա նշել է, որ հասարակությունը կազմալուծող տարրերը հաղթահարելու համար միայն պրոպագանդան ու ագիտացիան, միայն մրցության կազմակերպումն ու լավ կազմակերպիչների ընտրությունը բավական չեն, դրա համար հարկավոր են ժամանակ և երկաթե ձեռք։ Պահանջկոտությունն ինչ-որ տեղ հարկադրանք է, սակայն ոչ միայն հարկադրանք։ Կուսակցական առումով պահանջել՝ ամենից առաջ նշանակում է օգնել մարդուն։ Պահանջել՝ նշանակում է մարդկանց ներկայացնել մտածված և հիմնավորված պահանջ-առաջադրանք, նշելով նրա կատարման ուղիներն ու մեթոդները։ Պահանջել՝ նշանակում է խստագույն վերահսկողություն իրականացնել տրված առաջադրանքների կատարման նկատմամբ, ժամանակին վերհանել և հաղթահարել անկարգապահության փաստերը, թույլ չտալով, որպեսզի դրանք վնասակար չափերի հասնեն։ Պահանջել՝ նշանակում է մարդկանց ներկայացնել որոշակի գործողություններ կատարելու պահանջ-հարկադրանք։ Պահանջել՝ նշանակում է պարբերաբար քննադատորեն վերլուծել կատարված աշխատանքը, վերհանել սխալներն ու վրիպումները, օգնել, որպեսզի դրանք արագորեն շտկվեն ու հաղթահարվեն, մարդկանց սովորեցնել դասեր քաղել այդ սխալներից և, վերջապես, պահանջել՝ նշանակում է լիցքավորել, թևավորել մարդկանց, տրամադրել նրանց դեպի ստեղծագործական աշխատանք։

Վ. Ի. Լենինը, լինելով ամուր, նույնիսկ երկաթե կարգապահության կողմնակից, միաժամանակ լիովին բացառում էր մտրակի ու մահակի կարգապահությունը, որն ստորացնում է մարդուն, ոտնահարում նրա արժանապատվությունը։ Նա գտնում էր, որ սոցիալիստական կարգապահությունն ամենից առաջ գիտակցական կարգապահություն է, որն արտահայտվում է բազմաթիվ մարդկանց կամքը մեկի կամքին ենթարկելու մեջ, սակայն միաժամանակ մատնանշում էր, որ այդ ենթարկումն իդեալական գիտակցականության և կարգապահության պայմաններում դիրիժորի մեղմ ղեկավարությունը կարող է հիշեցնել, մինչդեռ ամուր կարգապահության և գիտակցականության բացակայության դեպքում այն կարող է հարկադրանքի խիստ ձևեր ընդունել։

Ղեկավարման արվեստը հենց այդ պահանջկոտության տեղն ու ժամանակը, ձևերն ու մեթոդները ճիշտ որոշելու մեջ է, այն բանի մեջ, թե տվյալ պարագայում ինչն է ավելի արդյունավետ՝ դիրիժորի փոքրիկ փայտի՞կը, թե՞ օրենքով սահմանված հարկադրանքը։ Ավելին, առանց գործիմացության, առանց իրազեկության չկա պահանջկոտություն։ Պահանջողը նախ փաստական ու բարոյական իրավունք պետք է ունենա դրա համար, ապա՝ հստակորեն իմանա, թե ինչ պետք է պահանջվի, ումից և ինչ ժամկետներում։

Սովետական յուրաքանչյուր ղեկավար աշխատողի համար պահանջկոտ լինելը ոչ միայն արտոնված իրավունք է, այլև անմիջական ծառայական ու բարոյական պարտականություն, իսկ այդ գործում թերանալը դատապարտելի ու պատժելի է։

Մեր իրականության մեջ դեռևս քիչ չեն դեպքերը, երբ առանձին ղեկավար աշխատողներ ոչ միայն դրսևորում են թույլ պահանջկոտություն, թողտվություն և հաշտվողականություն թերությունների հանդեպ, այլև դրանք



փորձում են արդարացնել «մարդասիրական» նկատառումներով կամ «զգայուն» վերաբերմունքով։ Մինչդեռ դա մարդասիրության հետ հեռավոր առնչություն անգամ չունի և իրականում կոլեկտիվի, հասարակության շահը առանձին անարժան անհատների շահերին զոհաբերելու անսկզբունք վարքագիծ է։ Չարիքը ներելն ու այն անպատիժ թողնելն ընդհանուր ոչինչ չունեն մարդասիրության հետ։ Այդ ազնիվ ու նվիրական զգացումը չի կարելի արատավորել։

Անսկզբունքայնության ու անպատասխանատվության մթնոլորտում հնարավոր են ամեն տեսակի հիվանդագին պրոցեսներ և անցանկալի երևույթներ։ Վ. Ի. Լենինն ուսուցանում էր, որ եթե մենք ցանկանում ենք բանվորներին ու գյուղացիներին կարգապահություն սովորեցնել, ապա պետք է այն սկսենք մեզնից։ Հետևաբար, կոմունիստը, ղեկավար աշխատողը պետք է ամենից առաջ ծայրաստիճան պահանջկոտ լինի իր անձի ու գործունեության, իր վարքագծի նկատմամբ, ապա նոր՝ ուրիշների։ Կոմունիստի քննախույզ հայացքը պետք է նախ ուղղված լինի դեպի իր հոգու խորքն ու նրա գաղտնարանները, նոր՝ ուրիշների։ Ինչ վերաբերում է ղեկավար աշխատողներին, ապա նրանց պատասխանատվությունը շատ ավելի է։

Վերջին տարիներին պաշտոնական ամբիոններից քանիցս խիստ քննադատական խոսք է ասվել ՀՍՍՀ մթերումների մինիստրության և այդ համակարգի մի շարք ձեռնարկությունների հասցեին՝ թողարկվող համակցված կերի խիստ ցածր որակի, անտնտեսվարության և հանրային ունեցվածքի պահպանության գործում տեղ գտած լուրջ թերությունների համար։

Համակցված կերի դերը անասնապահության զարգացման և մթերատվության բարձրացման գործում խիստ կարևոր է։ Առանց լիարժեք համակցված կերի՝ ժամանակակից անասնապահական համալիրների, թռչնաբուծական ֆաբրիկաների գործունեությունն անհնարին է։ Անասնապահության ինտենսիվացումը, դրա մթերատվության բարձրացումը մեծապես պայմանավորված են այդ գործոնով։ Այդ ամենը լուրջ պատասխանատվություն է դնում մինիստրության, համակցված կերի արտադրության ձեռնարկությունների ղեկավարների վրա, որոնք, սակայն, տարիներ ի վեր անպատասխանատվություն և անկարողություն են դրսևորել այդ կարևոր գործում։

Համակցված կերի արտադրությունը մինիստրության համակարգում կենտրոնացված է մի շարք գործարաններում, որոնցում հաճախ կոպտորեն խախտվում են կերի արտադրության տեխնոլոգիան և նրա ռեցեպտուրան, որի հետևանքով տնտեսություններին սիստեմատիկորեն բաց է թողնվել ցածրորակ կեր, իսկ դրա օգտագործումը շատ դեպքերում ոչ միայն ցանկալի արդյունք չի տվել, այլև հանգեցրել է անասունների թունավորումների ու անկումների։ Ցածրորակ կերի պատճառով տեղի ունեցած անկումները հատկապես մեծ են թռչնաբուծական ֆաբրիկաներում։ Մինիստրության համակարգի մի շարք ձեռնարկություններում չի պահպանվում հումքի, նյութերի, պատրաստի արտադրանքի հաշվառման սահմանված կարգը, որը լայն հնարավորություններ է ստեղծում չարաշահումների և համաժողովրդական ունեցվածքի հափշտակումների ու վատնում-յուրացումների համար։

Վերջերս խոշոր չափերի հասնող հափշտակումներ և պակասորդներ են հայտնաբերվել, մասնավորապես, Երևանի համակցված կերի գործարանում, որի պատճառով գործարանի դիրեկտոր Ֆ. Ղուկասյանը վտարվել է կուսշարքերից և մի քանի այլ աշխատողների հետ կանգնած է քրեական պատասխանատվության առաջ։ Գոյություն ունեցող լուրջ և խոշոր սխալների վրա բազմիցս հրավիրվել է մթերումների մինիստր Օ. Հովակիմյանի, մինիստրության մյուս ղեկավարների և կոլեգիայի ուշադրությունը, սակայն գործն անվերջ պատճառաբանություններից ու անպտուղ խոստումներից այն կողմ չի անցել։

ՀԿԿ Կենտկոմը, վերջերս քննարկելով մինիստրության գործունեության ստուգման արդյունքները, կուսակցական պատասխանատվության ենթարկեց Օ. Հովակիմյանին և ազատեց նրան մինիստրի պարտականություններից։ Աշխատանքից ազատվեց նաև մինիստրի առաջին տեղակալ Լ. Սահակյանը, որն անմիջականորեն զբաղվում էր արտադրության հարցերով։ Ճիշտ է, մարդիկ պատժվեցին անպատասխանատվության ու անսկզբունքայնության համար, սակայն դրանց ծանր հետևանքները հաղթահարելը դեռևս երկար ժամանակ և լուրջ ջանքեր կպահանջի։

Որևէ լուրջ ստուգում, ուսումնասիրություն կատարելիս կուսակցական կազմակերպությունները պետք է այն սկսեն կադրերի, այդ թվում նաև տվյալ բնագավառի ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վիճակի ուսումնասիրությունից, քանի որ առանց սկզբունքային կադ-

*րային քաղաքականության իրականացման անհնար է ձեռնարկել ու իրականացնել որևէ լուրջ գործ։ Կադրային քաղաքականության մեջ հաճախ է պատահում, որ նմանը նմանին է ընտրում։ Սկզբունքային, պատասխանատվության բարձր զգացումով օժտված, գործնական ու բանիմաց մարդը երբեք ասպարեզ չի տա անսկզբունք, անպատասխանատու, անբան աշխատողին։ Ընդհակառակն, վախկոտ, իր աթոռից կառչած, իր ունակությունների ու կարողությունների վրա անվստահ անձանց համար սկզբունքային, համոզված ու հաստատակամ մարդիկ խիստ անցանկալի են, խանգարում են նրանց քաղքենիական անդորրը։ Դրանում մենք մեկ անգամ ես համոզվեցինք մթերումների մինիստրության կադրային քաղաքականությունն ուսումնասիրելիս։ Անկեղծ ասած՝ դա ոչ թե կադրային քաղաքականություն էր, այլ կադրային կամայականություն, շաղախված անսկզբունքայնության, անբարեխղճության և անպատասխանատվության հետ։*

*Երևանի համակցված կերի գործարանում, օրինակ, վերջին 12 տարիներին փոխվել են ձեռնարկության 7 դիրեկտոր և 8 գլխավոր ինժեներ, մինչդեռ գործերի և հատկապես սոցիալիստական սեփականության պահպանման վիճակը տարեցտարի վատացել է։ Այստեղ ոչ միայն նյութապես պատասխանատու, այլև ղեկավար աշխատանքի են առաջ քաշվել դատված կամ վստահություն չներշնչող մարդիկ։ Այդ ամենի հետևանքը, բնական է, աղետաբեր չլինել չէր կարող։ Այսքանից հետո էլ մինիստրության ընկերները փորձում էին համոզել, թե իրենք պայքարել են անպատասխանատու, հանրային ունեցվածքի նկատմամբ ոտնձգություններ կատարող մարդկանց դեմ, նրանցից ոմանց ազատել են աշխատանքից։ Այո՛, դա տեղի է ունեցել, երբ նրանք այլևս անզոր են եղել հաշվի չնստել փաստերի հետ։ Սակայն դա հարցի մի կողմն է, մյուս, թերևս, առավել կարևոր կողմն այն է, թե ովքեր են փոխարինել գնացողներին, ում է վստահվել ասպարեզը։ Քիչ չեն դեպքերը, երբ այն զբաղեցրել են անազնիվ, գործին անտեղյակ մարդիկ, որոնք թույլ են տվել անվայել արարքներ։*

*Ղեկավարման իմաստունությունն ու արվեստը հենց այն է, որ հիվանդագին պրոցեսները, սխալներն ու վրիպումները վեր հանվեն դրանց ձևավորման շրջանում, ժամանակին հաղթահարվեն և ոչ թե ծավալվեն ու խորանան, վնասաբեր չափերի հասնեն։ Նախազգուշական, պրոֆիլակտիկ աշխատանքի իմաստը հենց այդ է։*

*Մթերումների մինիստրության կուսակցական կազմակերպությունը, որի գլխավոր խնդիրն է մինիստրության ապարատի աշխատանքի վերահսկողությունը և կուսակցության ու կառավարության որոշումների կատարման ապահովումը, այդ պարտականությունները կատարել է յուրովի։ Կազմակերպությունը քիչ հարցեր չի քննարկել և վատ որոշումներ չի ընդունել, սակայն խոսքը մնացել է խոսք, իսկ գործը տեղից չի շարժվել։ Այդ դառը և տխուր փաստերից անհրաժեշտ է պատշաճ դասեր քաղել։*

*Կուսակցական պահանջկոտությունը լիովին արդյունավետ է այն ժամանակ, երբ դա սերտորեն համաձայնեցվում, միահյուսվում, զուգորդվում է աշխատանքի լենինյան ոճի, կուսակցական կյանքի լենինյան նորմերի ու սկզբունքների, ողջ կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի համակարգի հետ։*

*Չպետք է մոռանալ նաև, որ պահանջկոտության ուժը ոչ միայն փաստական, այլև բարոյական իրավունքի մեջ է։ Պաշտոնները տրվում են, մինչդեռ հեղինակությունն ու ճանաչումը, վստահությունն ու հավատը, սերն ու հարգանքը և այդ ամենի հանրագումարը՝ դրական հասարակական կարծիքը, ձեռք է բերվում, նվաճվում երկար տարիների ազնիվ ու անբասիր աշխատանքով, օրինակելի ու անաղարտ վարքով։*

*Հայտնի է, թե ինչպիսի սիրով ու ջերմությամբ է արտահայտվել Վ. Ի. Լենինը հեղափոխության իսկական ասպետներից մեկի՝ Յա. Մ. Սվերդլովի բացառիկ կազմակերպչական տաղանդի, մասսաների և կուսակցական ակտիվի շրջանում նրա ունեցած անսահման հեղինակության ու հարգանքի մասին։ Առաջնորդը նշում էր, որ Յա. Մ. Սվերդլովը հիանալի գիտեր կյանքը, անցել էր հեղափոխական պայքարի, բանտերի, աքսորի և ընդհատակյա աշխատանքի բովով, դարձել մասսաների հարգված ու ճանաչված ղեկավար,*



*ձեռք էր բերել հսկայական անառարկելի բարոյական հեղինակություն, որի շնորհիվ բավական էր նրա թեկուզ մի խոսքը, որպեսզի բարդ և կնճռոտ հարցերը լուծվեին անմիջապես և վերջնականորեն, առանց ավելորդ խորհրդակցությունների ու նիստերի։*

*Կոմունիստի, ղեկավարի ուժն ու հմայքը հենց այդ անառարկելի բարոյական հեղինակության մեջ է։ Այդպիսի կոմունիստների ու ղեկավարների ետևից մարդիկ կգնան առանց վարանելու և տարակուսանքի, կգնան վճռականապես ու հաստատակամորեն։ Նրանք նույնիսկ անհնարինը հնարավոր կդարձնեն։ Այս է կոմունիստի, ղեկավարի քաղաքական հասունության չափանիշը։*

*Ժամանակակից ղեկավար աշխատողները, որպես կանոն, ընտրվում են հիմնականում արտադրության և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի փորձառու մասնագետների թվից, սակայն իրական կյանքում նրանցից բոլորը չէ, որ բռնում են «պաշտոնի քննությունը» և դառնում լիարժեք ղեկավարներ։ Երբեմն դա կադրերի ընտրության գոյություն ունեցող սկզբունքներն անտեսելու և սուբյեկտիվիզմի հետևանք է, սակայն ոչ միայն այդ։ Ղեկավար աշխատողների ձախողումների պատճառը հիմնականում ժամանակակից կառավարման գիտության հիմունքներին չտիրապետելն է և անհրաժեշտ գործնական ու բարոյակամային հատկանիշների բացակայությունը։*

*Ղեկավար աշխատանքը լուրջ փորձություն է, լի իրական կյանքի դժվարություններով։ Դրանցից ամենադժվարինը, թերևս, մարդկանց, շրջապատի, աշխատանքային կոլեկտիվի, նրա հասարակական կազմակերպությունների աջակցությունն ու վստահությունը նվաճելն է, որի պայմաններում միայն ղեկավարը, ձեռնարկության, կազմակերպության իրավական, պաշտոնական լիդերը լինելուց բացի, կդառնա նաև կոլեկտիվի իսկական փաստական լիդերը։ Նրա և ենթակաների հարաբերությունների մեջ կստեղծվի առողջ բարոյահոգեբանական, փոխօգնության և փոխադարձ պահանջկոտության մթնոլորտ։*

*Եթե ղեկավարը չբռնեց այդ քննությունը, չկարողացավ նվաճել աշխատանքային կոլեկտիվի վստահությունն ու աջակցությունը, ապա, բնականաբար, նա կամ պետք է զբաղվի անպտուղ վարչարարությամբ, կամ թե պասսիվ-հայեցողական դիրք բռնի, նայած թե ինչպիսին է նրա անհատականությունը։*

*Արտադրություն ասելով չի կարելի հասկանալ միայն արտադրության տեխնիկան ու տեխնոլոգիան, որոնց իմացությունն ինքնին խիստ կարևոր է և պարտադիր։ Արտադրությունն ամենից առաջ սկսվում է մարդուց, աշխատավորից, մեր վիթխարի նյութական ու հոգևոր հարստություն ստեղծողից, մեր գլխավոր արտադրողական ուժից։ Տրամադրել մարդուն լարված ու ստեղծագործական աշխատանքի, խրախուսել, շահագրգռել նրան, բացահայտել նրա ընդունակություններն ու կարողությունները, թևավորել նրան մեծ նպատակներով ու հեռանկարներով— ահա այս է իսկական ղեկավարի պարտքը։ Ահա թե ինչու առանց լուրջ սոցիալական խնդիրների ու պրոբլեմների լուծման այժմ ղեկավարելն ու կառավարելը փաստորեն անհնար է։ Մեր արտադրության հմուտ կազմակերպիչներն այդ լավ են գիտակցում։*

*Ահա մի օրինակ։ Կապիտալ շինարարության վիճակն ամենուրեք խիստ ծանր է, պետական պլանների ու առաջադրանքների թերակատարումները շատ են, սակայն «Երարդշին» տրեստի կոլեկտիվը միշտ էլ հաջողությամբ կատարում և գերակատարում է իր առաջադրանքները, ապահովում շատ կարևոր օբյեկտների գործարկումը սահմանված ժամկետներում և բավարար որակով։ Տրեստն ունի բանվորական ամուր կորիզ, շինարարական արտադրության հմուտ մասնագետներ ու կազմակերպիչներ, երկար տարիների լավ ավանդույթներ, սակայն, այնուամենայնիվ, նրա հաջողությունները շատ բանով են պայմանավորված տրեստի կառավարիչ Լ. Շահբազյանի ակտիվ գործունեությամբ։ Երկու տասնյակ տարուց ավելի է, ինչ նա աշխատում է հիշյալ տրեստում, անցել է շինարարական արտադրության շատ փուլերով, աշխղեկից դարձել է շինվարչության պետ, ապա՝ տրեստի կառավարիչ։ Նա ավանդապահ է, շնորհակալությամբ է հիշում իր ուսուցիչներին, իր հերթին ջանում է զարգացնել ու ընդլայնել լավ ավանդույթները, խորացնել մարդկային հարաբերությունները։*

Կառավարիչը խստապահանջ է իր անձի և ենթակաների նկատմամբ, հետևողական, նպատակասլաց, միշտ հեռանկարը տեսնող և վաղվա օրվա մասին մտածող։ Նա իր հարազատ գործն է համարում ոչ միայն բուն շինարարական արտադրության կազմակերպումն ու կառավարումը, այլև աշխատանքի ու վարձատրության, բանվորների սննդի, նրանց կուլտուր-կենցաղային, բնակարանային և մյուս պայմանների բարելավումը, այն բոլոր հարցերը, որոնք ստեղծում են լավ տրամադրություն և աշխատանքային նպաստավոր մթնոլորտ։

«Երարդշինը» ևս քիչ հոգսեր չունի։ Պահանջվող երկաթբետոնե կառուցվածքները հաճախ մեծ դժվարությամբ են ստացվում, ենթակապալառու կազմակերպությունները երբեմն ձախողում են գործը, որոշ պատվիրատուներ անբարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները, օգնելու փոխարեն երբեմն խանգարում են գործին, նախագծերի որակը միշտ չէ, որ բարձր է լինում։ Քիչ չեն նաև «սեփական» թերությունները։ Կանխված չէ դեռևս բանվորական ուժի հոսքը, կան անբարեխիղճ աշխատանքի փաստեր։ Սակայն այդ դժվարություններն ու թերությունները հաստատակամորեն և հետևողականորեն հաղթահարվում են։ Հաճախ դրանք մեծ լարվածության ու ջանքերի գնով, բայց, այնուամենայնիվ, հաղթահարվում են։

Պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման և կադրերի պատասխանատվության բարձրացման գործում զգալի է մինիստրությունների և գերատեսչությունների ներգերատեսչական վերահսկողության դերը, մինչդեռ այդ վերահսկողության արդյունավետությունը դեռևս շատ ցածր է։ Դա ամենից առաջ պայմանավորված է նրանով, թե ովքեր են ղեկավարում և ուղղություն տալիս վերահսկիչ-վերստուգիչ ստորաբաժանումներին։

Վերջերս հանրապետության ժողվերահսկողության կոմիտեի հետ միասին ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովն ուսումնասիրեց ներգերատեսչական վերահսկողության վիճակը հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունում։ Այդ ուսումնասիրությունների ընթացքում, անկեղծ ասած, մենք ավելի շատ նյութեր քաղեցինք այն մասին, թե ինչպես չպետք է կազմակերպվի ներգերատեսչական վերահսկողությունը և ոչ թե հակառակը։ Վարչության ապարատում ընդգրկված են շուրջ 50 աշխատողներ, սակայն նրանց զգալի մասը չունի համապատասխան մասնագիտական կրթություն և պրակտիկ փորձ, մի քանիսը նույնիսկ նախկինում եղել են դատված, սակայն այդ հանգամանքը խնամքով թաքցրել են և դարձել վերահսկիչներ։ Եվ ահա հետևանքը. տարիների ընթացքում փաստաթղթային ստուգումների պլանները չեն կատարվում, մի շարք գյուղատնտեսական կազմակերպություններ երկար ժամանակ չեն ստուգվել, մինչդեռ մյուսները ստուգվել են մի քանի անգամ։ Փաստաթղթային ստուգումները հաճախ կրել են մակերեսային բնույթ. միշտ չէ, որ բացահայտվել է իրերի փաստական վիճակը, լրջորեն չեն ուսումնասիրվել սխալների ու թերությունների պատճառները, չեն նշվել դրանց հաղթահարման միջոցները, կոմպլեքսային ստուգումներ շատ քիչ են անցկացվել։

Մինիստրության կոլեգիան հազվադեպ է քննարկում ստուգումների արդյունքները, իսկ հաճախ էլ դրանց հիման վրա արձակած հրամաններում սկզբունքային գնահատական չի տալիս կադրերի գործունեությանը։ Թույլ է հրամանների պահանջների կատարման վերահսկողությունը։ Նշված թերություններն ու սխալները հետևանք են այն բանի, որ վերահսկիչ-վերստուգիչ վարչության գործունեությունը մի տեսակ դուրս է մնացել մինիստրության կոլեգիայի ու նրա կուսկազմակերպության տեսադաշտից, իսկ մինիստրի տեղակալ Մ. Բաբաջանյանը, որի վրա է դրված այդ վարչության գործունեության վերահսկողությունը, ինչպես նաև վերահսկիչ-վերստուգիչ վարչության պետ Ա. Եղիկյանը ոչ միայն անբարեխղճություն ու անպատասխանատվություն են դրսևորել ծառայական պարտականությունների կատարման գործում, այլև հաշտվել են վարչության աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների ու սխալների հետ։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, վերջերս քննարկելով ստուգման արդյունքները, մինիստրության ղեկավարների և կոլեգիայի ուշադրությունը հրավիրեց ներգերատեսչական վերահսկողության գործում տեղ գտած թերությունների ու սխալների վրա, պահանջեց նրանցից՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել վերահսկիչ-վերստուգիչ վարչության ապարատը փորձառու և վստահելի աշխատողներով համալրելու և նրա գործունեությունը բարելավելու համար։ Մինիստրության կուսկազմակերպությանը հանձնարարվեց բարձրացնել ապարատի աշխատողների պատասխանատվությունը, ամրապնդել պետական և կատարողական կարգապահությունը։ Աշխատանքում դրսևորած անպատասխանատվության և անսկզբունքայնության համար Կենտկոմի բյուրոն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց Մ. Բաբաջանյանին և Ա.



Եղիկյանին։ Վերջինս միաժամանակ հանվեց վերահսկիչ-վերստուգիչ վարչության պետի պաշտոնից։

Վերահսկողությունը մարդկանց, կոլեկտիվների, կազմակերպությունների կատարած աշխատանքի քննադատական վերլուծությունն է։ Դա քննադատություն է ոչ թե խոսքով, այլ գործով, քննադատություն, որի հիմքում ընկած են կյանքից վերցրած փաստերն ու երևույթները։ Վերահսկողության արդյունավետությունը մեծապես պայմանավորված է այդ ֆունկցիան իրականացնող մարդկանց գործիմացությամբ, բացարձակ օբյեկտիվությամբ, սկզբունքայնությամբ և ամեն կարգի թերությունների նկատմամբ անհաշտվողական վերաբերմունքով։

Վերահսկողությունն իրականացվում է օրենքի ուժով և օրենքով տրված լիազորությունների շրջանակներում, սակայն այն չպետք է մարդկանց, աշխատողներին, կադրերին «խուզի» միևնույն մկրատով։ Օրենքն ու օրինականությունը բոլորի համար են, դա անվիճելի է։ Չպետք է մոռանալ նաև, որ որքան տաղանդավոր է անձը, արտադրության ղեկավարը, այնքան նա մեծ նախաձեռնություն է հանդես բերում աշխատանքում, այնքան նա մեծ կրքոտությամբ է նետվում ստեղծագործական որոնումների՝ հանուն մեծ նպատակների ու առաջընթացի։ Ձևական, ոչ խոհեմ վերահսկողությունն այսպիսի մարդկանց քաջալերելու փոխարեն երբեմն թևաթափ է անում։ Այսպես պատահեց, օրինակ, մի քանի տարի առաջ գյուղատնտեսական արտադրության շնորհալի կազմակերպիչներից մեկի՝ Ն. Սիմոնյանի հետ (Հոկտեմբերյանի շրջան) և հետագայում միայն մեծ ջանքերի գնով հաջողվեց վերականգնել նրա բարի համբավը և կրկին վերադարձնել իր սիրած աշխատանքին, իր հողին ու ջրին։

Ձևականությունն ու անտարբերությունը ծայրաստիճան խորթ են և վնասակար մեր իրականությանը, սակայն դրանք առավել ևս անընդունելի են ու վնասակար վերահսկողության ասպարեզում։

Զարմանալիորեն կենսունակ են բյուրոկրատիզմի և քաշքշուկի բացիլները, դրանց հատուկ է փոփոխվող պայմաններին հարմարվելու ունակությունը։ Ժամանակակից բյուրոկրատն արտաքնապես քիչ է նման իր հռչակավոր նախահորը, ում դասական կերպարը վարպետորեն կերտել են սովետական գրողները։ Նա այժմ ամենևին ծիծաղելի չէ, նա ինչ-որ չափով կիրթ է և ինտելիգենտ, սակայն իր նախահոր նման անպտուղ է և մամռակալած, զգուշավոր է և անգործունյա, առաջվա նման թշնամի է ամեն մի կենդանի գործի ու նախաձեռնությունների։

Թե ինչի կարող է հանգեցնել բյուրոկրատիզմը, ցույց է տալիս հետևյալ կենցաղային աննշան միջադեպը, որը, սակայն, քաշքշուկի հետևանքով բավական մեծ անախորժություններ է պատճառել մարդկանց։

Շամշադինի շրջանի Բերդ ավանի բնակիչ, կենսաթոշակառու Վ. Աթոյանը 1981 թ. հոկտեմբերին դիմում է ավանային սովետի գործկոմի նախագահ Ս. Նավասարդյանին և հայտնում, որ իր հարևանը և որդին՝ Ե. Աթոյանը շինանյութ են թափել ու փակել դեպի իր և մյուս որդիների տունը տանող ճանապարհը։ Ավանային սովետը պաշտոնական գրությամբ Ե. Աթոյանից պահանջում է բացել ճանապարհը, սակայն վերջինս արհամարհում է այդ պահանջը։ Ստացված նոր բողոքների հիման վրա 1981 թ. դեկտեմբերին ավանային սովետն իր որոշմամբ մեղավոր կողմին նորից պարտավորեցնում է բացել ճանապարհը և միաժամանակ այդ մասին տեղյակ է պահում ներքին գործերի շրջանային բաժնին, սակայն այս որոշումը ևս մնում է անկատար։ 1981 թ. դեկտեմբերի վերջին Վ. Աթոյանն ու իր որդիները այդ նույն խնդրանքով դիմում են Շամշադինի շրջանային սովետի գործկոմի նախագահ Ռ. Սառաքելյանին, սակայն այս անգամ ևս հարցը չի լուծվում։ Դիմողները միաժամանակ մեղադրանք են հարուցում ավանային սովետի գործկոմի նախագահի նկատմամբ, գտնելով, որ նա շահադիտական նկատառումներով չի ցանկացել բավարարել իրենց օրինական պահանջը։

Շրջգործկոմի նախագահը, հարցը սահմանված կարգով լուծելու և քաղաքացիներին անհրաժեշտ պարզաբանում տալու փոխարեն, նրանց դիմումն ուղարկում է շրջանային դատախազությանը, որտեղ հարուցում են քրեական գործ՝ ընդդեմ Աթոյանների, որպես զրպարտիչների։ Սկսվում է հարցաքննությունների և առերեսումների մի քաշքշուկ, սակայն որևէ լուրջ մեղադրանք չի հա-

րուցվում, և ՀՍՍՀ դատախազությունը, ուսումնասիրելով բողոքների հիման վրա ստացված այդ քրեական գործը, այն կարճում է։

Վ. Աթոյանն ու իր երկու որդիները դիմել են նաև ՀԿԿ Շամշադինի շրջկոմի ղեկավարներին, որոնք էլ զբաղվել են ճանապարհի բացման հարցով, սակայն այն դարձյալ չի լուծվել։ Ի վերջո, այդ չարաբաստիկ ճանապարհի հարցը լուծվել է վեց ամիս անց, այն էլ հանրապետական մարմինների միջամտությունից հետո։

Այդ տեսական քաշքշուկից ու կամայականություններից վրդովված Աթոյանները կոմունիստին անվայել արարք են կատարել, որի համար նրանք արժանիորեն պատժվել են, մինչդեռ նրանց նկատմամբ անմարդկային վերաբերմունք դրսևորողները մնում են անպատիժ։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը ուսումնասիրեց տեղում այդ «մի կաթիլ մեղրի» պատմությունը և ստուգման արդյունքներն ուղարկեց Շամշադինի կուսշրջկոմին՝ բյուրոկրատիզմի և քաշքշուկի հեղինակներին պատասխանատվության ենթարկելու համար։

Կուսակցական կարգապահության հիմքը ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կատարումն է, կուսակցական կյանքի լենինյան նորմերի և սկզբունքների պահպանումը։ Ընդ որում, ինչպես նշված է ՍՄԿԿ կանոնադրության մեջ, կուսակցությունն ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար, անկախ նրանց ծառայություններից ու գրաված պոստերից։ ՍՄԿԿ XXVI համագումարն ամենայն որոշակիությամբ շեշտեց, որ նրանք, ովքեր անվայել արարք են կատարում, խախտում են ՍՄԿԿ կանոնադրությունը և կուսակցական բարոյականության նորմերը, չպետք է տեղ ունենան մեր շարքերում։ Ոչ մի ներողամտություն և ոչ ոքի հանդեպ, երբ խոսքը վերաբերում է մեր կուսակցության պատվին և հեղինակությանը, նրա շարքերի անաղարտությանը։

Վերջին շրջանում Երևան քաղաքի կուսակցական կազմակերպությունները մի շարք կոմունիստների, սոցիալիստական սեփականության պահպանման գործում հանցավոր անփութություն դրսևորելու համար, վտարել են կուսշարքերից, այդ թվում «Մասիս» արտադրամիավորման մոդելային կոշիկների ֆաբրիկայի դիրեկտոր Ա. Փինաչյանին, դեկորատիվ կտորեղենի ֆաբրիկայի դիրեկտոր Գ. Ադամյանին։ Կաշառակերության համար կուսշարքերից վտարվել են բաղնիքների կոմբինատի դիրեկտոր Ս. Բաբայանը, էլեկտրամեխանիկական տեխնիկումի դիրեկտորի տեղակալ Յու. Ավդալյանը, № 12 երաժշտական դպրոցի դիրեկտոր Մ. Գրիգորյանը, կերամիկական իրերի կոմբինատի արհմիութենական կոմիտեի նախագահ Գ. Գևորգյանը, պոլիտեխնիկական և բժշկական ինստիտուտների դոցենտներ Ռ. Կարապետյանը, Ս. Թումասյանը, Հ. Ղազարյանը։

Չի կարելի չնշել, որ ղեկավար աշխատողների պատասխանատվության հարցերը քննարկելիս մեր առանձին կուսկազմակերպություններ ու կոմիտեներ ասպարեզ են բերում զանազան փաստարկներ ու մեղմացուցիչ հանգամանքներ, երբեմն կատարում այնքան շատ բացառություններ, որ դրանք նոր որակ են տալիս, որին չի կարելի կոչել այլ կերպ, քան անսկզբունքայնություն։ Առավել անհանդուրժելի է, երբ առանձին ղեկավար աշխատողներ, այս կամ այն եղանակով դուրս մնալով կուսակցական վերահսկողությունից, չարաշահում են իրենց պաշտոնական դիրքը, արատավորում կոմունիստի վեհ կոչումը, սակայն մնում են անպատիժ։ Սա արդեն միանգամայն անհանդուրժելի երևույթ է։

Այսպես, 1981 թ. Այրումի պահածոների գործարանում կոպիտ կերպով խախտում են բնակչությունից հումք գնելու կարգը։ Ձեռնարկության դիրեկտոր Ժ. Մամաջանյանի և գլխավոր հաշվապահ Գ. Ղուշչյանի գիտությամբ մեծ գումարի կանխիկ դրամ է տրամադրվում մթերող Ս. Խաչիրովին՝ հումք գնելու նպատակով։ Օգտվելով դրանից՝ գնորդն անմիջապես գործարքի մեջ է մտնում հարևան շրջանի գյուղացիների հետ, նրանցից հոն է գնում, յուրաքանչյուր կիլոգրամին վճարելով 40 կոպեկ, սակայն գործարանին հաշվետվություն է ներկայացնում, որ գնումը կատարվել է 60 կոպեկով, իսկ գումարի տարբերությունը յուրացնում է։ Այդ գործարքը բացահայտվում է վարչական մարմինների կողմից, հարուցվում է քրեական գործ, և Ս. Խաչիրովը դատվում է։ Սակայն Այրումի գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը և Նոյեմբերյանի կուսշրջկոմը, տեղյակ լինելով այդ փաստին, այն չեն դարձրել քննարկման առարկա և չեն պատժել այն ղեկավար աշխատողներին, ովքեր պայմաններ են ստեղծել հանրային



ունեցվածքի հափշտակման համար։ Ստացված ահազանգերի հիման վրա համապատասխան ուսումնասիրություններ կատարվեցին տեղում և ստուգման արդյունքներն ուղարկվեցին ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի քննարկմանը։ Միայն դրանից հետո բոլոր մեղավոր անձինք ենթարկվել են կուսակցական պատասխանատվության։

Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման գործում լուրջ և խոշոր անելիքներ ունեն քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսակցական հանձնաժողովները։ Վերջին տարիներին ՀԿԿ Կենտկոմի և քաղկոմ-շրջկոմների ջանքերի շնորհիվ նկատելիորեն աշխուժացել է հանձնաժողովների գործունեությունը, բարձրացել նրանց դերն ու պատասխանատվությունը կուսակցական վերահսկողության իրականացման գործում։ Կուսհանձնաժողովների ուշադրության կենտրոնում է կոմունիստների կողմից ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման, կուսակցական բարոյականության նորմերի վերահսկողությունը, որը գլխավորն է նրանց աշխատանքում։ Նրանք պարբերաբար ուսումնասիրում են կուսակցության այդ հիմնական փաստաթղթերի պահանջների կատարման վիճակը սկզբնական կուսկազմակերպություններում, արդյունքները քննարկման են ներկայացնում քաղկոմ-շրջկոմներին, պրակտիկ օգնություն են կազմակերպում տեղերում այդ գործում գոյություն ունեցող թերություններն ու սխալները շտկելու նպատակով։

Կուսակցական վերահսկողության իրականացման գործում լուրջ աշխատանքներ են կատարում ՀԿԿ Երևանի, Լենինականի քաղկոմներին, կուսակցության Օրջոնիկիձեի, Մյասնիկյանի, Աշտարակի, Արարատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Հրազդանի, Կալինինոյի, Իջևանի, Գորիսի, Ղափանի շրջկոմներին առընթեր կուսհանձնաժողովները։

ՀԿԿ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի կուսշրջկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը 1982 թ. ուսումնասիրել է սոցիալիստական սեփականության պահպանման վիճակը Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի մի շարք ստորաբաժանումներում։ Պարզվել է, որ այդ համակարգում ժողովրդատնտեսական բեռների փոխադրման ժամանակ կատարվում են հանրային ունեցվածքի հափշտակումներ, երբեմն երկաթուղային տրանսպորտի և պահակային ծառայության աշխատողների մասնակցությամբ, իսկ պաշտոնատար անձինք, ովքեր պետք է անձնական պատասխանատվություն կրեն սոցիալիստական սեփականության պահպանության համար, հաճախ մնում են անպատիժ։ Ինչ խոսք, անպատժելիության այս մթնոլորտը ծնում է անպատասխանատվություն, նյութական և բարոյական մեծ վնաս հասցնում պետական ու հասարակական շահերին։ Օրջոնիկիձեի կուսշրջկոմը, քննարկելով ստուգման արդյունքները, կուսակցական պատասխանատվության է ենթարկել «Երևան» և «Կարմիր բլուր» կայարանների պետեր Խ. Ավետիսյանին և Վ. Մադոյանին, երկաթուղու պահակային ծառայության պետ Մ. Գալստյանին և ուրիշների։

Այդ նույն հանձնաժողովի նախաձեռնությամբ բնակարանների բաշխման կարգի խախտումներ են հայտնաբերվել մետաղական կառուցվածքների գործարանում, որի համար գործարանի դիրեկտոր Գ. Ավետիսյանը, կուսկազմակերպության քարտուղար Ա. Վարդանյանը, արհմիության տեղկոմի նախագահ Ս. Թադևոսյանը ենթարկվել են կուսակցական խիստ պատասխանատվության։

Հանրային ունեցվածքի պահպանության, անտնտեսվարության, պետությանը նյութական վնաս պատճառելու հարցերը պետք է մշտապես գտնվեն կուսակցական վերահսկիչների ուշադրության կենտրոնում։

Կուսհանձնաժողովները լուրջ ուշադրություն են հատկացնում աշխատավորների դիմում-բողոքներում առաջ քաշված հարցերի ուսումնասիրությանը։ Ուրախալի է, որ շատ կոմունիստներ ու քաղաքացիներ իրենց դիմումներն ու բողոքներն ուղղում են անմիջապես կուսհանձնաժողովներին, հաստատ համոզված լինելով, որ այստեղ ուշադրությամբ կունկնդրեն մարդկանց, խորությամբ ու բազմակողմանիորեն կուսումնասիրեն նրանց առաջ քաշած հարցերը, կձգտեն դրանց տալ սպառիչ և հիմնավորված պատասխան։ Քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսհանձնաժողովները 1982 թ. ստացել և համապատասխան ընթացք են տվել 1.094 դիմում-բողոքների, դրանց մի մասի արդյունքները լուրջ քննարկման առարկա են դարձել կուսակցական կոմիտեներում։

ՀԿԿ Գորիսի շրջկոմի կուսհանձնաժողովը, ուսումնասիրելով ստացված ահազանգերը, պարզեց, որ քաղաքի «Միկրոշարժիչ» գործարանում բանվոր-ծառայողների պարգևատրման գումարների բաշխման ժամանակ տեղիք են տրվել անօրինական վճարումների և չարաշահումների, որոնք արդարացի դժգոհություն են առաջացրել կոլեկտիվում։ Ստուգման արդյունքները քննարկվեցին կուսշրջկոմում, գործարանի դիրեկտոր Ս. Ջալյանն ազատվեց աշխատանքից, կուսակցական պատասխանատվության ենթարկվեցին կուսկազմակերպության քարտուղար Շ. Գրիգորյանը և բանկոմի նախագահ Կ. Ավետիսյանը։

Ուսումնասիրությունները միաժամանակ ցույց են տալիս, որ որոշ կուսհանձնաժողովներ բավարար ակտիվություն և նախաձեռնություն չեն դրսևորում աշխատանքում, կուսակցական վերահսկողության հարցերով քիչ են զբաղվում, իսկ որոշ դեպքերում դրսևորում են մակերեսայնություն և կյանքի ճանաչողության բացակայություն։ Իրենց հնարավորություններից ցածր են աշխատում Թումանյանի, Շամշադինի, Արթիկի, Նաիրիի կուսհանձնաժողովները։

Կուսհանձնաժողովների գործունեությունը շատ բանով պայմանավորված է կուսակցական կոմիտեների ուշադրությամբ և աջակցությամբ։ Համապատասխան կուսակցական կոմիտեները պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն կուսհանձնաժողովների գործունեությունը կուսակցության այսօրվա պահանջների ոգով վերակառուցելու համար։ Կուսակցական վերահսկողության իրականացման գործում բացառիկ դեր ունեն կատարելու սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք գործում են բուն աշխատանքային կոլեկտիվի խորքում, բազմաթիվ ու բազմապիսի կապերով կապված են կոմունիստների, աշխատավոր մասսաների հետ։

Կուսակցական վերահսկողության արդյունավետությունը պայմանավորված է այդ վերահսկողությունն իրականացնող բոլոր օղակների հստակ, նպատակասլաց, հետևողական և միասնական գործողություններով։ Այդ վերահսկողության մեջ կուսակցական հանձնաժողովներն ունեն իրենց ուրույն խնդիրներն ու պարտականությունները, որոնք հիմնականում առնչվում են ՍՄԿԿ ծրագրի, կանոնադրության, կուսակցական բարոյականության նորմերի պահանջների կատարման վերահսկողության հետ։ Դա էլ հենց կուսակցական վերահսկողության միջուկն է, նրա առանցքը։ Այդ հարցերն էլ հենց պետք է մշտապես գտնվեն կուսհանձնաժողովների ուշադրության կենտրոնում։

Այժմ աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների, վերահսկողության արդյունավետության բարձրացման միջոցների ակտիվ որոնումների մեջ են նաև ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի աշխատողները։ Նրանց ստուգումներով քիչ մարդիկ չեն պատժվում և ազատվում աշխատանքից, սակայն դա ինքնանպատակ չէ։ Շատ ավելի կարևոր է, թե ովքեր են նրանցից հետո ասպարեզ գալիս և ինչպես է բարելավվում տեղերում իշխող բարոյաքաղաքական մթնոլորտը։ Գաղտնիք չէ, որ կադրերը, հատկապես ղեկավար աշխատողները, աճում և դաստիարակվում են տարիների, նույնիսկ տասնյակ տարիների ընթացքում։ Եվ մենք պետք է կարողանանք ժամանակին վեր հանել և ուղղել նրանց սխալները, որպեսզի դրանք չհասնեն վտանգավոր չափերի և աղետալի հետևանքներ չունենան։

Կուսակցական, պետական, աշխատանքային կարգապահության ամրապնդման համար ամենուրեք ծավալված պայքարը, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը Մոսկվայի հաստոցաշինական գործարանի բանվոր ծառայողների հետ վերջերս կայացած հանդիպման ժամանակ, պետք է հարստացվի խոր բովանդակությամբ, այն պետք է սերտորեն կապվի արտադրական պլանների ու առաջադրանքների կատարման, աշխատանքի կոնկրետ արդյունքների հետ։

Ամուր, գիտակցական կարգապահության լավ երաշխիք է պահանջկոտությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, հիմնարկ-ձեռնարկությունների բոլոր օղակներում։

---

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ՝ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՇԽԱՏԱՏԵՂՈՒՄ

**Ս. Ն. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական
գործարանի հավաքող-փականագործ, ՀՍՍՀ
Գերագույն սովետի դեպուտատ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ պլենումը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատողների ուշադրությունը սևեռեց մի շարք հրատապ ու կարևոր խնդիրների վրա, որոնց լուծումը կարող է և պետք է դառնա հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործնական ռեզերվ։ Պլենումն արծարծեց բոլոր օղակներում կարգ ու կանոնի հաստատման, մարդկանց քաղաքական և աշխատանքային ակտիվության, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձրացման հարցերը, որոնք հավասարապես վերաբերում են նաև մեր ձեռնարկության կոլեկտիվին։ Մեզ համար գործողության ուղեցույց է ընկեր Յու. Վ. Անդրոպովի այն ցուցումը, թե հարկավոր է ավելի վճռականորեն պայքարել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ։

Պլենումից հետո մեզ մոտ՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում ևս, նկատելիորեն բարելավվել է արտադրության կազմակերպումը, ամրապնդվել աշխատանքային, արտադրական ու տեխնոլոգիական կարգապահությունը։ Այդ ամենին մեծապես նպաստեց աշխատանքային և արտադրական կարգապահությանը հսկող շտաբի ստեղծումը։ Այն ղեկավարում է միավորման գլխավոր դիրեկտորը։ Յուրաքանչյուր ուրբաթ տեղի ունեցող շտաբի նիստերում քննարկվում են աշխատողների կարգապահությանը, նրանց հաճախումների կանոնավորմանն առնչվող բազմաթիվ հարցեր։ Այդ մասին հաղորդումներ են տալիս արտադրամասերի ու ծառայությունների պետերը։

Աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդման ասպարեզում շտաբի ակտիվ գործունեության արդյունքներն ակնհայտ են։ Այժմ աշխատանքից ուշացողների թիվը, այլ կարգի խախտումների քանակը զգալի նվազել են։ Միավորման աշխատավորական կոլեկտիվները լայն շարժում են ծավալել՝ «Յուրաքանչյուրի օրինակելի կարգապահությունից— ամբողջ կոլեկտիվի բարձր կազմակերպվածության և արդյունավետ աշխատանքի» նշանաբանով, որը վերջերս արժանացավ ՀԿԿ Լենինյան շրջկոմի բյուրոյի հավանությանը։

Այժմ կուզեի պատմել, թե կոնկրետ մեր բրիգադի մարդիկ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումից հետո ինչպես են վերակառուցում իրենց աշխատանքը, ինչ են անում կարգապահության ամրապնդման, արտադրության արդյունավետ կազմակերպման և պլենումի առաջադրած մյուս խնդիրների լուծման համար։

Ավելի քան երեսնամյա աշխատանքային գործունեության իմ փորձից եկել եմ այն համոզման, որ այնտեղ, որտեղ արտադրական և աշխատանքային կարգապահությունը պատշաճ բարձրության վրա չի գտնվում, խոսք լինել չի կարող նպատակասլաց միջոցառումների, նոր նախաձեռնությունների իրագործման մասին։ Միայն խիստ կարգապահությունը կարող է ջրի երես հանել անբաններին, անգործներին, հասարակական հանրօգուտ աշխատանքից խուսափողներին։

Շուրջ տասը տարի ղեկավարում եմ շարժական էլեկտրակայանների հավաքման արտադրամասի կոլեկտիվը։ Այս բրիգադը կրում է կոմունիստականի բարձր կոչումը, որը մենք ամեն տարի պաշտպանում ենք գործնական աշխատանքով։ Ավանգարդում կոմունիստներն են, սակայն նրանցից ետ չեն մնում և մյուսները։ Դեռևս փետրվարի վերջերին մենք արդեն աշխատում էինք հունիս ամսվա հաշվին, օրվա առաջադրանքները կատարում ենք 115—120 տոկոսով։

Մեր հաջողությունների գաղտնիքը, եթե դա կարելի է գաղտնիք համարել, հանձնարարված գործի նկատմամբ գիտակցական վերաբերմունքն է, բրիգադի անդամների պատասխանատվության զգացումը, գործընկերների նկատմամբ խստապահանջությունը, աշխատանքային, արտադրատեխնոլոգիական ամուր կարգապահությունը։

Աշխատանքի պրոցեսը մեզ մոտ այնպիսին է, որ յուրաքանչյուրից պահանջվում է ամուր կարգապահություն, ուշադրություն և հոգատարություն։ Բրիգադի տղաները հաճույքով են աշխատում՝ խնայելով աշխատանքային յուրաքանչյուր րոպեն։ Արդյունքն էլ, ինչպես արդեն ասացի, բարձր է։ Արտադրամասում գոհ են մեզնից։ Հրաշալի զգացողություն է, երբ մարդ գոհ է իր աշխատանքից, երբ նրանից գոհ են գործընկերները, ղեկավարությունը։ Այդ զգացողությունն են ճաշակում բրիգադի անդամները։

Մենք հավաքում ենք շարժական էլեկտրակայաններ՝ լույսի ու ջերմության աղբյուրներ։ Իսկ դրանց կիրառման ոլորտը շատ լայն է։ Դրանք, ինչպես և ձեռնարկության մակնիշը կրող մյուս արտադրատեսակներն առաքվում են Միության 12 հազար պատվիրատուների հասցեներով, օգտագործվում ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում։ Երկրի շարժական, երկաթուղային, ճանապարհաշինական, կոունկային տեղակայանքները սնուցում են ստանում մեր ձեռնարկությունում պատրաստված գեներատորներից։ Լայն կիրառություն ունեն գործարանում պատրաստված տրանսֆորմատորներն ու տրանսֆորմատորային ենթակայանները։

Մեր՝ էլեկտրամեքենաշինարարներիս, թողարկած արտադրանքը առաքվում է աշխարհի ավելի քան 70 երկրներ։ Բրիգադի տղաները, զգալով իրենց գործի կարևորությունը, դրան վերաբերվում են տիրոջ սրտացավությամբ, անում են ամեն ինչ, որպեսզի տան բարձրորակ արտադրանք։ Անկեղծ ասեմ, աշխատանքի պրոցեսում հաճախ է պատահում, որ ինքս ինձ մտածում եմ, թե ինչ որ տեղ՝ Հեռավոր Հյուսիսում կամ Ղազախստանի անծայրածիր տափաստաններում, ԲԱՄ-ում կամ երկրի որևէ այլ անկյունում, մարդիկ սպասում են քո արտադրանքին, քո արարած էլեկտրակայանին, որ լույս ու ջերմություն պիտի տա նրանց։ Եվ մտածում ես, որ այդ մարդիկ էլ քեզ նման հոգսեր, անելիքներ ունեն, որոնց իրականացման համար խիստ անհրաժեշտ են այդ էլեկտրակայանները։ Հետևապես, հապաղել չի կարելի։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում նշվեց. «Այժմ հատկապես կարևոր է ու հարկավոր, որ յուրաքանչյուր աշխատող հասկանա, որ պետական պլանի կատարումը կախված է նաև իր աշխատանքային ներդրումից»։ Ես բարձրագոչ ֆրազներ չեմ սիրում։ Բանվոր մարդը լավ է հասկանում բրիգադավարին, վարպետին, եթե նա կարողանում է զրույցի մեջ գտնել հասարակ բառեր, որոնք օգնում են մարդկանց՝ լավ գիտակցելու և զգալու այն ուղղակի, անմիջական կապը, որը կա կուսակցության տնտեսական քաղաքականության և արտադրամասում, հենց հաստոցի մոտ իր կատարած աշխատանքի միջև։ Մեր բրիգադի տղաները՝ Մ. Փափազյանը, Վ. Տերտերյանը, Ս. Արաբյանը և



մյուսները լավ են հասկանում դա։ Նրանք քաջ գիտակցում են, որ կարգապահ լինել՝ չի նշանակում միայն ժամանակին գործի գալ ու գնալ, թեև դա էլ կարևոր է, այլ միաժամանակ մտածում են՝ ինչպես անել, որ աշխատօրը լիարյուն անցնի, մտածում են ինչ արեցին, ինչ տվեցին այդ օրը մարդկանց, երկրին։ Այնպես որ պետք է կարողանալ մարդուն դաստիարակել աշխատանքային յուրաքանչյուր օրը, րոպեն արդյունավետ օգտագործելու ոգով, երբեք չպետք է մոռանալ, որ երկրի հզորությունն ու հարստությունը, իրոք, պայմանավորված են յուրաքանչյուրիս ներդրումով։ Սա չպետք է դառնա պահանջի կատարում, այլ պարտքի։ Հենց այդպես են մոտենում գործին մեր բրիգադի անդամները։

Այսօր կարևոր է ոչ միայն այն, թե ինչ մասնագիտություն ունես և ինչպես ես կատարում պարտականություններդ, այլև այն, թե ում հետ ես աշխատում, ով է քո աշխատանքային ընկերը, ինչ են նրա մասին մտածում շրջապատի մարդիկ։ Աշխատելով բրիգադային եղանակով՝ մենք ծավալում ենք յուրատեսակ մրցակցություն՝ սեփական կարողությունները, հմտությունները, ունակություններն առավել լավ դրսևորելու համար, իսկ դա մի ճանապարհ է, որ անձին հասցնում է կատարելության, նրա մեջ վառ պահում հասարակությանը ծառայելու ձգտումը։ Մեր բրիգադում միշտ էլ բարձր են եղել փոխադարձ խստապահանջությունը, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը։ Տարիներ շարունակ բրիգադի սոցիալիստական պարտավորություններում մի այսպիսի կետ կա. «...Ամուր հիմքերի վրա դնել աշխատանքային և արտադրական կարգապահությունը, արդյունավետ օգտագործել աշխատաժամանակը»։

Այո՛, մեր կոլեկտիվում անկարգների, աշխատանքային ընդհանուր ռիթմից շեղվողների նկատմամբ ստեղծված է անհանդուրժողականության մթնոլորտ։ Երեք տարի առաջ էր, սովորական օրերից մեկը։ Շատ կարևոր ու օպերատիվ առաջադրանք էինք ստացել։ Բրիգադի անդամ Վ. Տերտերյանը, թեև նախօրոք տեղյակ էր այդ մասին, բայց ինքն իրեն հանգիստ էր տվել։ Ճիշտ է, տղաներն այդ օրը նեղվեցին, բայց առաջադրանքը կատարվեց։ Եվ, ի՞նչ եք կարծում, մենք նրան ներեցի՞նք։ Ո՛չ։ Բրիգադը նրան մի լավ դաս տվեց, իսկ ամսվա վերջում էլ զրկեց պարգևից։ Այսօր նա արտադրամասի լավագույն աշխատողներից է։

Յուրաքանչյուր մարդ պետք է իմանա, որ կարգապահական խախտմանը հաջորդում է պատիժը։ Դա է պահանջում արտադրության շահը, առավել ևս այսօր։ Բայց և այնպես կկամենայի ասել, որ ես, օրինակ, այնքան էլ կողմնակից չեմ տույժի ծայրահեղ միջոցների։ Չեմ հավատում, որ կոլեկտիվը չկարողանա իր կամքը թելադրել մի քանի կարգազանցների՝ օգտագործելով նյութական ու բարոյական միջոցների ներգործման ողջ զինանոցը։ Եվ դա համոզված ասում եմ մեր կոլեկտիվի փորձից։ Մոսկվայի հաստոցաշինարարների հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ունեցած հանդիպման ժամանակ միանգամայն ճիշտ ասվեց, որ կարգապահության ամրապնդման գործում վճռական դերը պատկանում է կոլեկտիվին։ Երբ կոլեկտիվում հասարակական կարծիք ստեղծվի աշխատանքային կարգապահության խախտման յուրաքանչյուր դեպքի շուրջ, դա կլինի ամենաուժեղ միջոցը, ավելի ուժեղ, քան տուժարկման այս կամ այն ձևը։

Մեր բրիգադի տղաներին միավորում է ոչ միայն աշխատանքը, այլև նպատակների ու ձգտումների ընդհանրությունը և, իհարկե, միմյանց ամեն հարցում օգնելու պատրաստակամությունը։ Օրվա ընթացքում մարդուն կամա թե ակամա հարկ է լինում առնչվելու տարբեր բնույթի հարցերի ու հոգսերի հետ, և դրանք առանձին-առանձին յուրովի իրենց կնիքն են թողնում նրա տրամադրության վրա։ Եղել են դեպքեր, երբ աշխատանքի ավարտից հետո գործընկերներով ուրախ տրամադրությամբ բաժանվել ենք, բայց հաջորդ օրը առավոտյան որևէ մեկը գործի է եկել անտրամադիր։ Նման դեպքերում հետաքրքրվել ենք, պարզել պատճառները, եթե հարկ է եղել՝ օգնել, ոգևորել ենք, վերականգնել գործարար տրամադրությունը։

Կյանք է, ինչ խոսք, ոլորապտույտներ ու զիգզագներ են լինում։ Ստացվում է այսպես. աշխատանքի վայրում գործընկերդ լավ է աշխատում, լավ է

զգում իրեն, բայց ընտանեկան մթնոլորտն այն չէ։ Հարց է ծագում. միջամտե՞լ, արդյոք, ընտանեկան հարցերին, թե ոչ։ Մենք՝ բրիգադի անդամներս, սերտ կապված ենք նաև ընտանիքներով և նման դեպքերում հանդես ենք գալիս բարի խորհրդատուի դերում։

Հիշում եմ մի դեպք՝ կապված բրիգադի անդամներից մեկի հետ։ Հասկանալի պատճառներով անունը չեմ նշում և մանրամասների մեջ չեմ խորանում։ Բրիգադի անդամներով մենք կարողացանք բարենպաստ մթնոլորտ ստեղծել մեր ընկերոջ համար՝ դուրս գալու բարդ իրավիճակից։ Ամեն ինչ կարգավորվեց ու խաղաղվեց։ Եվ այսօր էլ երբեմն արդեն ինքն է կատակով հիշեցնում անցած այդ պատմությունը, որը կարող էր ճակատագրական լինել նրա կյանքում, եթե չհասներ միջամտությունը։ Ես այս մասին խոսում եմ այն առումով, որ կոլեկտիվի խելացի միջամտությունը միշտ էլ կարող է օգտակար լինել նրա անդամների, ինչպես արտադրական-հասարակական, այնպես էլ անձնական կյանքում։

Այժմ մի քանի խոսք բանվորական աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման մասին։ Կարգապահության ամրապնդումն ու աշխատաժամանակի արդյունավետ օգտագործումը մեծապես պայմանավորված են արտադրության լավ պայմանների ստեղծմամբ, հստակ պլանավորմամբ, անխափան կատարվող նյութատեխնիկական մատակարարմամբ, սարքավորումների կարգավորվածությամբ։ Գաղտնիք չէ, որ աշխատաժամանակի կորուստները հաճախ հետևանք են արտադրության վատ նախապատրաստման ու կազմակերպման, հերթափոխային արտադրական առաջադրանքների ցածրորակ կազմման, դրանց նկատմամբ թույլ վերահսկողության։ Կարևոր է, որպեսզի վարպետները, տեխնոլոգները, արտադրամասերի պետերն ապահովեն պլանի կատարման նորմալ պայմաններ, որպեսզի մենք՝ բանվորներս, կարողանանք աշխատել առանց նյարդայնանալու, դես-դեն ընկնելու։ Դրա համար անհրաժեշտ է նաև, որ հարակից արտադրությունները ժամանակին և որակով տան կոմպլեկտավորվող դետալներն ու հանգույցները։ Արդյունավետ աշխատանքի համար միայն բանվորի պատրաստակամությունն ու կազմակերպվածությունը դեռ քիչ են, թեև դրանք էլ շատ կարևոր են։ Բանվորական բոպեից հնարավոր չէ բարձր արդյունք սպասել, եթե կոմպլեկտավորող դետալները կամ հումքը ժամանակին չեն հասցվում։ Այնտեղ, որտեղ լավ է կազմակերպված պայքարը աշխատանքային րոպեն խնայողաբար օգտագործելու համար, որտեղ մշտապես մտահոգվում են նյութական ռեսուրսների պահպանմամբ, հազվադեպ են լինում կարգապահության խախտման դեպքեր։

Մեր գործարանը հումք ու համապատասխան մեքենամասեր է ստանում Միության տարբեր ձեռնարկություններից։ Օրինակ, Մոսկվայից ու Լենինգրադից ստանում ենք գունավոր մետաղների գլանվածք, միայն Չերեպովեցի մետալուրգիական գործարանից մեր հասցեով տարեկան ուղարկվում է հինգ հազար տոննայից ավելի սև մետաղ, Վոլգոգրադից, Չելյաբինսկից և Բառնաուլից ստանում ենք տասնյակ հազարավոր շարժիչներ։ Տարեկան տասը հազար տոննա մետաղ է ստացվում Մագնիտոգորսկից, ութ հազար տոննա տրանսֆորմատորային պողպատ՝ Սվերդլովսկից և այլն։ Հասկանալի է, թե ձեռնարկության արտադրական օղակների անխափան աշխատանքն ապահովելու համար որքա՜ն շատ բան է պայմանավորված մատակարարող այդ կազմակերպությունների հստակ աշխատանքով։

Եղել են դեպքեր, որ գործուղվել եմ մատակարարող կազմակերպություններ՝ որպես ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, միջամտելու և անհրաժեշտ նյութերի առաքման գործն արագացնելու համար։ Այսպես, միայն անցյալ տարի երկու անգամ եղել եմ նման գործուղման մեջ՝ Չերեպովեցի մետալուրգիական գործարանից թիթեղի և Գորկու ավտոգործարանից անհրաժեշտ շարժիչների առաքումն արագացնելու համար։ Կոնկրետ մեր արտադրամասում անցյալ տարի հաճախ են եղել պարապուրդներ՝ շարժիչներ, լիսեռի վզիկներ, անգամ հեղյուսներ ու մանեկներ չլինելու պատճառով։ Ժամանակին հումք կամ



համապատասխան նախապատրաստվածքներ չստանալով՝ մենք էլ մեր հերթին չենք կարողանում ժամանակին պատրաստել ու մեր պատվիրատուներին առաքել իրենց անհրաժեշտ էլեկտրական մեքենաներն ու ագրեգատները։ Եվ, այդպես, նա էլ՝ մեկ ուրիշի։

Եղել են դեպքեր, որ բավականին մեծ ուշացումով՝ միայն ամսվա վերջերին ենք ստացել նախապատրաստական նյութերը։ Եվ որպեսզի կարողանանք այդ ընթացքում հասցնել ողջ ամսվա պլաններն ու պատվիրատուների պատվերները, ստիպված շտապել ենք։ Իսկ թե ինչի է հանգեցնում գրոհայնությունը, լավ գիտե արտադրության մարդը։ Ինչևիցե, վատ մատակարարումը սպանում է նախաձեռնությունը, ձախողում ծրագիրը, մարում աշխատանքային խանդավառությունը։

Մի քանի խոսք խնայողության մասին, որն այնքա՜ն կարևորվեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում։ Խնայողության համար վճռական պայքար է ծավալվում բոլոր արտադրամասերում, տեղամասերում, բրիգադներում։ Մեր բրիգադում նույնպես շատ սուր է դրված այդ հարցը։ Վ. Ի. Լենինի այն հայտնի խոսքը, թե՝ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ հանդես է գալիս շարքային բանվորի անձնուրաց հոգատարությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման, յուրաքանչյուր փութ հացի, ածխի, երկաթի և այլ արդյունքների պահպանման նկատմամբ», գրված է կտավին ու փակցված տեղամասի պատին։ Այն անընդհատ մեզ հիշեցնում է՝ խնայողաբար վերաբերվել եղածին։ Բրիգադի տղաների նշանաբանն է դարձել՝ պահեստից ստացած ամեն մի դետալ, նույնիսկ հասարակ մի փոքրիկ պտուտակ պարտադիր կերպով իր համարակալված համապատասխան տեղը գտնի հավաքվող էլեկտրական մեքենայի վրա։ Ես հասարակ պտուտակ ասացի։ Բայց երբ ինքս ինձ մտածում ու մոտավոր հաշվարկ եմ անում, թե այն պատրաստելու համար հանքավայրից մինչև մեզ հասնելը որքա՜ն աշխատաժամանակ է ծախսվում, ապա հասկանալի է դառնում, որ այնքան էլ հասարակ չէ։ Իսկ եթե ընդհանրացնենք երկրի մասշտաբո՞վ... Հասարակ այդ պտուտակից միլիոններ կարող են տնտեսվել։ Ու կոլեկտիվն անում է ամեն ինչ՝ եղած ռեսուրսները խնայողաբար օգտագործելու համար։

Որպես արտադրամասի կուսկազմակերպության քարտուղար, ուզում եմ մի քանի խոսք ասել մեր կոմունիստների մասին, որոնք տոն են տալիս կոլեկտիվի հաջողություններին, քայլում մրցության առաջավորների ավանգարդում։ Արտադրամասի բոլոր 32 կոմունիստներն օրինակ են ծառայում կոլեկտիվի համար՝ իրենց արտադրական բարձր ցուցանիշներով, ձեռներեցությամբ ու նախաձեռնությամբ, հասարակական-քաղաքական ակտիվությամբ։ Նրանցից վարպետ-դաստիարակներ Գ. Պետրոսյանը, Ս. Սառիկյանը, Ա. Մարգարյանն այստեղ են արտադրամասի հիմնադրման օրից։ Արտադրամասի կոլեկտիվի անդամներից շատերը ժամանակին եղել են նրանց սաները, որոնք այսոր իրենք են դարձել գործի հմուտ մասնագետներ, վարպետ-դաստիարակներ։ Այո՛, շատերին են նրանք սովորեցրել մասնագիտություն, պատրաստել իսկական փոխարինողներ, իսկ արժանիներին երաշխավորել են՝ համալրելու կուսակցության շարքերը։ 1961 թվականն էր, երբ արտադրամասի հնագույն աշխատող կոմունիստ Գ. Պետրոսյանի երաշխավորությամբ խառատ Ֆ. Ղազարյանն ընդունվեց ՍՄԿԿ շարքերը։ Գործին զուգահեռ սովորեց, ավարտեց մեքենաշինական տեխնիկումը։ Տարիների հետ հմտացավ գործում։ Այսօր ինքն է դարձել վարպետ-դաստիարակ իր նախկին տասից ավելի սաների համար։ Ու ինչպես ինքը՝ Ֆ. Ղազարյանն է այսօր վարպետ Գ. Պետրոսյանի կողքին, այնպես էլ նրա հետ աշխատում են իր նախկին աշակերտներ, կոմունիստներ Ս. Հովհաննիսյանը, Ս. Արաքյանը և ուրիշներ, որոնք օրվա առաջադրանքները կատարում են 115—120 տոկոսով։ Լավ աշխատելու հետ մեկտեղ վարպետ Ֆ. Ղազարյանը միաժամանակ կուսակցական ու հասարակական ակտիվ աշխատող է, գործարանի լավագույն ագիտատորներից։

Կուսբյուրոն ակտիվ աշխատանք է տանում կոլեկտիվի շրջանում, ձգտում շարժական էլեկտրակայաններ ստեղծողներին հուզող շատ հարցեր դարձնել քննարկման առարկա, գտնել դրանց լուծումը։ Մեր կոմունիստները ևս անչափ կարևորում են կարգապահության ամրապնդման, արտադրության հստակ կազմակերպման հարցերը։ Դրա վկայությունը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումների լույսի ներքո արտադրամասի կուսկազմակերպության խնդիրների գործարար քննարկումն էր։ Ժողովում կոմունիստները հանդես եկան կարգապահության ամրապնդմանը, գործերի հետագա բարելավմանն ուղղված կոնկրետ առաջարկություններով ու դիտողություններով։

Մեծ է բանվոր մարդու, բանվոր դասակարգի պատասխանատվությունը։ Եվ մենք ձգտում ենք արդարացնել վստահությունը մեր նկատմամբ, աշխատել սիրով ու նվիրվածությամբ։ Չէ՞ որ աշխատում ու ստեղծում ենք մեզ համար։ Ու միայն աշխատանքով է գնահատվում մարդը սոցիալիստական հասարակարգում։ Մեզանից յուրաքանչյուրը դրանում համոզվել է սեփական փորձով։ Իմ համեստ վաստակի համար մեր կոլեկտիվն ինձ բազմիցս արժանացրել է ամենաբարձր պատիվների. արտադրամասի կոմունիստներն ահա արդեն որերորդ անգամ ինձ ընտրում են կուսբյուրոյի քարտուղար, երկու անգամ ընտրվել եմ Երևանի քաղաքային սովետի դեպուտատ, այժմ էլ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ եմ։ Պարգևատրվել եմ Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով։

Աշխատավոր մարդու առջև մեզ մոտ բոլոր ճանապարհները բաց են։ Սովորե՞լ ես ուզում, առանց արտադրությունից կտրվելու սովորիր, ընդլայնիր մտահորիզոնդ, հարստացրու գիտելիքներդ... Իսկ որքա՞ն բան է արվում մարդու առողջության համար։ Ինչո՞վ վարձահատույց լինել։ Իհարկե, բարեխիղճ, նվիրված աշխատանքով՝ ի բարօրություն մեր հայրենիքի։ Աշխատել նվիրումով, ազնվորեն, դրսևորել գիտակցական կարգապահություն— ահա մեր պարտքը, մեր պարտականությունը։

---



# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԼԾԱԿԸ

**ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու
**Ա. Ս. ԳՅՈՒՐՋՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ մշակել և իրականացնում է ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու միջոցառումների ծրագիր, որը նախատեսում է կատարելագործել պլանավորումը և տնտեսական խթանումը, կառավարման կազմակերպական կառուցվածքը և տեխնոլոգիան։ Այդ ծրագրի գլխավոր ուղղությունը համապետական, միջճյուղային և տերիտորիալ խոշոր պրոբլեմների կոմպլեքսային լուծման մեթոդների կատարելագործումն է, որը ենթադրում է պլանավորման և կառավարման ծրագրանպատակային մեթոդի հետագա զարգացում։

Ծրագրանպատակային մոտեցումն ապահովում է հասարակական զարգացման կարևորագույն խնդիրների առաջնահերթ լուծումը՝ ռեսուրսները պլանաչափորեն դրանց վրա կենտրոնացնելու միջոցով, նպաստում է ընդունվող պլանային լուծումների բազմակողմանի հիմնավորմանը, նպատակների և դրանց հասնելու ժամկետների առավել լրիվ համապատասխանեցմանը նյութական ու ֆինանսական հնարավորությունների հետ։ Կոմպլեքսային ժողովրդատնտեսական ծրագրերը հասարակական զարգացման կարևորագույն նպատակների իրականացման համար միջոցների ինտեգրացման գործիք են։ Դրանց մշակումը, որպես ժողովրդական տնտեսության զարգացման պլանների ձևավորման պրոցեսի բաղկացուցիչ մաս, հնարավորություն է ընձեռում կոնկրետացնելու սոցիալ-տնտեսական զարգացման նպատակները և դրանցից բխող ժողովրդական տնտեսության ճյուղերի ու ոլորտների զարգացման խնդիրները։ Դրանք են՝ նպատակներին հասնելու արդյունավետ միջոցների ընտրությունը ծրագրերի իրականացման եղանակների տարբերակային վերլուծությամբ՝ անհրաժեշտ ծախսումները ժողովրդական տնտեսության ռեսուրսների հետ համադրելու հիման վրա, տնտեսապես առավել արդյունավետ միջոցների զուգակցումը ճյուղերի զարգացման շահերի հետ, ժողովրդատնտեսական պրոբլեմները լուծելիս պլանային միջգերատեսչական կոորդինացման ապահովումը։

Կոմպլեքսային ծրագրերը ծավալով ու բովանդակությամբ չեն սպառում հեռանկարային ժողովրդատնտեսական պլանները ո՛չ սոցիալ-տնտեսական համակարգի զարգացման նպատակների ամբողջության, ո՛չ էլ օգտագործվող ռեսուրսների ու մշակվող պլանային առաջադրանքների առումով։ Դրանք պլանների նպատակային կողմնորոշումը խորացնելու, տնտեսական և կուլտուրա-

կան շինարարության առավել կարևոր խնդիրների լուծման համար առաջնահերթ պայմաններ ստեղծելու արդյունավետ միջոց են: Ըստ որում ծրագրանպատակային պլանավորումը չի դիտվում որպես կառավարման ճյուղային ու տերիտորիալ սկզբունքների այլընտրանք. այն լոկ լրացնում է դրանք, կառավարման համակարգին հաղորդելով որոշակի ճկունություն:

Նշված մեթոդի զարգացման գործում որոշիչ դեր խաղաց տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հայտնի որոշումը, որտեղ ուղղակի խնդիր է դրվում՝ մշակել ու իրականացնել կոմպլեքսային նպատակային ծրագրեր՝ տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների շրջանակներում:

Այդպիսի ծրագրերի մշակման նախապատրաստական աշխատանքը մեզ մոտ սկսվել է դեռևս անցած հնգամյակում: Հայաստանի գիտությունների ակադեմիան, մինիստրություններն ու գերատեսչությունները սահմանեցին միջճյուղային, տերիտորիալ այն պրոբլեմների շրջանակը, որոնք ենթակա են ծրագրային մշակման, և որոնք առավել էականորեն են ազդում հանրապետության էկոնոմիկայի զարգացման վրա, հնարավորություն են ընձեռում լուծելու մի քանի առավել սուր սոցիալական հարցեր: Հանրապետության կոմպլեքսային ծրագրերի ցանկը կազմվել է ՍՄԿԿ XXVI համագումարի և ՀԿԿ XXVII համագումարի որոշումների հիման վրա: Առավել հրատապ են ճանաչված հետևյալ ծրագրերը.

**Էներգետիկայի զարգացման կոմպլեքսային ծրագիրը՝ հաշվի առնելով հանրապետության հելիո և գեոպոտենցիալը:** Հայկական ՍՍՀ-ն չունի ջերմային էներգետիկ ռեսուրսներ, իսկ սահմանափակ ջրային ռեսուրսները լիովին չեն ապահովում ժողովրդական տնտեսության աճած պահանջմունքները նույնիսկ ջրասպառման բնագավառում: Այդ պայմաններում հրատապ է դառնում գեոթերմիկ և հելիոթերմիկ էներգետիկ պոտենցիալի օգտագործման պրոբլեմը: Երկրի խորքային ջերմության և արևի էներգիայի օգտագործման խնդիրը շատ կարևոր է հանրապետության համար, քանի որ այստեղ առկա են ստորգետնյա ջերմության զգալի պոտենցիալ և բարենպաստ պայմաններ գրեթե տարին բոլոր արեգակնային էներգիան օգտագործելու համար:

**Գունավոր մետաղների կորզման ավելացումը և հանքերի կոմպլեքսային օգտագործումը:** Այս պրոբլեմը ևս հրատապ է մեր հանրապետության համար, որը հարուստ է գունավոր և այլ մետաղների պաշարներով: Հարստացուցիչ ֆաբրիկաներում դեռևս անբավարար է մետաղի հանքաքարերից հիմնական և հատկապես ուղեկից օգտակար բաղադրամասերի կորզման պրոցեսը: Կորուստներ են լինում խարամների լցակույտերում, ինչպես նաև գազերի ու փոշու հետ: Պղնձամոլիբդենային հանքաքարերի հարստացման ու դրանց կոմպլեքսային օգտագործման բնագավառում հանրապետությունում կատարվող հետազոտական աշխատանքները շատ հեռանկարային են:

**Տեղական ոչ հանքային նյութերի կոմպլեքսային օգտագործումը:** Մեր հանրապետությունն աչքի է ընկնում բնական շինանյութերի հարուստ պաշարներով ու բազմազանությամբ: Առանձնապես արժեքավոր են ու մեծ տարածում ունեն հրաբխային ծագում ունեցող տուֆը, բազալտը, խարամը, պեռլիտը, դիատոմիտը, գրանիտը և այլն, որոնք օգտագործվում են ոչ միայն որպես շինանյութ, այլև մի շարք մշակումների շնորհիվ հումք են դառնում գործվածքների, մեքենամասերի, զտիչ նյութերի արտադրության համար: Ծրագրով հետազոտություններ են նախատեսվում տուֆի հանքավայրերի կոմպլեքսային վերամշակման, նստվածքային և հրաբխային ծագում ունեցող բնական քարից բլոկների պատրաստման համար հորատանցման օպերացիոն մեքենայի մշակման նպատակով: Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում պեռլիտային, դիատոմիտային և բազալտային հանքավայրերի արդյունահանության և կոմպլեքսային օգտագործման արդյունավետ տեխնոլոգիայի մշակումը:

**Արարատյան դաշտավայրի աղակալած հողերի յուրացումը:** Արարատյան արգավանդ դաշտավայրում, որը Հայկական ՍՍՀ-ի գլխավոր շտեմարանն է, կան շուրջ 30 հազար հեկտար աղուտ-ալկալի հողեր, որոնք գործնականում



չեն օգտագործվում: Այդ հողերի յուրացման պրոբլեմը գտնվում է գիտական հաստատությունների ուշադրության կենտրոնում, և դրա լուծման գործում կան որոշակի հաջողություններ: Ագրոքիմիայի և հողագիտության գիտահետազոտական ինստիտուտը մշակել է աղակալած հողերի յուրացման տեխնոլոգիան, իսկ «Հայգյուղտնտմեխանիզացիա» գիտաարտադրական միավորումը՝ աղուտների յուրացման համար մեքենաների մի համակարգ, ստեղծվել է հատուկ մելիորատիվ տրեստ, որը զբաղվելու է աղուտների յուրացման աշխատանքներով:

**Շինարարական-մոնտաժային աշխատանքների հետագա ինդուստրացման կոմպլեքսային ծրագիրը:** Հանրապետության հրատապ սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծումը զգալի չափով պայմանավորված է կապիտալ շինարարությամբ: Շինարարական-մոնտաժային աշխատանքների մեծ ծավալները հրամայաբար պահանջում են ինդուստրացնել շինարարությունը, գիտության ու տեխնիկայի նվաճումները լայնորեն արմատավորել պրակտիկայում:

**Ձեռքի աշխատանքի մեքենայացումը հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերում:** Այդ ծրագրի անհրաժեշտությունը թելադրվում է հանրային արտադրության արդյունավետության բարձրացմամբ, քանի որ հանրապետության արդյունաբերության մեջ մեքենայացման մակարդակը կազմում է 45 տոկոս, առավել մեծ է ձեռքի աշխատանքի բաժինը օժանդակ արտադրության մեջ:

**Շրջակա միջավայրի պահպանությունը և բնական ռեսուրսների, այդ թվում և Սևանի ավազանի ռացիոնալ օգտագործումը:** Հանրային արտադրության հարաճուն տեմպերը Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության ճյուղերում առաջին պլանի վրա են դնում շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմը: Վերջին տարիներին մեզ մոտ որոշակի աշխատանք է կատարվել այդ ասպարեզում, սակայն իրականացվող միջոցառումները կոմպլեքսային չեն և առայժմ ակնհայտորեն անբավարար են: Այս ծրագրում առանձնահատուկ տեղ ունի Սևանա լճի պրոբլեմը: «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանության և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1978 թվականի որոշումը մեկ անգամ ևս շեշտում է այդ պրոբլեմի կարևորությունը և աշխատավորական կոլեկտիվներին նպատակամղում կատարելու ծրագրով նախատեսված կոմպլեքսային միջոցառումները:

**Կառավարման ավտոմատացված համակարգերի մշակումը և արմատավորումը ժողովրդական տնտեսության մեջ:** Այդ աշխատանքները հանրապետությունում տարվում են 60-ական թվականների վերջերից: Առկա են որոշակի հաջողություններ. գործում են ժողովրդական տնտեսության ճյուղերի կառավարման համակարգեր, քաղաքային տնտեսության կառավարման համակարգ և այլն: Այժմ խնդիր է դրվում՝ կառավարման ավտոմատացված մասնակի համակարգերը ինտեգրացնել և միավորել ժողովրդական տնտեսության կառավարման հանրապետական ավտոմատացված համակարգի մեջ:

**Արտադրանքի որակի և արտադրության արդյունավետության կառավարման կոմպլեքսային համակարգը:** Տասներորդ հնգամյակում հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել արտադրանքի որակի և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման մարզում: Տվյալ ծրագրի նպատակն է՝ հենվելով եղած նվաճումների վրա, հանրային արտադրության բոլոր ոլորտներում հասնել արտադրանքի որակի էական բարձրացման:

Նպատակային կոմպլեքսային ծրագրերը բխում են ժողովրդատնտեսական պլանի ճյուղային և տերիտորիալ սկզբունքների միասնությունից: Այդ միասնությունը դրսևորվում է ընթացիկ հնգամյակի և պլանավորվող յուրաքանչյուր տարվա պլանային ու բյուջետային ցուցանիշներում, ծրագրերի կատարման համար անհրաժեշտ ռեսուրսների ապահովման միջոցառումների մշակման մեջ:

Հանրապետական կոմպլեքսային ծրագրերը արժանացան ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հավանությանը և հաշվի առնվեցին հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի պլանները կազմելիս: Ծրագրերի կատարման համապատասխան փու-

լերը քննարկվել ու հաստատվել են հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման տարեկան պլանների հետ միասին։

Հանրապետական կուսակցական ակտիվի 1983 թ. մարտի 24-ի ժողովում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը իր զեկուցման մեջ առանձնահատուկ ուշադրություն նվիրեց հանրապետության գիտատեխնիկական առաջընթացի 1985—2005 թթ. կոմպլեքսային ծրագրերի մշակմանը։

Զարգացման արդի փուլում, երբ առավել մեծ չափով է դրսևորվում գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի դերը, արդեն գլխավորն են դառնում ոչ թե նրա առանձին նվաճումները, այլ ամբողջ հանրային արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը։ Այդ պայմաններում կարևորվում է հանրապետության գիտատեխնիկական և արտադրատնտեսական պոտենցիալի լավագույն զարգացման ու օգտագործման, նրա գործնական իրականացման հեռանկարային ծրագրի ստեղծման գիտականորեն հիմնավորված կոնցեպցիայի հետագա ճշգրտման հարցը։

Արդի գիտության ու արտադրության ինտեգրացման պրոցեսի նպատակամետ ղեկավարման շնորհիվ հանրապետությունում վերջին տարիներին առավելապես զարգացել են գիտության ու տեխնիկայի այն ճյուղերը, որոնք որոշում են գիտատեխնիկական առաջընթացի հեռանկարները։ Ակադեմիական, ճյուղային ինստիտուտների, բուհերի և արդյունաբերական ձեռնարկությունների գիտական ստորաբաժանումների համագործակցությունը արդի գիտության ու տեխնիկայի մի քանի կենսական բաժինների հանգուցակետում հանգեցրեց գիտական ու արտադրական ճյուղերի այնպիսի կոմպլեքսների ծավալման, ինչպիսիք են տեսական և տեխնիկական կիբեռնետիկան՝ էլեկտրոնային-հաշվողական մեքենաների արտադրությունը, ֆիզիկաքիմիական կենսաբանությունը՝ կենսատեխնոլոգիան, նուրբ օրգանական և կենսաբանական քիմիան՝ նոր բարձրարդյունավետ դեղամիջոցների արտադրությունը, պինդ մարմնի ֆիզիկան և քվանտային էլեկտրոնիկան՝ լազերային տեխնիկան և այլն։

Կյանքը հաստատում է մեր հանրապետության ժողովրդական տնտեսության գիտականորեն հիմնավորված կողմնորոշումը դեպի նյութախնայողական ու էներգախնայողական արտադրությունների զարգացումը՝ հաշվի առնելով դրանց էկոլոգիական ապահովվածությունը։ Տվյալ կոնցեպցիայում ընդհանուր միութենական շահերը լավագույնս զուգակցվում են հանրապետության գիտական, արտադրական և աշխատանքային ռեսուրսների առանձնահատկությունների հետ։ Դա միաժամանակ, հանրապետության ժողովրդական տնտեսությունը գիտատարողնակ արտադրանքի թողարկման փոխադրելու ուղին է։

Ելնելով գիտության և արտադրության ինտեգրացման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած պահանջներից, ինչպես նաև Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական կոնցեպցիայից, որը մշակվել է Հայաստանի կոմկուսակցության XXVII համագումարում, որպես մշակվող ծրագրի հիմնական նպատակ, սահմանված է.

— սակավ նյութատար և էներգատար արտադրությունների առաջանցիկ զարգացում, նյութական, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսների առավելագույն խնայողությանն ու ռացիոնալ օգտագործմանն ուղղված տեխնոլոգիական պրոցեսների ստեղծում.

— գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման արագացում, աշխատանքների կատարման ժամկետների կրճատում բոլոր փուլերում՝ գիտական հետազոտություններից մինչև արդյունքների արմատավորումը արտադրության մեջ.

— արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացում, արտադրության հետագա մասնագիտացում և համակենտրոնացում.

— սակավաթափոն հեռանկարային տեխնոլոգիաների մշակում և արմատավորում, անթափոն արտադրության և շրջանառու ջրամատակարարման ապահովում հանրապետության տարածքում գործող զանազան ճյուղերի ձեռնարկություններում, հաշվի առնելով բնության պահպանության շահերը.

— արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխում՝ հաշվի առնելով առկա



հումքային և ազատ աշխատանքային ռեսուրսներն ու հանրապետության ռեգիոնների տնտեսական համասեռության ապահովման անհրաժեշտությունը։

Հանրապետությունում մշակվող մյուս կարևորագույն ծրագիրը պարենային ծրագիրն է։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և նոյեմբերյան (1982 թ.), Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունիսյան և դեկտեմբերյան (1982 թ.) պլենումների որոշումներին համապատասխան՝ կոնկրետ միջոցներ են նշված պարենային ծրագրի կազմման և դրա իրականացման միջոցառումների մշակման նպատակով։

Նշված ծրագրերից բացի, հանրապետության մի շարք գիտական հիմնարկություններ ու ձեռնարկություններ մասնակցում են ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հաստատած 12 կոմպլեքսային գիտատեխնիկական պրոբլեմների և ընդհանուր միութենական 32 ծրագրերի մշակմանը։

Դրանց թվում են փոքրատոննաժ քիմիական արտադրանքի արտադրության նոր պրոցեսների ստեղծումը և արմատավորումը, վնասատուներից, հիվանդություններից, մոլախոտերից բույսերի ու կենդանիների պաշտպանության՝ մարդու և շրջակա բնական միջավայրի համար անվնաս արդյունավետ քիմիական միջոցների արտադրությունն ու կիրառումը, էլեկտրոնային-հաշվողական մեքենաների նոր համալիրների ու տարրերի մշակումը, երկրի ջրային ռեսուրսների օգտագործումը բարելավելու և պահպանելու գիտատեխնիկական հիմունքների և միջոցառումների կոմպլեքսի մշակումը և այլն։

Ծրագրերը նախատեսում են վերջնական նպատակին հասնելու համար անհրաժեշտ միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ գիտահետազոտական, փորձնական-կոնստրուկտորական և նախագծային աշխատանքներ, փորձնական նմուշների պատրաստում և փորձարկում, փորձնական-արդյունաբերական սարքերի և արդյունաբերական օբյեկտների շինարարություն՝ արտադրության հետագա զարգացմամբ և լրացուցիչ կարողությունների ստեղծմամբ։ Ծրագրերը պարունակում են հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների մեծ մասի գործունեության զանազան ոլորտների միջոցառումները։ Ամենափոքր առաջադրանքի թերակատարումն անգամ կարող է հանգեցնել ամբողջ վերջնական արդյունքի ձախողման։ Այդ կապակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը բացառիկ նշանակություն է տալիս ծրագրերի համար տարվող աշխատանքների նկատմամբ ակտիվ հսկողություն սահմանելուն և պլանային ժամկետներից կամ ծավալներից ետ մնալը թույլ չտալու կանխիչ միջոցառումներին։

Յուրաքանչյուր հանրապետական ծրագրի գծով ստեղծվել են կոորդինացիոն խորհուրդներ՝ դրանց մշակումն ու իրականացումը ղեկավարելու համար։

Կոորդինացիոն խորհուրդների աշխատանքին մասնակից են դարձվել մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ, աչքի ընկնող մասնագետներ և գիտնականներ, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի համապատասխան ճյուղային բաժինների պատասխանատու աշխատողներ։ Խորհուրդները գլխավորում են Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալներ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հաստատել է կոորդինացիոն խորհուրդների կանոնադրությունը, որը կանոնակարգում է նրանց իրավունքներն ու պարտականությունները, օժտում անհրաժեշտ լիազորություններով՝ իրենց ֆունկցիաները լրիվ չափով իրականացնելու համար։

Առաջնահերթ նշանակություն տալով հանրապետության ժողովրդական տնտեսության պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու հարցերի կուսակցական ղեկավարմանը, ՀԿԿ Կենտկոմը պարտավորեցրել է կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների կուսակցական կոմիտեներին՝ ամեն կերպ աջակցել նպատակային ու կոմպլեքսային ծրագրերի իրականացման աշխատանքներին, հասնել դրանց առաջադրանքների հստակ ու ժամանակին կատարման, ստեղծել ստեղծագործական որոնումների մթնոլորտ, գիտնականների ու մասնագետների ջանքերն ուղղել ծրագրերի մշակման

ու իրականացման առաջադրանքների ժամանակին ու բարձրորակ կատարմանը։

Կոմպլեքսային նպատակային գիտատեխնիկական ծրագրերի մշակման և իրականացման կազմակերպումն ու կառավարումը նոր, շատ բաներով անծանոթ գործ է։ Սակայն արդեն այժմ կարելի է խոսել մի շարք ծրագրերի դրական արդյունքների մասին։

Այսպես, կուսակցական մարմինների անմիջական, ամենօրյա ղեկավարությամբ ու վերահսկողությամբ հանրապետությունում արտադրվող արտադրանքի որակի բարձրացման կոմպլեքսային ծրագրի իրականացման նպատակով միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվների, ինժեներատեխնիկական անձնակազմի կատարած մեծ ու տքնաջան աշխատանքը շոշափելի արդյունքներ է տվել։ Այստեղ որոշիչ դեր ունեցավ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1978 թվականի մայիսի 15-ի «Արտադրանքի որակի կառավարման հանրապետական կոմպլեքսային համակարգի արմատավորման միջոցառումների մասին» որոշումը, որտեղ նշված են կոնկրետ միջոցառումներ՝ թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավման խնդիրների լուծումն արագացնելու, շինարարական-մոնտաժային աշխատանքների և կենցաղային ծառայությունների որակը բարձրացնելու, որակի կոմպլեքսային կառավարումն ապահովելու, հանրապետությունում միասնական գիտատեխնիկական և տնտեսական քաղաքականություն իրականացնելու բնագավառներում։ Այդ համակարգի մշակման ու արմատավորման աշխատանքները կոորդինացնելու և ղեկավարելու համար կազմվել է հանրապետական միջգերատեսչական կոորդինացիոն խորհուրդ, որի կազմի մեջ մտել են ղեկավար կուսակցական աշխատողներ, հանրապետության մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ներկայացուցիչներ։

Արտադրանքի որակի բարձրացման կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում այդ որոշմամբ կարևոր նշանակություն է տրվում համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների կազմակերպող դերին։ Այս առումով դրական օրինակ կարող է ծառայել Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության փորձը, այն նպատակամղված մեծ աշխատանք է տանում արտադրանքի որակը բարձրացնելու համար։ Այստեղ լուրջ ուշադրություն է նվիրվում նոր տեխնիկայի արմատավորման հարցերին, որի պլանները սիստեմատիկաբար կատարվում են։ Մինիստրության ձեռնարկությունների հազարից ավելի արտադրատեսակ այժմ թողարկվում է պետական որականիշով։ Այսօր հանրապետությունում թեթև արդյունաբերության՝ հընդանիշ նշան ունեցող արտադրանքի տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալում հասցված է մինչև 30,8 տոկոսի, իսկ տարվա ընթացքում արտադրանքի նորացման տոկոսը՝ գրեթե մինչև 65-ի։ ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության հանձնաժողովը հաստատել է Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության արտադրանքի որակի կառավարման ճյուղային համակարգը։

Ընդհանուր առմամբ արտադրանքի բարձր որակի համար մղվող պայքարում նշանակալի հաջողությունների են հասել էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, տեղական և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունները։ Այժմ հանրապետության մոտ 400 ձեռնարկություններ և միավորումներ արմատավորում են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգը ստանդարտացման բազայի վրա, դրանցից գրեթե 300 ձեռնարկություն 1983 թվականի հունվարի 1-ի դրությամբ լրիվ ավարտել են կոմպլեքսային համակարգի արմատավորումը և իրենց համակարգերը գրանցել ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչությունում։ Այդ միջոցառումներից ստացվող հաշվարկային տնտեսական արդյունքը կազմում է մոտ 30 մլն ռուբլի։

Արտադրանքի որակի բարձրացման համար հանրապետությունում կազմակերպական մեծ աշխատանք են կատարում շրջանային և քաղաքային կուսակցական կազմակերպությունները, որոնք գլխավորում են արտադրանքի որակի



կառավարման տերիտորիալ կոմպլեքսային համակարգերը արմատավորելու գործը։

Կարելի է նշել ՀԿԿ Կիրովականի քաղկոմի դրական փորձը որակի կառավարման և արտադրության արդյունավետության բարձրացման քաղաքային համակարգի հաջող արմատավորման ասպարեզում։ Կուսակցության քաղկոմը, սկզբնական կուսակցական կազմակերպություններն իրենց ամբողջ կազմակերպչական և քաղաքական աշխատանքը ենթարկել են աշխատավորների արտադրական և հասարակական ակտիվության բարձրացման խնդիրներին, միավորումներում և ձեռնարկություններում գործարար մթնոլորտի ստեղծմանը, աշխատանքի արդյունավետության ու որակի նկատմամբ պահանջկոտության բարձրացմանը։ Այժմ պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը Կիրովական քաղաքի ապրանքային (համախառն) արտադրանքի ընդհանուր ծավալում հասել է 45,2 տոկոսի, իսկ ատեստավորման ենթակա արտադրանքի ծավալում՝ 76 տոկոսի։ Քաղաքում բացվել է հանրապետությունում առաջին որակի տունը, որտեղ ցուցադրված են լավագույն արտադրանքի նմուշներ, առանձին ձեռնարկությունների և ամբողջ քաղաքի որակի կառավարման համակարգեր, մեթոդական և ինֆորմացիոն աշխատանք է տարվում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հարցերի լուծման նպատակով։

Արժե հիշատակել նաև հանրապետության մի շարք այլ շրջանների ու քաղաքների կուսակցական կազմակերպությունների լավ աշխատանքը արտադրանքի որակի կառավարման տերիտորիալ կոմպլեքսային համակարգերի արմատավորման նպատակով։ Դրանց թվում են Աբովյանի, Ղափանի, Հրազդանի, Սիսիանի կուսակցական կազմակերպությունները։ Նպատակամղված աշխատանքը տալիս է իր արդյունքները. եթե պետական որականիշով արտադրատեսակների տեսակարար կշիռը 1975 թվականին հանրապետությունում կազմում էր թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի միայն 6,5 տոկոսը, ապա 1983 թվականի հունվարի 1-ի դրությամբ այն հասավ 18,7 տոկոսի, իսկ ատեստավորման ենթակա արտադրանքի ծավալի՝ 38,5 տոկոսի։

Կատարված աշխատանքը բարձր գնահատականի արժանացավ ՍՄԿԿ XXVI համագումարում, որտեղ նշվեց, որ Հայաստանի ու Լատվիայի կուսակցական կազմակերպությունները կարողացել են աշխատավորական կոլեկտիվներին, կառավարման ու պլանավորման բոլոր օղակներին նպատակամղել՝ բարձրացնելու արդյունաբերական արտադրանքի որակը։

Այս բարձր գնահատականը կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողներին պարտավորեցնում է՝ ավելի մոբիլիզացնել ջանքերը կոմպլեքսային ծրագրի առաջադրանքները անվերապահորեն կատարելու համար։

Որոշակի դրական արդյունքներ կան նաև Արարատյան դաշտավայրի աղակալած հողերի յուրացման կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում։

Պրոբլեմի լուծման նկատմամբ ծրագրանպատակային եղանակի կիրառումը հնարավորություն ընձեռեց բացահայտելու չլուծված խնդիրների ամբողջ խումբը՝ Արարատյան հարթավայրի հողերում և գետնաջրերում աղերի ու սոդայի առաջացման հարցերի ուսումնասիրությունից մինչև քիմիական մելիորացման գիտականորեն հիմնավորված միասնականացված տեխնոլոգիայի և մելիորացված հողերի գյուղատնտեսական յուրացման լրիվ մշակումը։ Այդ նպատակով Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտը մշակել և արտադրության մեջ արմատավորել է մելիորացման նոր մեթոդ՝ քիմիական արդյունաբերության թափոնների օգտագործմամբ, որը թույլ է տալիս սեղմ ժամկետներում մելիորացնել ամբողջ հողաշերտը։

Այժմ հանրապետության մինիստրություններում ու գերատեսչություններում ներդրված են կազմակերպական-տնտեսական նշանակության կառավարման 33 ավտոմատացված և ինֆորմացիայի մշակման 8 ավտոմատացված համակարգեր։ Արդյունաբերության մեջ կիրառվող խնդիրների ու ենթահամա-

կարգերի կոմպլեքսների ընդհանուր թիվը հասնում է մոտ 400-ի։ Ներդրված են նաև տեխնոլոգիական պրոցեսների կառավարման 12 ավտոմատացված համակարգեր, 21 ձեռնարկություններում ստեղծվում են արտադրության կառավարման ավտոմատացված համակարգեր։

Տերիտորիալ պլանով կառավարման ավտոմատացված համակարգերի ստեղծման նպատակով կազմակերպական մեծ աշխատանք են տանում ՀԿԿ քաղկոմ-շրջկոմները, ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները։ Ուսանելի է Երևանի քաղաքային տնտեսության կառավարման ավտոմատացված համակարգի ստեղծման ասպարեզում ձեռք բերված փորձը։

Հանրապետության տարածքում հաշվողական կենտրոնների տեղաբաշխումը (Ղափան, Հրազդան, Չարենցավան) հնարավորություն ընձեռեց համակարգերը մշակող կոլեկտիվներ կազմակերպելու անմիջականորեն ձեռնարկություններում և կազմակերպություններում և էապես ընդլայնելու կառավարման ավտոմատացված համակարգերի ու հաշվողական տեխնիկայի արմատավորման ոլորտը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։

Հանրապետությունում աշխատանքներ են տարվում «Կապիտալ շինարարություն», «Արդյունաբերություն», «Բնակարանային-կոմունալ տնտեսություն» կառավարման միջճյուղային ֆունկցիոնալ կոմպլեքսների մշակման նպատակով, որոնք միավորում են մինիստրությունների ու գերատեսչությունների կառավարման գործող ավտոմատացված համակարգերը և բարձրացնում կառավարման արդյունավետությունը։ Կառավարման միջճյուղային ֆունկցիոնալ կոմպլեքսները, որոնք այժմ ստեղծվում են, պետք է գործեն կոլեկտիվ օգտագործման հանրապետական հաշվողական համակարգի և տվյալների հաղորդման ցանցի բազայի վրա։

Մեր հանրապետության համար բացառիկ նշանակություն ունեն շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների, այդ թվում Սևանի ավազանի ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ծրագրի մշակումն ու իրականացումը։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի բուռն զարգացումը, շարունակվող ուրբանիզացիան շրջակա միջավայրի պահպանության մի ամբողջ շարք պրոբլեմներ են առաջադրում, որոնք հանրապետության յուրահատուկ պայմաններում է՛լ ավելի են բարդանում։

Մեզ մոտ մեծ ուշադրություն է նվիրվում բնապահպանական միջոցառումների իրականացմանը։

Կուսակցական կազմակերպությունները կոչված են վերահսկողություն կազմակերպելու այդ միջոցառումների իրականացման նկատմամբ, խստագույնս պահանջելու բնօգտագործման նորմանները խախտող ձեռնարկությունների ղեկավարներից, մշակելու կոմպլեքսային պլանավորման միջոցառումներ, որոնք ապահովում են արտադրության աճը, ռացիոնալ բնօգտագործումը և բնության պահպանությունը։ Փորձը ցույց է տալիս, որ ծրագրանպատակային մեթոդի կիրառումը բնօգտագործման բնագավառում նոր հնարավորություններ է բացում, ջանքերը կենտրոնացնում է այդ կարևոր ու անհետաձգելի խնդրի լուծման վրա։

Առկա են որոշակի արդյունքներ նաև մի շարք այլ ծրագրերի կենսագործման ասպարեզում։ Այդուհանդերձ, նշված ծրագրերի մշակման ու իրականացման գործում կան ոչ քիչ դժվարություններ, բացթողումներ, թերություններ։ Ելնելով հասարակական արտադրության ինտենսիվացման և ժողովրդական տնտեսության արդյունավետությունը բարձրացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի առաջադրած պահանջներից, անհրաժեշտ է ուժեղացնել կարևորագույն գիտատեխնիկական ծրագրերի առաջադրանքների կատարման, միջճյուղային բարդ պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման գործում կուսակցական ղեկավարությունը և վերահսկողությունը։ Անհրաժեշտ է բոլոր ջանքերը գործադրել՝ մոբիլիզացնելու աշխատավորական, գիտական, արտադրական կոլեկտիվների ուժերը կոմպլեքսային նպատակային ծրագրերի՝ հանրային արտադրության արդյունավետության բարձրացման այդ արդյունավետ լծակների, առաջադրանքների անվերապահ կատարման նպատակով։

---

# ՆՊԱՏԱԿԱՅԻՆ ԿՈՄՊԼԵՔՍ ԾՐԱԳՐԵՐԸ ԵՎ ԴՐԱՆՑ ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

**Շ. Ս. ԹԱՅԻՐՅԱՆ**
Գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկա-տնտեսական հետազոտությունների հայկական գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, տեխնիկական գիտությունների թեկնածու

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ասպարեզում մեր երկրի ձեռք բերած վիթխարի հաջողությունները մեծ մասամբ պայմանավորված են նրանով, որ մեզ մոտ գիտությունը զարգանում է միասնական պլանային հիմքի վրա և մշտական ուշադրություն է նվիրվում ժողովրդական տնտեսության մեջ ու արդյունաբերության առանձին ճյուղերում գիտատեխնիկական առաջընթացի կառավարման կատարելագործմանը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում իրագործվել և իրագործվում են գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ինչպես և գիտական հետազոտությունների ու մշակումների պլանավորման կատարելագործման հետ կապված մի շարք միջոցառումներ։ Արդյունաբերության ճյուղերում գիտության ու տեխնիկայի առանձին ուղղությունների վերաբերյալ կազմակերպված են գիտատեխնիկական կանխագուշակումների մշակման միջոցառումներ, լայնորեն փորձարկվում են գիտահետազոտական և փորձակոնստրուկտորական աշխատանքների տնտեսական խթանման նոր մեթոդները, աշխատանքներ են ծավալվում գիտաարտադրական միավորումների ստեղծման բազայի վրա գիտությունն արտադրության հետ կապելու նոր ու ռացիոնալ կազմակերպչական ձևեր կիրառելու նպատակով։

Գիտատեխնիկական զարգացման ժամանակակից միտումներն էականորեն և շատ արագ կերպարանափոխում են նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման ու յուրացման պրոցեսների պլանավորման նկատմամբ ներկայացվող պահանջները։ Գիտության ու տեխնիկայի զարգացման ժամանակակից պլաններն իրենց նպատակներով, պահանջվելիք ռեսուրսներով և սպասվելիք հետևանքներով կրում են ավելի ու ավելի կոմպլեքսային սոցիալ-տնտեսական բնույթ։

Ընթացիկ հնգամյակի գիտության ու տեխնիկայի զարգացման պետական պլանում ընդգրկված առանձին գիտատեխնիկական պրոբլեմների լուծմանը մասնակցում են հարյուրավոր կատարող կազմակերպություններ, ուստի և գիտահետազոտական ինստիտուտների ու կոնստրուկտորական բյուրոների ճյուղային և թեմատիկ պլաններում ավելի կարևոր նշանակություն են ստանում բարդ միջճյուղային պրոբլեմների մշակումները։ Դրանց ձևավորման հիմքում լուծվող պրոբլեմի միասնության սկզբունքն է։ Միջճյուղային պրոբլեմների հաջող լուծմամբ է փաստորեն պայմանավորված նոր ստեղծվող և օգտագործման հանձնվող տեխնիկայի ու տեխնոլոգիայի մակարդակը։

Որպես վերոհիշյալ պրոբլեմների ցայտուն օրինակ կարելի է բերել մետաղական փոշիների ստեղծման և արդյունաբերական արտադրության մասշտաբ-

ներով դրանց յուրացման, ինչպես և դրանց հիման վրա նոր նյութերի, պատվածքների ու արտադրանքի ստացման պրոբլեմը, նյութեր, որոնք հույժ անհրաժեշտ են ո՛չ միայն մեր հայրենական մեքենաշինությանը, այլև ժողովրդական տնտեսության շատ ճյուղերի։ Փոշեմետալուրգիայի կիրառմամբ հնարավորություն կընձեռվի բացառելու մետաղների հալման ու ձուլման պրոցեսները և նվազագույնի հասցնելու դետալների մեխանիկական մշակման անհրաժեշտությունը։ Նման պրոբլեմներից են կոռոզիայից մետաղների պաշտպանության, ժողովրդական տնտեսության մեջ ձեռքի աշխատանքի մեքենայացման ու ավտոմատացման, վերամբարձ-տրանսպորտային, պահեստային և բեռնման-բեռնաթափման գործողությունների մեքենայացման նորագույն միջոցների ստեղծման, ինչպես նաև փայտամթերման արտադրության մեջ, ճանապարհաշինական ու լեռնահանքային աշխատանքներում աշխատատար գործողությունների կոմպլեքսային սարքավորման հարցերը։ Միջճյուղային պրոբլեմի լուծման ցայտուն օրինակ են ժողովրդական տնտեսության մեջ լազերային տեխնիկայի ու տեխնոլոգիայի, ոչ գործվածքային նյութերի ստեղծումն ու օգտագործումը, ռոբոտների, կառավարման ավտոմատ համակարգերի ստեղծումը և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումը, գետերի ավազանների կոմպլեքսային օգտագործումը և այլն։ Հենց այսպիսի պրոբլեմների լուծման վրա պետք է բևեռվի մեր ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի ուշադրությունը։ Միջճյուղային պրոբլեմների կատարումն ապահովելու համար ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեն որոշում ընդունեց ձևակերպել, այսպես կոչված, նպատակային կոմպլեքս գիտատեխնիկական և կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագրեր, որոնք պլանավորման և կառավարման ոլորտում ծրագրանպատակային մեթոդի իրացման առավել արդյունավետ ձև են։

Նպատակային կոմպլեքս գիտատեխնիկական ծրագրերը նախատեսում են գիտության ու տեխնիկայի կարևորագույն նվաճումների իրացում, արդյունաբերական արտադրության տվյալ մտահղացումը արտադրանքի թողարկմամբ ավարտելու, նոր, կատարելագործված մեքենաներ, մեխանիզմներ ու սարքեր ստեղծելու համար։ Այդ ծրագրերը սոցիալ-տնտեսական պլանավորումը բարելավելու արդյունավետ միջոց են, որոնք ծառայելու են գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առավել նշանակալից ու հրատապ պրոբլեմների լուծմանը։ Դրանք պետք է ապահովեն գործունեության կարևորագույն կոնկրետ նպատակների ընտրությունը և դրանց հասնելու օպտիմալ եղանակը՝ միջոցառումների կոմպլեքսի իրականացման սոցիալական հետևանքների համակողմանի հաշվառմամբ հանդերձ։ Ի տարբերություն նպատակային կոմպլեքս ծրագրերի՝ կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագրերով նախատեսվում է ընթացիկ հնգամյակում գիտական տվյալ մտահղացման մարմնավորում արտադրության մեջ (երբեմն նույնիսկ սերիական)։ Սակայն դրանց զգալի ծավալների իրացումից կամ մշակումների ավարտից ստացվելիք առավելագույն փոխհատուցումն սպասվում է հաջորդ հնգամյակում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքների որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշման համապատասխան ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեն, ՍՍՀՄ պետպլանի և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ համատեղ, երկրի ճյուղային մինիստրությունների և գերատեսչությունների մեծամասնության անմիջական մասնակցությամբ, ստեղծել է 41 նպատակային կոմպլեքս գիտատեխնիկական և 129 կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագրեր, որոնց բոլոր առաջադրանքներն ընդգրկված են հնգամյա պլանի մեջ։ Ուշագրավ է, որ մեր հանրապետությունում գտնվող կազմակերպությունները և ձեռնարկությունները մասնակցում են դրանցից 43-ի ստեղծմանն ու մշակմանը, որից 17-ը՝ նպատակային կոմպլեքս ծրագիր։ Բացի այդ, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների պետական պլանում ներառված են նաև տեղական նշանակության 9 նպատակային կոմպլեքս ծրագրեր։ Առաջին ան-



գամ մեր երկրում ստեղծվել է գիտատեխնիկական առաջընթացի ծրագրի հըստակ պլան, որն ընթացիկ հնգամյա պլանում ապահովված է բոլոր տեսակի նյութատեխնիկական ռեսուրսներով։

Վերոհիշյալ ծրագրերում ձևակերպված վերջնական նպատակները հանգամանորեն ճշտվում, պարզաբանվում են հիմնական առաջադրանքներում, որտեղ կոնկրետ որոշվում է, թե ինչպիսի նոր տեխնոլոգիական պրոցեսներ, արտադրանքներ, նյութեր ու սարքավորում պետք է օգտագործվեն ընթացիկ հնգամյակում, ինչ պետք է ստեղծվի և հասցվի մինչև արդյունաբերական ներդրման, տեխնիկական և տեխնոլոգիական ինչպիսի եղանակներ կենթարկվեն արդյունաբերական փորձարկման և նախապաշար կապահովեն հաջորդ հնգամյակի համար։

Այսպիսով, նախատեսված է նորույթների մեծածավալ կոմպլեքս, որոնք մշակվում կամ արդեն գտնվում են ներդրման սկզբնական փուլում, և որոնք լայնորեն կօգտագործվեն ժողովրդական տնտեսության մեջ։

Ի տարբերություն տասներորդ հնգամյակի, նպատակային կոմպլեքս ծրագրերով այժմ խնդիր է դրվում նորույթը հասցնել ոչ թե մինչև ներդրման սկիզբը, այլև կազմակերպել դրա սերիական արտադրությունն այնպիսի ծավալով, որ այն տա շոշափելի տնտեսական արդյունք, այսինքն՝ նախատեսվում են ո՛չ միայն նոր տեխնիկան ու տեխնոլոգիան ստեղծելու և յուրացումն սկսելու ժամկետները, այլև հստակ նշվում են դրանց ներդրման ծավալներն ըստ հնգամյակի տարիների։ Այդ ծրագրերն ընդգրկում են բազում միջոցառումներ՝ կապված ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտների հետ, որը կազմակերպչական աշխատանքների որոշակի դժվարություններ է հարուցում։ Ստացվում է, որ նույնիսկ մի ոչ մեծ առաջադրանքի ձախողումը կարող է հանգեցնել վերջնական ողջ արդյունքի ձախողման։ Այդ իսկ պատճառով չափազանց մեծանում է վերոհիշյալ ծրագրերի իրականացման նպատակով տարվող աշխատանքների ակտիվ ուղեկցման և դրանց վերահսկելու նշանակությունը. կարևորվում է կանխիչ միջոցների ապահովման համար նախատեսված ձեռնարկումների կատարումը պլանային ժամկետներում, նշված ծավալներով։

Նպատակային կոմպլեքս ծրագրերի և կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների հսկողության համար առանձին ծրագրերի կատարման աշխատանքների կոորդինացումն ստանձնած առաջատար մինիստրություններին ու գերատեսչություններին կից կազմակերպված են հատուկ խորհուրդներ։ Դրանք կոչված են իրականացնելու ստեղծվող նորույթների տեխնիկական մակարդակի հսկողությունը, կազմակերպելու գիտական կազմակերպությունների փոխգործողությունները, որով հնարավորություն կընձեռվի զուգակցելու կառավարման ճյուղային սկզբունքը գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի կողմից իրագործվող ծրագրային կառավարման հետ։ Այսպիսով, ստեղծված է նպատակային կոմպլեքս ծրագրերի և կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների առումով կատարվող աշխատանքների կազմակերպումը վերահսկող ու կառավարող հատուկ մեխանիզմ։ Սակայն չեն բացառվում այնպիսի դեպքերն ու հանգամանքները, երբ ծրագրեր կատարող կազմակերպությունների ու ձեռնարկությունների տարանջատվածության հետևանքով տեղեկություններն աշխատանքների կատարման ոլորտի խախտումների ու շեղումների վերաբերյալ կարող են կառավարման օրգաններ հասնել որոշակի ուշացումներով, և ստեղծված վիճակի շտկումը փաստորեն անկարելի կդառնա։ Հենց այստեղ է, որ իրենց վճռական խոսքը պետք է ասեն գիտատեխնիկական ինֆորմացիայի բոլոր մարմինները։

ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի 1981 թվականի «Նպատակային կոմպլեքս ծրագրերի և կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագրերի ուղեկցման գործում գիտատեխնիկական ինֆորմացիայի միջճյուղային տարածքային օրգանների մասնակցության մասին» որոշման համաձայն, գիտատեխնիկական ինֆորմացիայի հանրապետական ինստիտուտների և միջճյուղային տարածքային կենտրոնների վրա լրացուցիչ պարտականություններ են դրվել գիտատեխնիկական ծրագրերի ուղեկցման

նպատակով։ Այդ որոշումը շատ կարևոր նշանակություն ունի գիտատեխնիկական ինֆորմացիայի ողջ համակարգի հետագա զարգացման համար։

Դեռևս նախքան այդ որոշումն ընդունելը գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների առաջնահերթ ու հիմնական խնդիրներից մեկն է եղել՝ ինֆորմացիոն ապահովման պրոբլեմն արդյունավետ լուծելու նպատակով մանրակրկիտ ուսումնասիրել ձեռնարկությունների ու կազմակերպությունների ինֆորմացիոն պահանջարկը և առաջին հերթին տեղեկանալ, թե ինչո՞վ են նրանք զբաղված տեղերում, ի՞նչ պլաններ են իրականացնում, արտադրական ու գիտական ինչպիսի՞ խնդիրներ են լուծում, որո՞նք են վերջնական արդյունքները։ Ինֆորմացիոն պահանջարկների ուսումնասիրումն ու բացահայտումը եղել և մնում են ինֆորմացիոն աշխատանքների իրագործման հիմքն ու դրա անբաժանելի մասը, ընդ որում այդ արվում է առանց հաշվի առնելու կազմակերպությունների ու ձեռնարկությունների գերատեսչական պատկանելիությունը։ Հսկողությունը գիտատեխնիկական ծրագրերի կատարման ընթացքի նկատմամբ և դրանց ինֆորմացիոն ապահովումը գիտատեխնիկական ինֆորմացիայի ծառայություններին հնարավորություն կընձեռի պարզաբանելու տեղերում լուծվող ծրագրային խնդիրների մանրամասները, ի հայտ բերելու «նեղ» տեղերը, հետևաբար և կօգնի՝ գիտատեխնիկական ծրագրերի առանձին փուլերի ու առաջադրանքների կատարողներին ժամանակին և ինչպես հարկն է ապահովելու անհրաժեշտ օպերատիվ ինֆորմացիայով։

Այսպիսով, գիտատեխնիկական ծրագրերի ուղեկցման և ինֆորմացիոն ապահովման խնդիրներն օրգանապես կապված են միմյանց հետ և հնարավոր չէ ծրագրերի ուղեկցման պրոցեսն անջատել դրանց ինֆորմացիոն ապահովման պրոցեսից։ Գիտատեխնիկական առաջընթացի այս կարևորագույն խնդրի ժամանակին և արդյունավետ լուծմանը նպաստելու երաշխիք կարող է հանդիսանալ գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների, այդ թվում նաև ծրագրերի առաջադրանքները կատարող բազմաթիվ կազմակերպությունների ու ձեռնարկությունների ինֆորմացիոն ծառայությունների առավել սերտ համագործակցությունը։

Ակնհայտ է, որ ծրագրերի իրականացման նպատակով կատարվող աշխատանքների առաջնահերթ ինֆորմացիոն ապահովման խնդիրը կարող է պահանջել ինֆորմացիոն սպասարկման նոր, ավելի կատարելագործված և ժամանակակից պահանջները բավարարող ձևերի ու մեթոդների որոնում, դրանց ավանդական, գործնականում վաղուց օգտագործվող տեխնոլոգիայի փոփոխում։ Առաջին հերթին դա վերաբերում է տեղեկատու-ինֆորմացիոն սպասարկման ու գիտատեխնիկական պրոպագանդայի տարբեր ձևերին, ինչպես և ինֆորմացիոն նյութերի տարբեր տեսակների հրատարակմանը։ Տեղեկատու-ինֆորմացիոն սպասարկման դեպքում, լինի դա ինֆորմացիայի ընտրողական տարածում, «հարցում-պատասխան» կամ գրադարանամատենագիտական սպասարկում, գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգաններն առաջնությունն անվերապահորեն պետք է տան նպատակային կոմպլեքս ծրագրերի առաջադրանքներ կատարող ձեռնարկություններին ու կազմակերպություններին։ Ինչ վերաբերում է ինֆորմացիոն հրատարակումներին, ապա դա պետք է կազմակերպել այն հաշվով (հատկապես ինֆորմացիոն տեսությունները և թեմատիկ ընտրանքները), որպեսզի ամենից առաջ արտացոլվեն առավել լրիվ ու հավաստի ծրագրերով իրականացվող պրոբլեմների լուծման ուղիներն ու իրավիճակը։ Այդ նշանակում է, որ ինֆորմացիոն նյութերի հրատարակման թեմատիկ պլանը, գիտատեխնիկական պրոպագանդայի ոլորտում իրականացվող միջոցառումների և առաջին հերթին դրանց ամենառացիոնալ ու ամենաարդյունավետ ձևի՝ միջգործարանային առաջավոր փորձի դպրոցների պլանները, ինչպես նաև տեղեկատու-ինֆորմացիոն սպասարկման պայմանագրերը պետք է կազմել այնպես, որ դրանցում ամենից առաջ ընդգրկվեն նպատակային կոմպլեքս ծրագրերի հաջող իրագործումն ապահովող հարցերը։ Ծրագրերի կատարման ընթացքի մշտական հսկողությունը և դրանց առաջնահերթ ինֆորմացիայով ապահովումը գիտատեխնիկական առաջընթացի ծրագրերի կենսագործման կարևոր պայմաններից են, գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների ամենապատասխանատու պարտականությունը։



Ո՞րն է նպատակային կոմպլեքս ծրագրերի և գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմների լուծման ծրագրերի ինֆորմացիոն ապահովման էությունը։ Նշենք, որ գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովումն իրագործվում է նախատեսվող աշխատանքները գիտատեխնիկական բարձր մակարդակով կատարելուն նպաստելու նպատակով և հանդիսանում է գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական համակարգի բոլոր օղակների գործունեության կարևորագույն խնդիրը։ Գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովումն իրագործվում է ինֆորմացիոն և գրադարանային սպասարկման գոյություն ունեցող բոլոր ձևերի ու մեթոդների օգտագործմամբ՝ ձեռքի տակ առկա տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդերի և գիտատեխնիկական ծրագրերի շրջանակներում լուծվող կարևորագույն պրոբլեմների լուծման նպատակով հատուկ ստեղծված տվյալների բազայի հիման վրա։ Մի անգամ ևս նշենք, որ նախ անհրաժեշտ է բավարարել գիտատեխնիկական ծրագրերի իրականացմանը մասնակցող բոլոր կազմակերպությունների ու ձեռնարկությունների, գիտնականների ու մասնագետների ինֆորմացիոն պահանջարկը։

Գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովումը պատշաճ մակարդակով կազմակերպելու համար անհրաժեշտ է, որ հանրապետության գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանները նախօրոք կազմեն այն պրոբլեմների մանրակրկիտ ցանկը, որոնց լուծումը նախատեսվում է գիտատեխնիկական ծրագրերով, դրանց առանձին առաջադրանքներով կամ փուլերով, առանձնացնեն այն կարևորագույն պրոբլեմները, որոնց ինֆորմացիոն ապահովումն անհրաժեշտ է իրագործել արտահերթ, պատրաստեն ծրագրերի առաջադրանքներն ու փուլերը կատարող և առաջնահերթ ինֆորմացիոն սպասարկման ենթակա կազմակերպությունների ու ձեռնարկությունների ցուցակը։ Չափազանց կարևոր է նաև յուրաքանչյուր պրոբլեմի համար ինֆորմացիոն ապահովման և գիտատեխնիկական պրոպագանդայի միջոցառումների տեսակների ու ձևերի սահմանումը, ինֆորմացիայի օրգանների հեռանկարային և ընթացիկ պլաններում գիտատեխնիկական ծրագրերի համալիր ինֆորմացիոն ապահովման այնպիսի աշխատանքների նախատեսումը, որոնք ընդգրկեն ծրագրերի թեմատիկայի առումով անհրաժեշտ ինֆորմացիայի ժամանակին նախապատրաստումն ու հանձնումը։ Հատուկ ուշադրություն պետք է նվիրել գիտատեխնիկական պրոպագանդայի այնպիսի միջոցների կազմակերպմանը, որոնք իրենց կատարման ժամկետներով հստակորեն համընկնեն ծրագրերի առաջադրանքների ու փուլերի կատարման ժամկետների հետ։

Գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանները պետք է խստագույնս հաշվառեն գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովման տարբեր ձևերով (ինֆորմացիայի ընտրողական տարածման ազդանշանային ծանուցումներ, արտադրության մեջ անմիջապես ներդրվելիք ինֆորմացիոն հանձնարարականներ և այլն) հանրապետության կազմակերպություններն ու ձեռնարկություններն առաքվող նյութերի տեսակներն ու քանակները, նշելով դրանց պատկանելիությունը նպատակային կոմպլեքս ծրագրերին։ Իրենց ամենամյա հաշվետվություններում դրանք պետք է նախատեսեն հատուկ բաժին, ուր մանրամասն ներկայացվեն գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովման նպատակով կատարված աշխատանքները։

Ծրագրերի ինֆորմացիոն ապահովման գործում պետք է նախատեսվի այդ ծրագրերի կատարման պրոցեսում լուծվող կարևորագույն պրոբլեմների թեմատիկային վերաբերող վերլուծական-համադրական և ինֆորմացիոն տեսությունների նախապատրաստում և ըստ նշանակության օպերատիվ առաքում, ընդ որում դրանք պետք է կազմվեն գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդ մուծվող ընթացիկ ինֆորմացիոն նյութերի հիման վրա, լինեն հակիրճ ու նպատակասլաց։ Բավականին օգտակար կարող է լինել նաև ծրագրերի առաջադրանքների ու փուլերի կատարմանն աջակցող ռետրոսպեկտիվ մատենագիտական տեղեկատուների պատրաստումը՝ հայրենական և արտասահմանյան ինֆորմացիոն նյութերի հիման վրա։

Հույժ արդյունավետ կարող են լինել գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների կազմած հայրենական և արտասահմանյան գիտության, տեխնիկայի ու արտադրության առավել կարևոր նվաճումների վերաբերյալ ամենամյա զեկուցագրերը: Ծրագրերի հաջող կատարմանը կնպաստի նաև ինֆորմացիայի ընտրողական տարածման համակարգում դրանց պրոբլեմատիկային վերաբերող թեմաների ցանկի ընդլայնումը, ընդ որում տարիներ շարունակ մշտապես գոյություն ունեցող հարցումների (թեմաների) ընդհանուր ցուցակում գիտատեխնիկական ծրագրերի թեմատիկային վերաբերող հարցումները պետք է առանձնացվեն: Որոշակի փոփոխություններ են անհրաժեշտ նաև ղեկավարության դիֆերենցված սպասարկման տեխնոլոգիայի ոլորտում այն հաշվով, որ գիտատեխնիկական ծրագրերի անմիջական ղեկավարները, ինչպես և դրանց առանձին առաջադրանքների ու ենթածրագրերի գիտական ղեկավարներն ընդգրկվեն այդպիսի սպասարկման համակարգում, որպես մշտական աբոնենտներ (բաժանորդներ):

Գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովումը հաջող իրականացնելու գործում որոշակի նշանակություն կարող է ունենալ գրադարանամատենագիտական սպասարկման տարբեր ձևերի պատշաճ կազմակերպումը և առաջին հերթին ծրագրերի թեմատիկային վերաբերող նոր ստացվող գրականության ու ինֆորմացիոն տարբեր տեսակների ցուցադրումը, տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդ մուծված գրականության հիման վրա ինֆորմացիայի հայրենական ու արտասահմանյան աղբյուրներից թեմատիկ ընտրանքների պատրաստումը, մատենագիտական տեղեկանքների կազմումը և այլն:

Անհրաժեշտ է որակական նոր մակարդակի հասցնել ծրագրերի թեմատիկայի վերաբերյալ գիտատեխնիկական պրոպագանդայի այնպիսի միջոցառումների կազմակերպումը, որոնք նպատակամղված լինեն ինչպես պրոբլեմների լուծմանն աջակցելուն, նույնպես և ծրագրերի կատարման ոլորտում ծավալված աշխատանքների արդյունքների ներդրմանն ու տարածմանը: Գիտատեխնիկական պրոպագանդայի այնպիսի ձևեր, ինչպիսիք են գիտական և գիտատեխնիկական կոնֆերանսները, խորհրդակցությունները, սեմինարները և արտադրական առաջավոր փորձի դպրոցները, գրականության թեմատիկ ցուցահանդեսները, օպերատիվ կինոինֆորմացիաների թողարկումը, ռադիոյի, հեռուստատեսության հաղորդումների կազմակերպումը, էական օգնություն կլինեն գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովման և դրա հետ մեկտեղ այդ ծրագրերը ժամանակին, արդյունավետ, բարձր մակարդակով կատարելու գործում:

Գիտատեխնիկական ինֆորմացիայի հայկական գիտահետազոտական ինստիտուտը՝ հանրապետական ինֆորմացիոն համակարգի այդ առաջատար կազմակերպությունը, 1982 թվականից ձեռնամուխ է եղել հանրապետության տարածքում գտնվող և գիտատեխնիկական ծրագրերի առաջադրանքներ կատարող գիտական ու նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունների և արդյունաբերական ձեռնարկությունների նկատմամբ սիստեմատիկ վերահսկողության իրականացմանը և այդ ծրագրերի սահմաններում դրանց ինֆորմացիոն ապահովման նորանոր ձևերի ու մեթոդների կիրառմանը:

Ինստիտուտը վերահսկում է 53 ծրագրերի կատարման ընթացքը, որից 17-ը միութենական նպատակային կոմպլեքս, 9-ը հանրապետական նպատակային կոմպլեքս և 27-ը կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագիր:

Ծրագրերի կատարման վիճակի վերահսկմամբ և ինֆորմացիոն պահանջարկների բացահայտմամբ զբաղվում են ինստիտուտի միջճյուղային բաժինների մասնագետները՝ սիստեմատիկաբար այցելելով ծրագրերի մշակմանը մասնակցող կազմակերպություններն ու ձեռնարկությունները: Տեղերում ծանոթանում, ուսումնասիրում են թեմատիկ պլաններն ու գիտահետազոտական աշխատանքների հաշվետվությունները, զրուցում հիմնարկությունների և ծրագրերի առաջադրանքների կատարումը ղեկավարողների հետ:

Այցելությունների արդյունավետությունը բարձրացնելու նպատակով ինստիտուտի աշխատողները ղեկավարվում են նախապես մշակված հարցաթերթիկով, որում ընդգրկված են ծրագրերի ուղեկցման և ինֆորմացիոն ապահովման բոլոր հիմնական հարցերը:



1982 թվականին բոլոր գիտատեխնիկական ծրագրերն ընդգրկվել են ինֆորմացիայի ընտրողական տարածման ոլորտում: Հանրապետության արդյունաբերական հիմնական ճյուղերի և գյուղատնտեսության ասպարեզում ընտրված թեմաների առնչությամբ տարվա ընթացքում ծրագրեր կատարող կազմակերպություններին ու ձեռնարկություններին ուղարկվել է ավելի քան 430 ազդանշանային ծանուցում և 180 հանձնարարական՝ ծրագրերի թեմատիկայում անմիջականորեն օգտագործելու համար:

Գործել է առաջավոր փորձի 9 դպրոց, պատրաստվել են 10 ինֆորմացիոն տեսություն և թեմատիկ ընտրանք: Կազմակերպվել են տեխնիկական խորհրդակցություններ, ինչպես և գիտատեխնիկական ծրագրերի տարբեր հարցերին նվիրված գրականության ցուցահանդեսներ:

Նպատակային կոմպլեքս ծրագրերի կատարմանն աջակցելու համար ինստիտուտը կատարողներին, նրանց իսկ առաջին պահանջով, ապահովում է անհրաժեշտ ինֆորմացիայով, այդ թվում նաև արտասահմանյան: Հանրապետական տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդերի համալրման պլանը կազմելիս մեծ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական ծրագրերի թեմաների հետ կապված հարցերին:

Գիտատեխնիկական ծրագրերի ինֆորմացիոն ապահովման և ուղեկցման ավելի լայն ծրագիր է նախատեսված ընթացիկ տարվա համար: Ընդլայնվել է ծրագրեր կատարող կազմակերպությունների ու ձեռնարկությունների՝ ինֆորմացիայի ընտրողական տարածման ռացիոնալ համակարգով սպասարկման թեմատիկան: Ինստիտուտի կողմից նախատեսված 35 միջգործարանային դպրոցներից 20-ը և պատրաստվող 28 ինֆորմացիոն տեսություններից ու թեմատիկ ընտրանքներից 15-ը վերաբերում են այդ ծրագրերի որևէ առաջադրանքին կամ փուլին: Նախատեսված է ծրագրերի կատարմանը նպաստող ուղարկվելիք հանձնարարականների թիվը հասցնել 250-ի: Այս աշխատանքները կբարձրացնեն հանրապետական ինֆորմացիոն համակարգի հեղինակությունն ու դերը պետական կարևոր նշանակություն ունեցող խնդիրների լուծման գործում:

ՍՄԿԿ XXVI համագումարի և հատկապես ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան նախատեսվում է առավել ընդլայնել գիտական հետազոտություններն ու նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները, մեծացնել արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի ժամանակակից այնպիսի նվաճումների ներդրման մասշտաբները, որոնք կնպաստեն գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելուն և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը: Նպատակային կոմպլեքս ծրագրերի և կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ծրագրերի հաջող կատարումը կխթանի ժողովրդական տնտեսության բոլոր խոշորագույն գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական պրոբլեմների հաջող իրականացմանը:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Մ. Ն. ՍԱՐԳՍՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ շինարարության պատմական խնդիրների իրականացման գործում հսկայական նշանակություն ունի ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության խթանումը։ Սոցիալիստական հասարակության կառուցման ողջ պրակտիկան ցույց է տալիս, որ ժողովրդական տնտեսության զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հիման վրա սոցիալիստական հասարակական հարաբերությունների վերափոխումը կոմունիստականի անմիջականորեն կապված է ժողովրդական մասսաների ստեղծագործական գործունեության համակողմանի ծավալման հետ։ Քննադատելով կապիտալիստական հասարակական հարաբերությունները՝ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ «Սոցիալիզմը ո՛չ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակն, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (ԵԼԺ, հ. 35, էջ 228—229)։

Աշխատավորական մասսաների ստեղծագործական գործունեության դերի բարձրացման մասին լենինյան քաղաքականության իրականացման շնորհիվ այսօր մեր հասարակությունը դարձել է ստեղծագործող մարդկանց հասարակություն։ Սովետական հասարակությունը, շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, աշխատանքի մարդկանց հասարակություն է։ Կուսակցությունը և պետությունը շատ ջանքեր են գործադրել և գործադրում են, որ մարդու աշխատանքը դարձնեն ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալից, հետաքրքրական, ստեղծագործական։ Ահա ինչու, մեր երկրում միլիոնավոր բանվորների և կոլտնտեսականների արտադրական գործունեության ոլորտում ավելի ու ավելի սերտորեն է միահյուսվում մտավոր ու ֆիզիկական աշխատանքը։ Նրանցից շատերը ռացիոնալիզատորներ են ու գյուտարարներ, հոդվածների ու գրքերի հեղինակներ, պետական ու հասարակական գործիչներ։ Նրանք բարձր կուլտուրայի տեր բարեկիրթ մարդիկ են։

Այսօր մեր երկրի գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության, գիտատեխնիկական ընկերությունների կազմակերպություններում ընդգրկված են ավելի քան 20 միլիոն մարդ, որոնց կեսից ավելին բանվորներ են։

Բանվորների ստեղծագործական աշխատանքը տարեցտարի լայնորեն ծավալվում է նաև մեր հանրապետությունում։ Հայաստանի գիտատեխնիկական ընկերության անդամների թիվն անցնում է 115 հազարից, իսկ գյուտարարների ու ռացիոնալիզատորների հանրապետական ընկերության անդամներինը



120 հազար է։ Հանրապետությունում բանվորների գիտատեխնիկական ստեղծագործության զարգացմանը նպաստում են այնպիսի հասարակական ստեղծագործական կազմակերպություններ, ինչպիսին են ձեռնարկություններում գործող գյուտարարների ու ռացիոնալիզատորների սկզբնական կազմակերպությունները, բյուրոները, մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, տնտեսական անալիզի հասարակական բյուրոները, տեխնիկական կոնստրուկտավորման հասարակական բյուրոները և այլն։ Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը հետզհետե նոր, ավելի բարդ խնդիրներ է առաջադրում սովետական բանվորներին, ինժեներներին ու գիտնականներին, խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է նրանց ստեղծագործական ջանքերի միավորում։ Այդ առնչությամբ մեծ դեր են խաղում կոմպլեքսային ստեղծագործական բրիգադները։ 1981 թվականին հանրապետության արտադրական ձեռնարկություններում գործում էին 1.987 այդպիսի բրիգադներ, որոնք միավորում էին 9.044 գիտնականների, ինժեներների ու բանվորների։

Վճռական դեր կատարելով որպես նյութական բարիքներ արտադրողներ՝ սովետական բանվորները, գիտատեխնիկական ինտելիգենցիայի համագործակցությամբ, կարևոր ավանդ են ներդնում նաև արտադրության նյութական տարրերի ստեղծման ու կատարելագործման, արտադրության կառավարման ու աշխատանքի կազմակերպման նորագույն ձևերի ստեղծման ու դրանց հետագա կատարելագործման ասպարեզում։ Այդ առավել ակնհայտ է հատկապես զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ գիտատեխնիկական հեղափոխության ծավալման շնորհիվ գիտությունները թափանցում են արտադրության բոլոր ոլորտները, դառնալով դրանց գործունեության հիմնական պայման։ Բանվորի հետազոտական աշխատանքը պարզունակ տեխնիկականից աստիճանաբար վերաճում է գիտատեխնիկականի՝ վճռական դեր կատարելով արտադրության, գիտատեխնիկական ողջ առաջընթացի համար։

Գիտատեխնիկական ստեղծագործությունն էական փոփոխություն է ենթադրում ժամանակակից բարձր մակարդակի վրա գտնվող արտադրության միջոցներում, դրանց կիրառման ձևերում ու եղանակներում։ Այն մեծ թափ է հաղորդում աշխատանքի արտադրողականության աճին և արտադրության արդյունավետության բարձրացմանը, որը բերում է մեծ տնտեսում։ Միայն գյուտարարությունների ու ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից տասներորդ հնգամյակում տնտեսվել է 29.838 միլիոն ռուբլի (տե՛ս «Народное хозяйство СССР в 1980 г.», М., стр. 99)։

Սովետական բանվորների գիտատեխնիկական ստեղծագործությունը ծավալվում է բազմաթիվ ուղղություններով, որոնցից հիմնականներն են՝ գյուտարարություն և ռացիոնալիզատորական գործունեություն. ինժեներատեխնիկական աշխատողների համագործակցությամբ արտադրության կառավարում և աշխատանքի գիտական կազմակերպում. ստեղծարար գործունեություն՝ կապված գիտատեխնիկական գիտելիքների առաջավոր փորձի, վարպետության տարածման հետ. ստեղծարար գործունեություն՝ արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների ներդրման նպատակով։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունն աննախընթաց արագ տեմպ է հաղորդում գիտության ու տեխնիկայի զարգացմանը, կյանքի կոչելով դրանց վերջին խոսքը հանդիսացող արտադրամիջոցները, տեխնոլոգիական պրոցեսները։ Դրանք նոր են այսօր, սակայն վաղն արդեն, նոր պայմաններում, կհնանան, պիտանի չեն լինի։ Անհրաժեշտ կլինեն նոր, առավել կատարյալ մեքենաներ, սարքեր, ապարատներ, դրանց հետագա կատարելագործում՝ առավել արտադրողական դարձնելու համար։ Միշտ պետք է նկատի ունենալ, որ նոր մեքենաների, հաստոցների կոնստրուկտավորման ժամանակ դրանց ստեղծողները նախատեսում են նոր, առավել օպտիմալ լուծումներ, որոնք կարող են իրականացվել շահագործելիս։

Այս բարդ խնդիրների լուծման համար անհրաժեշտ է ո՛չ միայն ինժեներների ու գիտնականների, այլև բանվոր գյուտարարների ու ռացիոնալիզատորների ստեղծագործական ջանքերի միավորում, ստեղծարար մտքի թռիչք։

Սոցիալիստական հասարակության առաջին իսկ օրից սկսվեց սովետական

բանվոր դասակարգի մասսայական մասնակցությունը նոր տեխնիկայի ստեղծմանը և հին տեխնոլոգիայի կատարելագործմանը, որով սկիզբ դրվեց նոր սոցիալիստական հասարակության մեջ գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժմանը: Այն հատկապես ծավալվեց 1919 թվականի «Գյուտարարության մասին» դեկրետի հրապարակումից հետո, իսկ 20-ական թվականներին երևան եկան սովետական գյուտարարների ու ռացիոնալիզատորների առաջին հայտնագործությունները: Բանվորական շատ գյուտեր համաշխարհային ճանաչում գտան: Այսպիսին էր Ֆ. Պ. Կուզնեցովի ստեղծած՝ ապրանքատար գնացքների աշխարհում առաջին ավտոմատ արգելակիչը, որն անմիջապես պատենտավորվեց արտասահմանյան բազմաթիվ երկրների կողմից (Ֆրանսիա, Իտալիա, Բելգիա և այլն): Նրա գործը շարունակեց Ի. Կ. Մատրոսովը: Անհրաժեշտ էր արագացնել ոսկու, պլատինի արդյունահանման նոր մեքենայի ստեղծումը, որը կոնստրուկտավորել էր բանվոր կոմունիստ Չերեպուխինը: Այն դարձավ բոլոր համանման մեքենաներից լավագույնը աշխարհում:

Հիսունական թվականները բեղմնավոր էին սովետական շատ բանվոր գյուտարարների համար. Ի. Ինոչկինը ստեղծեց աշխարհում առաջին ավտոմատ հաստոցների գիծը, Ի. Լոգվինովը՝ դիստանցիոն կառավարման սարքը, օգտագործելով այն տրակտորների ավտոմատ կառավարման մեջ. մեծ էր Լ. Կ. Լալետինի դերը էլեկտրահաշվիչ մեքենաների ստեղծման գործում:

Սովետական բանվոր գյուտարարների գիտատեխնիկական ստեղծագործության ծավալումն առավել ակնբախ է դառնում զարգացած սոցիալիզմի պայմաններում: Այդ ստեղծագործության առանձնահատկությունն այսօր այն է, որ կրում է մասսայական բնույթ. եթե նախկինում բանվորի հետազոտական աշխատանքն ընթանում էր հիմնականում արտադրության ու տեխնիկայի ոլորտում, այժմ այն ծավալվում է նաև գիտահետազոտական կենտրոններում՝ գիտահետազոտական ինստիտուտներում, փորձնական արտադրություններում, արտադրամասերում, տեղամասերում, լաբորատորիաներում, ուր գիտատեխնիկական բարձր մակարդակ ունեցող հազարավոր հմուտ բանվորներ լուծում են բազմաթիվ բարդ պրոբլեմներ:

Բանվոր գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին հաճախ հատկացվում են ո՛չ միայն խոշոր լաբորատորիաներ. նրանց օգնում են ինժեներատեխնիկական բարձրորակ աշխատողներ, հաճախ էլ գիտնականներ՝ որպես տեսական գծով խորհրդատուներ: Այսպիսի պայմաններում բանվոր ստեղծագործողներն արագ լուծում են իրենց առջև դրված խնդիրները՝ նորի առաջադրումից սկսած մինչև արտադրության մեջ դրա ներդրումը:

Մի քանի տարի առաջ Երևանի սարքաշինական գործարանին առաջարկվեց սկսել գիտահետազոտական ինստիտուտներից մեկում մշակված ցորենի խոնավաչափի սերիական թողարկումը: Կոնստրուկտավորման թերությունների պատճառով սարքերը փորձարկման չէին դիմացել: Բանվոր գյուտարար Մ. Բադալյանը ներկայացրեց սկզբունքորեն նոր կոնստրուկցիա և խոստացավ այն տալ մեկ ամիս հետո: Նրա տրամադրության տակ դրվեցին կոնստրուկտոր, տեխնոլոգ, փականագործներ, խառատ, ֆրեզերող, կոորդինատավորող: Արդեն 18-րդ օրը ներկայացվեց 3 նմուշ: Փորձարկումն անցավ գերազանց: Խոնավաչափն ուղարկվեց Մոսկվա և բարձր գնահատականի արժանանալուց հետո ներկայացվեց մասսայական արտադրության (տե՛ս «Изобретатель и рационализатор», 1978 г., № 7, стр. 29):

Ասում են՝ մեծ տեխնիկան ծնվում է խոշոր գիտահետազոտական ինստիտուտներում: Այդ ճիշտ է, բայց ահա այսպիսի մի փաստ. սարքերի կոնստրուկտավորման ու տեխնոլոգիայի բնագավառում մեր երկրում վերջին երեք տարիների ընթացքում գրանցված բոլոր գյուտերի մոտ երրորդ մասն արված է բանվորների կողմից:

Միխայիլ Աֆանասևիչ Զայցևին՝ Լենինգրադի տաղանդավոր բանվորներից մեկին, ընձեռված են բոլոր պայմանները բեղմնավոր գործունեության համար: Նրան տրամադրված է հատուկ լաբորատորիա՝ բարձրորակ կադրերով: Նրա կոնստրուկտավորած ֆրեզերներն աշխարհում լավագույններից են, որոնց



կարիքն ավելի ու ավելի է զգում ժամանակակից արտադրությունը: Դրանց պահանջն ունեն ՏՓԽ-ի համարյա բոլոր երկրները: Նոր ֆրեզերների սկավառակները 2 անգամ ավելի պակաս կարծրաձույլ են, բայց կտրում են տիտանի համաձուլվածքները: Դրանք բոլորը պատրաստված են մաթեմատիկական ճշգրիտ հաշվարկների ու նյութերի հատկությունների հաշվառման հիման վրա: Մ. Զայցևն այժմ աշխատում է պատրաստել մի սարք, որով ցանկացած խառատային հաստոցը կարելի է վերածել կիսավտոմատի, որի սարքավորումը տևում է 10 րոպե. թողարկվող արտադրանքի ճշգրտությունը 2—3 անգամ ավելի բարձր է, քան «Կրասնի պրոլետարի» գործարանի թողարկած թվային ծրագրավորմամբ կառավարվող հաստոցինը: Բացի դրանից, «զայցևյանները» շատ ավելի էժան են (տե՛ս, նույն տեղը, 1979 թ., № 2, էջ 8):

Սովետական բանվորների գիտատեխնիկական ստեղծագործությունը դրսևորվում է նաև սոցիալիստական արտադրության (ինչպես ողջ ժողովրդական տնտեսության մեջ, նույնպես և առանձին ձեռնարկությունների մասշտաբով) կառավարման ասպարեզում: Այդ ոլորտում նրանց գործունեության նշանակությունը հատկապես մեծ է սեփական ձեռնարկությունների կառավարման մեջ՝ որպես ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական օղակի: Այստեղ նրանք ակտիվ մասնակցում են ձեռնարկությունների աշխատանքների պլանավորմանը, արտադրության կազմակերպմանն ու վերահսկմանը:

Ձեռնարկություններում արտադրության պլանավորումը բավական բարդ պրոցես է, որի իրականացման համար բանվորները գործադրում են իրենց պրակտիկ և տեսական գիտելիքները: Անհրաժեշտ է միջոցառումներ մշակել հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի տնտեսման համար, վերլուծել արտադրանքի ինքնարժեքի և աշխատանքի արտադրողականության հարցերը, սահմանել ձեռնարկության ֆոնդերն ու դրանց բաշխումը, կազմել աշխատանքի արտադրողականության բարձրացման անհատական և խմբային, ինչպես և հանդիպական պլաններ: Գործելով անմիջական արտադրական ոլորտում՝ սովետական բանվորներն առավել պարզորոշ գիտեն այդ պլանների իրականացման ուղիները, արտադրության ներքին ռեզերվների բացահայտման ու օգտագործման գաղտնիքները:

Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեն նրանց առաջարկությունները, որոնք մասսայական բնույթ են կրում հատկապես հասարակական ստուգատեսների ժամանակ: Հասարակական ստուգատեսների աշխատանքներն ակտիվացան՝ հատկապես կապված «Ժողովրդատնտեսության մեջ արտադրության ներքին ռեզերվների օգտագործման բարելավման և խնայողության ռեժիմի ուժեղացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի դիմումի առնչությամբ (1970 թ.):

Արդյունաբերական ձեռնարկությունների շատ բանվորներ հանդես եկան արտադրության սարքավորումների արդյունավետ օգտագործման, հումքի, նյութերի ու էներգիայի խնայողության բազմաթիվ առաջարկություններով: Այսպես, մեր հանրապետությունում ներքին ռեզերվների օգտագործման, հումքի, նյութերի ու էներգիայի խնայողության համամիութենական ստուգատեսին (որ տեղի ունեցավ տասներորդ հնգամյակի վերջին տարում) մասնակցեց արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների 90 տոկոսը: Ստուգատեսի ընթացքում ընդունվեց 26,5 հազար առաջարկություն, որոնցից իրացվեց 21,1 հազարը՝ 63 միլիոն ռուբլի տնտեսական խնայողությամբ: Իսկ ամբողջ տասներորդ հնգամյակում ընդունվեց 103 հազար առաջարկություն. 90 հազարի իրացումից ստացվեց ավելի քան 310 միլիոն ռուբլու տնտեսում:

Արտադրության կառավարման ոլորտում բանվորների գիտատեխնիկական ստեղծագործությունն առավել լայնորեն է դրսևորվում, երբ նրանք մասնակցում են տնտեսական անալիզի հասարակական բյուրոների աշխատանքներին: Այժմ մեր հանրապետությունում գործում են 386 նման բյուրոներ, որոնց նպատակն է բացահայտել արտադրության ներքին ռեզերվները, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, նյութական ռեսուրսների առավել լրիվ օգտագործման ուղիները:

Հիշարժան է Երևանի «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման բյուրոյի փորձը։ Դրա անդամների կեսից ավելին բանվորներ են։ Այստեղ տնտեսական ծառայությունների նախաձեռնությամբ ամեն տարի ուսումնասիրվում և հայտնաբերվում են արտադրամասերում նյութերի գերածախսերի պատճառները, մշակվում են միջոցառումներ դրանց վերացման նպատակով, նախապատրաստած նյութերն օգտագործվում են կազմակերպվող ստուգատեսների ժամանակ։ Ստուգատեսները նպաստել են, որ միավորումում տասներորդ հնգամյակում և 1981 թ. տնտեսվի 4,6 հազար տոննա սև մետաղ, 85 տոննա գունավոր մետաղ, 9,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 6,3 հազար տոննա պայմանական վառելիք։

Հասարակական բյուրոն ակտիվ մասնակցում է այնպիսի միջոցառումների կազմակերպմանը, որոնց նպատակն է արտադրության արդյունավետություն, թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը։ Տասներորդ հնգամյակում պետական որականիշով թողարկվող արտադրանքը կազմել է գործարանի արտադրանքի ընդհանուր ծավալի 62 տոկոսը՝ հնգամյակում նախատեսված 59-ի փոխարեն, իսկ 1981 թվականին՝ 65,8 տոկոսը։

Բանվորների մասնակցությունը արտադրության կառավարմանը ակնբախ է մշտապես գործող արտադրական խորհրդակցություններում։ Այժմ մեր հանրապետությունում գործում են 1.528 այդպիսի խորհրդակցություններ, որոնցում ընդգրկված 60 հազար մարդուց 40 հազարը բանվորներ են։ Միայն 1980 թվականին խորհրդակցություններն ունեցել են 4.118 նիստեր, որոնց մասնակցել են 418 հազար բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ։ Քննարկվել և արտադրության մեջ ներդրվել են մոտ 13 հազար առաջարկություններ, որոնց տնտեսական արդյունքը կազմել է 2,5 միլիոն ռուբլի։

Բանվորների ստեղծարար գործունեությունը հետզհետե ավելի լայնորեն է ծավալվում վերահսկողության ոլորտում։ Հանրապետության արտադրական ձեռնարկություններում ժողովրդական վերահսկողների 60—80 տոկոսը բանվորներ են։

Սովետական բանվորների ստեղծագործության անխզելի մասն է գիտատեխնիկական գիտելիքների, առաջավոր փորձի պրոպագանդումն ու տարածումը։ Դրան մեծապես նպաստում են վարպետության մրցույթները, առաջավոր փորձի ու կոմունիստական աշխատանքի դպրոցները, տեխնիկական պրոգրեսի և տնտեսական գիտելիքների համալսարանները, գիտության ու տեխնիկայի նվաճումները, առաջավոր փորձի ստուգատեսները և այլն։ Կարևոր դեր են խաղում առաջավոր փորձի պրոպագանդման ու ներդրման խորհուրդները։

Գիտատեխնիկական գիտելիքների, առաջավոր փորձի պրոպագանդման ու տարածման գործում հիրավի մեծ ու վճռական է բանվոր գյուտարարների ու ռացիոնալիզատորների դերը։ Նրանք ո՛չ միայն նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման ակտիվ մասնակիցն են, այլև դրանց վերաբերյալ գիտելիքների պրոպագանդողն ու տարածողը։ Այսպես, երբ Մոսկվայի կարծր համաձուլվածքների կոմբինատի բանվոր գյուտարար Վ. Ցու. Կարասևը պատրաստեց իր կտրող հաստոցը, որն ընդունվեց որպես խոշոր գյուտ, անմիջապես ձեռնամուխ եղավ դրա պրոպագանդմանը ինչպես իրենց, նույնպես և այն ձեռնարկություններում, ուր ներդրվում էր այն։ Շատ գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ հաճախակի հանդես են գալիս մամուլում։ Նրանցից շատերն առանձին մենագրությունների հեղինակ են։

Բանվոր գյուտարարները կարևոր նշանակություն են տալիս գյուտարարության գաղտնիքների բացահայտմանը, դրանով իսկ երիտասարդ սերնդին համակում այդ ուղիով ընթանալու ցանկությամբ. «Նորը ծնվում է ո՛չ միայն գիտնականների լաբորատորիաներում, կոնստրուկտորական բյուրոներում, այլև իմացասեր բանվորների որոնումներում»,— գրել է Մոսկվայի անալիտիկ հաշվային մեքենաների գործարանի փականագործ-մեխանիկ, բանվոր գյուտարար Ն. Ս. Եգորովը։

Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում գիտատեխնիկական գիտելիքների, առաջավոր փորձի տարածման մարզում մեծ է ստուգատես



մրցույթների նշանակությունը. այստեղ է, որ ակնհայտ է դառնում բանվորների տեսական և կիրառական գիտելիքների բարձր մակարդակը։

1981 թ. հոկտեմբերին այստեղ կազմակերպված քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների, լաբորատորիաների համամիութենական մրցույթում, որին մասնակցում էին Մոսկվայի, Կալուշի, Ուֆայի, Կեմերովոյի, Ստեռլիտամակի և երկրի այլ քաղաքների արտադրական, գիտաարտադրական միավորումների և գիտահետազոտական ինստիտուտների լաբորատորիաներ, բարձր գնահատվեց «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման բանվոր լաբորանտներ Մարիամ Մարտիրոսյանի և Ջարիկ Ավետիսյանի կատարողական և ստեղծագործական աշխատանքը, նրանք դարձան մրցույթի հաղթողներ։

1982 թ. մայիսին Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում կազմակերպված ստուգատես մրցույթի ժյուրին նշեց, որ նման մրցույթները նպաստում են ո՛չ միայն բանվորների տեսական գիտելիքների մակարդակի բարձրացմանը, այլև առաջավոր փորձի տարածմանը, որը, վերջին հաշվով, հանգեցնում է աշխատանքի արտադրողականության և աշխատանքի կուլտուրայի բարձրացման։ Մրցույթում հաղթող ճանաչվեցին Ռոմելա Պետրոսյանը, Մարիամ Մուրադյանը, Կարինե Ներսիսյանը և Ամալյա Անդրիյանը։

Հանրապետությունում գիտատեխնիկական գիտելիքների պրոպագանդման, առաջավոր փորձի տարածման ավանդական ձևերից են ստեղծագործական գործուղումները, էքսկուրսիաները դեպի համանման ձեռնարկություններ։ Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում 1981 թ. առաջին կիսամյակում կազմակերպված 17 գործուղումներին մասնակցել են 27 մարդ։ Ներդրվել է 15 նորույթ՝ 62.902 ռուբլի տնտեսական արդյունքով։

Առաջավոր փորձի, գիտատեխնիկական գիտելիքների տարածումը մեծ նշանակություն ունի հատկապես նոր կազմակերպվող ու գործարկվող ձեռնարկությունների համար։ Առաջավոր բանվորներից կազմված բրիգադների ստեղծագործական գործուղումների շնորհիվ այդտեղ հաղթահարվում են նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման պրոցեսում ծագած դժվարությունները։ Մի քանի տարի առաջ Ուսոլյե Սիբիրսկոյեում (Իրկուտսկի մարզ) գործարկվեց Երևանի «Նաիրիտ» միավորման գլխադաս քիմիական գործարանին համանման ձեռնարկություն։ Գործը նոր էր, արտադրությունը բարդ։ Նրանց օգնության եկավ «Նաիրիտ»-ի քիմիագործների բրիգադը՝ ճանաչված նորարար, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Սուրեն Պետրոսյանի ղեկավարությամբ։ Բրիգադն ավելի քան երկու ամիս աշխատեց սիբիրյան գործարանում, նրանց հաղորդեց առաջավոր փորձը։ Միայն 1981 թվականին ՀՍՍՀ գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերությունը կազմակերպել է 50 այդպիսի ստեղծագործական գործուղումներ։

Սովետական բանվորներն իրենց հսկայական ավանդն են ներդնում մեր երկրում ՍՄԿԿ-ի առաջադրած գիտատեխնիկական քաղաքականության իրականացման գործում։ Ծավալելով գիտատեխնիկական ստեղծագործական աշխատանք՝ նրանք դառնում են գիտնականների ու ինժեներատեխնիկական անձնակազմի լավագույն օգնականները։ Դրա վառ ապացույցը կարելի է համարել Երևանի ալյումինի գործարանի կոնդենսատորային ֆոլգայի արտադրամասի բանվորների ստեղծարար գործունեությունը։ Գործարանի ինժեներատեխնիկական աշխատողներն իրականացրին ու ներդրեցին էլեկտրաքիմիական եղանակով հատիկավոր ֆոլգայի ստացման գյուտը, որը հիմք հանդիսացավ բանվորների նորանոր գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների համար։ Դրանց ներդրումը կապված էր մի շարք դժվարությունների հետ, որոնց հաղթահարման գործում իր ավանդն ունեցավ նաև արտադրամասի զոդող, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Անդրանիկ Մկրտչյանը։

«Նաիրիտ» ԳԱՄ-ի գլխադաս գործարանում նոր կոմպրեսորը ներդնելիս նկատվեցին որոշակի թերություններ, որոնց վերացման համար մեծ նշանակություն ունեցավ «Ցածր ջերմաստիճանի դեպքում ֆրիոնի կոմպրեսորների փականների ձևափոխումը և նրա նշանակությունը կոմպրեսորների անխափան աշխատանքի համար» առաջարկությունը, որի հեղինակն էր ավագ մե-

քենավար Յուրա Բաբայանը։ Առաջարկության կիրառման շնորհիվ միավորման մեխանիկական ծառայությունը դուրս եկավ ուԹամսյա փակուղուց։

Ներդրման գործը ինչպես հարկն է կազմակերպելու համար ձեռնարկություններում հիմնվում են փորձարարական բազաներ, արտադրամասեր, տեղամասեր, լաբորատորիաներ, խմբեր, որոնք զգալի չափով դյուրացնում են այդ պրոբլեմի լուծումը։

Արտադրության մեջ նոր տեխնիկայի արմատավորման համար հսկայական է ներդրման հասարակական արտադրամասերի դերը։ Մեր հանրապետությունում նման արտադրամաս առաջինը ստեղծվեց Երևանի կոմպրեսորների գործարանում։ Հարյուրավոր բանվորներ ու մասնագետներ ցանկություն հայտնեցին մասնակցելու գյուտերի իրականացման այդ կարևոր գործին։ Քսանհինգ բանվորներից բաղկացած ներդրման հասարակական արտադրամասը գլխավորում է գործարանի վետերան, Լենինի շքանշանակիր, դարբին Երջանիկ Հակոբյանը։ Այստեղ արագացվեց ո՛չ միայն գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումը (գործարանում ներդրվում է նորամուծությունների 98,7 տոկոսը), այլև երևան եկավ բանվոր գյուտարարների ու ռացիոնալիզատորների մի ամբողջ սերունդ։

Կոմպրեսորագործների օրինակին հետևեցին Հայաստանի շատ քաղաքների արդյունաբերական ձեռնարկություններ՝ իրենց մոտ ստեղծելով ներդրման հասարակական արտադրամասեր (Լենինական, Կիրովական, Ալավերդի և այլն)։ Այժմ հանրապետությունում գործում են 80-ից ավելի ներդրման հասարակական արտադրամասեր։

Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև եղած տարբերությունների հաղթահարման գործուն միջոցներից է բանվորների գիտատեխնիկական ստեղծագործությունը, որը պետք է ամեն կերպ խԹանել, խրախուսել այս ասպարեզում աչքի ընկնող առաջավորներին, ամենուր ծավալել գյուտարարական ու ռացիոնալիզատորական լայն շարժումը։

Բարձր պարտավորություններ են ստանձնել գյուտարարներն ու ռացիոնալիզատորները. նրանք որոշել են 1983 թ. իրենց առաջարկությունների ներդրման հաշվին տնտեսել 70 միլիոն ռուբլի՝ 1982 թ. 65 միլիոնի փոխարեն։ Շեշտելով այն հանգամանքը, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն անհրաժեշտ է դուրս բերել գիտության ու տեխնիկայի առաջավոր բնագծեր, ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ այսօր վճռական, առավել սուր տեղամասը գիտական հայտնագործությունների և գյուտերի ներդրումն է։ Հարկավոր է գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները ավելի սերտորեն միացնել արտադրության հետ։ Կոմունիստական կուսակցության այս առաջադրանքի իրականացումը պահանջում է գիտնականների, տեխնիկական ողջ ինտելիգենցիայի ու բանվորների ստեղծարար ջանքերի միավորում։

---

# ԽՆԱՅՈՂԱԲԱՐ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԲՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ս. Ս. ԹՈՒՄԱՆՅԱՆ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ սոցիալ-տնտեսական և քաղաքական բնույթի բազմաթիվ հարցերի հետ մեկտեղ համակողմանի և ամենայն խորությամբ քննարկվեցին նաև բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության խնդիրները։

Համագումարում ընդունված ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում էկոլոգիայի հարցերը դասվում են այնպիսի կարևորագույն պրոբլեմների շարքում, որոնց լուծմամբ է պայմանավորված սովետական հասարակության հետագա առաջընթացը։ Հիմնական ուղղություններում նախատեսվում է, մասնավորապես, բարելավել գյուղատնտեսական հողատարածությունների պահպանությունը, ավելի կոմպլեքսայնորեն յուրացնել օգտակար հանածոների հանքավայրերը՝ կորուստներ թույլ չտալով հանածոների հանույթի և վերամշակման ժամանակ, արագացնել ջրապահպանական օբյեկտների շինարարությունը Սև, Ազովի, Բալթիկ, Կասպից ծովերի ավազաններում և երկրի կարևորագույն արդյունաբերական շրջաններում, կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները և տրանսպորտային միջոցները՝ նպատակ ունենալով կրճատել վնասակար նյութերի արտանետումը շրջակա միջավայր, ընդլայնել պաշտպանական անտառաբուծությունը, շարունակել արգելանոցային տարածությունների և ազգային զբոսայգիների գիտականորեն հիմնավորված ցանցի ընդլայնումը, միջոցներ ձեռնարկել վայրի կենդանիների գլխաքանակի ավելացման և բնական ջրամբարներում ու ջրավազաններում արժեքավոր ձկնատեսակների վերարտադրության համար։

Այս հարցերի հրատապությունն այսօր պայմանավորված է նրանով, որ մոլորակի մասշտաբով բնական հարստությունների ինտենսիվ, ոչ խելամիտ շահագործման հետևանքով դրանց զգալի մասին արդեն անհետանալու վտանգ է սպառնում։ Իսկ աղտոտված շրջակա միջավայրը բացասաբար է անդրադառնում ինչպես ողջ օրգանական աշխարհի, նույնպես և մարդկանց առողջության վրա։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը շեշտել են, որ բնության գիշատիչ շահագործումը հատուկ է բոլոր անտագոնիստական հասարակարգերին, ընդ որում կապիտալիզմի օրոք այն հասնում է ահավոր չափերի, քանի որ կապիտալիստական արտադրության նպատակը գերշահույթն է։ Դրա վկայությունը էկոլոգիական ճգնաժամն է, որն ընդգրկել է իմպերիալիստական խոշոր պետությունները՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Ճապոնիան, Իտալիան, ԳՖՀ-ն և այլ երկրներ։ Այս ճգնաժամի սոցիալ-տնտեսական հիմքը արտադրամիջոցների և բնական ռեսուրսների մասնավոր, կապիտալիստական սեփականությունն է, որը պայմանավորում է բնության անպլանային, գիշատիչ շահագործումը։

Ֆ. Էնգելսը նշել է, որ բնության վերափոխման ժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել նաև անուղղակի և հեռավոր հետևանքները, միաժամանակ ընդգծելով, որ այդ հնարավոր չէ մինչսոցիալիստական արտադրաեղանակի ժամանակ։ «Մինչ այժմ գոյություն ունեցող բոլոր արտադրաեղանակները,— գրել

է նա,— նկատի են ունեցել հասնել աշխատանքի միայն մերձավորագույն, ամենից ավելի անմիջական օգտակար էֆեկտների։ Իսկ հետագա հետևանքները, որոնք ավելի ուշ են միայն երևան գալիս և ներգործում են աստիճանական կրկնության ու կուտակման շնորհիվ, բոլորովին հաշվի չէին առնվում» (Բնության դիալեկտիկա, «Հայաստան» հրատ., 1969, էջ 180)։ Կամ «Իր արտադրաուժերը միասնական մի ընդհանուր պլանով ներդաշնակ զուգորդման մեջ դնելու ընդունակ հասարակությունը միայն կարող է... վերացնել օդի, ջրի և հողի ներկա թունավորումը» (Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967, էջ 398)։

Բնության օգտագործման սոցիալիստական եղանակը կապիտալիստականից տարբերվում է ամենից առաջ նրանով, որ գիտակցաբար կարգավորում, ուղղություն է տալիս բնության նկատմամբ մարդու գործունեությանը և հնարավոր է կանխել այդ գործունեության անցանկալի հետևանքները։ Կ. Մարքսը գրել է. «...սոցիալիզացված մարդը, միավորված արտադրողները բանականորեն կարգավորում են նյութերի իրենց այս փոխանակությունը բնության հետ, դնում իրենց ընդհանուր վերահսկողության տակ, փոխանակ որ դա իբրև կույր ուժ գերիշխի նրանց վրա. դա կատարում են ուժի նվազագույն ծախսումով և այնպիսի պայմաններում, որոնք ամենից ավելի արժանավոր են իրենց մարդկային բնությանը և համապատասխան են նրան» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, 2-րդ մաս, գիրք 3-րդ, Երևան, 1949, էջ 360)։

Բնության նկատմամբ նոր վերաբերմունքի տնտեսական հիմքը արտադրամիջոցների և բնական ռեսուրսների համաժողովրդական սեփականությունն է, ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը։ Դրանք օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծում բնության պահպանության և ռացիոնալ օգտագործման, դրա նկատմամբ համապատասխան վերաբերմունքի ձևավորման համար։ Մարքսը գրել է. «Նույնիսկ մի ամբողջ հասարակություն, ազգ, մինչև անգամ հենց համաժամանակյա բոլոր հասարակությունները միասին վերցրած՝ հողի սեփականատերը չեն։ Նրանք հողին տիրում են միայն, նրանից օգտվում են, և իբրև... ընտանիքի պատվական հայրեր, նրանք պետք է հողը բարելավված վիճակում ժառանգություն թողնեն հաջորդ սերունդներին» (նույն տեղը, էջ 314)։

Ելնելով մարքսիստական այն դրույթից, որ բնությունը հասարակության գոյության և զարգացման հիմքն է, Վ. Ի. Լենինը կարևոր ուշադրություն էր նվիրում բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերին։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին նրա ղեկավարությամբ և ակտիվ մասնակցությամբ հրապարակվել են բնապահպանման բազմաթիվ դեկրետներ և այլ փաստաթղթեր։

Բնության պահպանության և ռացիոնալ օգտագործման վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների դրույթները հետագայում զարգացվեցին ՍՄԿԿ ծրագրում, ՍՍՀՄ սահմանադրության մեջ, ՍՄԿԿ XXIV, XXV, XXVI համագումարներում, կուսակցության ու կառավարության մի շարք որոշումներում։ Գիտականորեն հիմնավորված և տևական ժամանակաշրջանի համար նախատեսված բնության պահպանության ծրագրային փաստաթղթեր են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին» (1972 թ.) և «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու լրացուցիչ միջոցառումների մասին» (1978 թ.) որոշումները։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մի շարք որոշումներ են հրապարակել նաև առանձին բնական ռեգիոնների ու բնական օբյեկտների պահպանության վերաբերյալ— «Զմաքրված հոսքաջրերով Վոլգա և Ուրալ գետերի ավազանների աղտոտումը կանխելու միջոցառումների մասին», «Աղտոտումից Բալթիկ ծովի ավազանի պահպանումն ուժեղացնելու միջոցառումների մասին», «Սև և Ազովի ծովերի ավազանների աղտոտումը կանխելու միջոցառումների մասին», «Բայկալ լճի բնական ռեսուրսների պահպանության և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին», ինչպես նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի «Բնության պահպանության հետագա բարելավման և բնական



ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» որոշումը, հողի, ջրի, ընդերքի, անտառների, մթնոլորտային օդի և կենդանական աշխարհի պահպանության վերաբերյալ օրենսդրությունները։

ՍՄԿԿ XXVI համագումարը որակապես նոր աստիճան էր բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության միջոցների ձեռնարկման առումով։ Համագումարի փաստաթղթերում նշված են կուսակցության առաջադրած էկոլոգիական խնդիրների լուծման հիմնական ասպեկտները։ Գյուղատնտեսության ղեկավար մարմիններին հանձնարարված է հասնել հողագործության կուլտուրայի հետագա բարձրացման, ապահովել հողային ռեսուրսների պահպանությունն ու ռացիոնալ օգտագործումը, ուժեղացնել պայքարը հողերի էրոզիայի դեմ, արագացնել հողերի ռեկուլտիվացիայի աշխատանքների տեմպերը և այլն։

Նախատեսվում է ընթացիկ հնգամյակում հացահատիկի տարեկան միջին արտադրությունը հասցնել 238—243 միլիոն տոննայի, ապահովել կերի և մյուս մթերքների արտադրության հետագա աճը։ Այս խնդիրները լուծելու համար պահանջվում է շարունակել գյուղատնտեսության ինտենսիվացման կուրսը։

1981—1985 թվականներին պետական կապիտալ ներդրումների հաշվին շահագործման կհանձնվեն 3,4—3,6 միլիոն հեկտար ոռոգելի և 3,7—3,9 միլիոն հեկտար ցամաքեցված հողեր, կջրարբիացվեն 26—28 միլիոն հեկտար արոտավայրեր։ Միջոցառումներ կիրականացվեն ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործման, գոյություն ունեցող մելիորատիվ սիստեմների վերակառուցման նպատակով։ Կշարունակվի գյուղատնտեսության տեխնիկական վերազինումը նոր տեխնիկայի բազայի վրա։ Այդ նույն ժամանակամիջոցում գյուղատնտեսությունը կստանա 1,870 հազար տրակտոր, 1,450 հազար բեռնատար ավտոմոբիլ, հացահատիկի 600 հազար կոմբայն և գյուղատնտեսական այլ տեխնիկա։ Զգալիորեն կբարելավվեն գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը, պահպանումն ու նորոգումը։

Հետևողականորեն աշխատանքներ կծավալվեն հողագործության և անասնապահության քիմիացման միջոցների մատակարարումների ավելացման և դրանց ավելի ռացիոնալ օգտագործման համար։ 1985 թվականին գյուղատնտեսությանը կմատակարարվեն առնվազն 115 միլիոն տոննա պայմանական միավոր հանքային, 5 միլիոն տոննա քիմիական պարարտանյութեր և այլն։ Լայնորեն կօգտագործվեն նաև օրգանական պարարտանյութերը։ Տնտեսությունները կստանան անհրաժեշտ մեքենաներ ու գործիքներ։ Տասնմեկերորդ հնգամյակի վերջում օրգանական պարարտանյութերի կիրառման ծավալը կհասնի 1—1,2 միլիարդ տոննայի։

Անտառային տնտեսության մեջ հարկ է բարձրացնել անտառների արդյունավետությունը, ավելի ռացիոնալ օգտագործել անտառային ռեսուրսները։ Կբարելավվի անտառների որակական կազմը, 8 միլիոն հեկտար տարածության վրա կաճեցվեն արժեքավոր ծառատեսակների տնկիներ։ Կարմատավորվեն անտառաճեցման արդյունաբերական մեթոդներ, կուժեղացվի անտառների պահպանությունը հրդեհներից և վնասակար միջատներից ու հիվանդություններից։ Կարևորագույն խնդիր է քաղաքների, ավանների և դրանց շուրջը նոր կանաչ գոտիների ստեղծումը և եղածների պահպանումն ու բարեկարգումը։ 1981—1985 թվականներին արագ տեմպերով կզարգանա ձկնաբուծությունը լճակային, լճային և այլ տնտեսություններում։ Դրանցում ձկան արտադրությունը կավելանա 1,8—2 անգամ։

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Տիխոնովը, խոսելով ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին, շեշտեց, որ առաջիկա ժամանակաշրջանում մեր տնտեսական շինարարության մեջ հատկապես կարևոր նշանակություն են ձեռք բերում արտադրանքի նյութատարության իջեցումը, հումքի, վառելիքի, էներգիայի, մետաղի, ցեմենտի, հանքային պարարտանյութերի և այլ նյութերի խնայողական ծախսումը։ Չի կարելի հաշվի չառնել,— այնուհետև նշեց նա,— որ հումքային ու վառելիքաէներգետիկ ռեսուրսների հանույթի ծավալի պահպանումը և առավել մեծա-

ցումը գնալով թանկանում են։ Դրանց պահանջմունքներն ապահովելու համար հարկ է լինում գնալ հյուսիսի և արևելքի սակավաբնակ ու դժվարամատույց շրջանները։ Յուրաքանչյուր տոննա նավթի, ածխի, մետաղի տնտեսումից ստացվող արդյունքը դառնում է ավելի ու ավելի ծանրակշիռ, իսկ դրանց ոչ ռացիոնալ օգտագործումից առաջացող վնասը՝ ավելի ու ավելի շոշափելի (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 176)։

Տասնմեկերորդ հնգամյակի համար սահմանվել են մետաղի, անտառանյութերի, ցեմենտի և այլ նյութերի տնտեսման առաջադրանքներ։ Երկրի արտադրական պոտենցիալն առավել արդյունավետ օգտագործելու անհրաժեշտության մասին հատկապես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, այնտեղ նշվեց, որ նոր ձևով պետք է մոտենալ նաև արդյունահանման ճյուղերին։ Արդեն այսօր դրանց ընկնում է կապիտալ ներդրումների առյուծի բաժինը, իսկ չէ որ հումքի և էներգատու նյութի պահանջարկը կաճի։ Հետևաբար, ամբողջ ժողովրդական տնտեսության հաջողությունները մեծապես կախված կլինեն հանույթի արդյունաբերության արդյունավետության բարձրացումից։ Դրա ուղին գիտատեխնիկական պրոգրեսի արագացումն է, օգտակար հանածոների կոմպլեքսային, խոր վերամշակումը, երկրորդային ռեսուրսների ավելի լայն կիրառումը։

Այդ խնդիրների հրատապությունը կապված է այն բանի հետ, որ խոսքը վերաբերում է անվերականգնելի հարստություններին։ Դրանց ճիշտ, խնայողական օգտագործման համար մենք պատասխանատվություն ենք կրում ո՛չ միայն ներկա սերնդի, այլև գալիք սերունդների հանդեպ։ Եվ դա ոչ ոք իրավունք չունի մոռանալու։

Տասնմեկ և տասներկուերորդ հնգամյակներում ՍՍՀՄ էլեկտրաէներգիայի արտադրությունը հիմնականում ավելանալու է միջուկային վառելիքի, հիդրոէներգիայի և երկրի արևելյան շրջանների ածխի օգտագործման հաշվին։ Նախատեսվում է 1985 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել 1550—1600 միլիարդ կիլովատ-ժամի, այդ թվում՝ ատոմային էլեկտրակայաններում՝ 220—225 միլիարդ, հիդրոէլեկտրակայաններում՝ 230—235 միլիարդ կիլովատ-ժամի։ ՍՍՀՄ եվրոպական մասում էլեկտրաէներգիայի արտադրության աճը հիմնականում տեղի է ունենալու ատոմային և հիդրոէլեկտրակայաններում։ Իսկ արևելյան շրջաններում նախատեսվում է խոշոր ջերմաէլեկտրակայաններ կառուցել Կանսկ—Աչինսկի և Էքիբաստուզի ավազաններում բաց եղանակով արդյունահանվող էժանագին ածխի բազայի վրա։

Նավթարդյունահանման արդյունաբերությունն արագ տեմպերով կզարգանա Արևմտյան Սիբիրի շրջաններում, Ղազախական ՍՍՀ-ում և երկրի եվրոպական մասի հյուսիսում։ Նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակի վերջում նավթի հանույթը հասցնել 620—645 միլիոն տոննայի, գազինը՝ 600—640 միլիարդ խորանարդ մետրի։ Կկրճատվի նավթի սպառումը որպես վառելիքի, այն կփոխարինվի գազով և ածխով։

Որպես տնտեսական ու քաղաքական մեծ նշանակություն ունեցող խնդիր, կուսակցությունը կարևորում է հատկապես Արևմտյան Սիբիրի բնական ռեսուրսներն արագ տեմպերով յուրացնելու անհրաժեշտությունը։ Այդ ռեգիոնի հանքավայրերը հսկայական պաշարներ ունեն և երկար տարիներ կարող են ապահովել ինչպես երկրի ներքին պահանջմունքները, նույնպես և արտահանությունը։ Արևմտյան Սիբիրում գազի և նավթի հանույթը, երկրի եվրոպական մաս դրանց փոխադրումը դառնում են տասնմեկերորդ, ինչպես նաև տասներկուերորդ հնգամյակների էներգետիկ ծրագրի կարևորագույն օղակները։

Տասնմեկերորդ հնգամյակում և ապագայում կարևոր նշանակություն է ունենալու ԲԱՄ-ի ռեսուրսների օգտագործումը։ «ԲԱՄ-ի գոտում բնական ռեսուրսները տնտեսական շրջանառության մեջ ակտիվորեն ներգրավելու համար,— իր զեկուցման մեջ նշել է Ն. Ա. Տիխոնովը,— իհարկե, կպահանջվի ոչ մեկ տարի։ Բայց արդեն այժմ ՍՍՀՄ պետպլանը մինիստրությունների և գերատեսչությունների, Ռուսաստանի Ֆեդերացիայի Մինիստրների խորհրդի հետ համատեղ պետք է ավելի ակտիվորեն կատարեն ԲԱՄ-ի գոտում գտնվող կոքսացող ածխի, երկաթի, գունավոր և հազվագյուտ մետաղների և այլ օգտակար



հանածոների բազմահարուստ հանքավայրերի, այդ թվում Ուդոկանի պղնձի եզակի հանքավայրի, Անդրբայկալյան շրջանի, Հարավային Յակուտիայի և Հեռավոր արևելքի անտառահումքային ռեսուրսների յուրացման ծավալուն ծրագրի նախապատրաստումը։ Այդ ծրագիրը պետք է հիմնավորի և սահմանի ԲԱՄ-ի գոտու բնական հարստությունները տնտեսական շրջանառության մեջ ներգրավելու հերթականությունը, նախատեսի այդ խոշոր ռեգիոնի զարգացման ռացիոնալ կառավարման ստեղծում և այլ հարցեր» (Նույն տեղը, էջ 195—196)։

Զեկուցման մեջ նշված է նաև, որ երկրի տնտեսական պոտենցիալի զարգացումը մեծապես որոշվում է հանքահումքային ռեսուրսների վիճակով։ Ուստի նոր հնգամյակում առավել ընդլայնվելու են երկրաբանական-հետախուզական աշխատանքները։ Մեր պարտքն է, որքան էլ մեծ լինեն բնական ռեսուրսների մեր պաշարները, մշտապես որոնել դրանց արդյունահանման և խնայողական օգտագործման առավել ռացիոնալ ուղիներ։

Բնության պահպանության և բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործման ու վերարտադրման գործում կարևոր նշանակություն ունի արտադրուժերի ռացիոնալ տեղաբաշխումը։ Արևելյան և Հյուսիսային շրջաններում, Սիբիրում և Ղազախստանում կստեղծվեն վառելիքաէներգետիկ և հանքահումքային բազաներ։ Այդ շրջանները հետզհետե առավել մեծ նշանակություն կըստանան երկիրը նշված ռեսուրսներով ապահովելու գործում։

Ինչպես նշվեց վերևում, առանձնապես մեծ է Արևմտյան Սիբիրի դերը։ Հիմնական ուղղություններում ասված է. «Ապահովել Արևմտասիբիրյան տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի հետագա զարգացումը։ 1985 թվականին այստեղ նավթի հանույթը, ներառյալ գազի կոնդենսատինը, հասցնել 385—395 միլիոն տոննայի, գազինը՝ 330—370 միլիարդ խորանարդ մետրի։ Արտադրական կարողություններ գործարկել Տոբոլսկի նավթաքիմիական կոմբինատում, Տոմսկի քիմիական գործարանում և Սուրգութի պետական շրջանային էլեկտրակայաններում։ Ծավալել քիմիական ու նավթաքիմիական սարքավորումների արտադրության գործարանի շինարարությունը» (Նույն տեղը, էջ 301—302)։

Համագումարը հաստատեց շրջակա միջավայրի պահպանության վերաբերյալ հիմնական միջոցառումները։ Պետք է բարելավվի արտազատվող գազերը վնասակար խառնուրդներից մաքրելու գործը։ Ավելացվելու է փոշի և գազորսիչ բարձրարդյունավետ ապարատների, ջրամաքրիչ սարքավորումների, ինչպես նաև շրջակա միջավայրի վիճակի վերահսկողության սարքերի ու ավտոմատ կայանների թողարկումը։ Մեծացվելու են ջրերի շրջանառու և կրկնօգտագործման սիստեմների հզորությունները։ Ավելի լայնորեն են ներդրվելու անթափոն տեխնոլոգիական պրոցեսները։

Շինանյութերի արտադրության մեջ լայնորեն կօգտագործվեն ջերմաէլեկտրակայանների մոխիրն ու խարամը, արդյունաբերության հանքարդյունահանման ճյուղերի և ածխահարստացուցիչ ֆաբրիկաների թափոնները, որի շնորհիվ շրջակա միջավայրը զերծ կմնա դրանցով աղտոտվելուց։

Շրջակա միջավայրի վրա տրանսպորտի վնասակար ներգործությունը նվազեցնելու նպատակով նախատեսվում է ավտոմոբիլային արդյունաբերության մեջ զարգացնել դիզելային շարժիչներով բեռնատար ավտոմոբիլների, ներքաղաքային փոխադրումների համար փոքրատոննաժ բեռնատար էլեկտրամոբիլների արտադրությունը։

Ն. Ա. Տիխոնովի զեկուցման մեջ նշված է, որ նախատեսված է առաջիկա տարիներին սկսել խոշոր քաղաքների կենտրոնացված ջերմամատակարարման սկզբունքորեն նոր ուղղության իրագործումը։ Խոսքը վերաբերում է ջերմամատակարարման մի քանի հզոր ատոմային կայանների կառուցմանը, որոնցից յուրաքանչյուրը կկարողանա ջերմությամբ հուսալիորեն ապահովել բազմահազար բնակչություն ունեցող քաղաքը, ընդմին չաղտոտելով շրջակա միջավայրը։

Ութսունական թվականներին անխուսափելիորեն աճելու են արևելքի և հյուսիսի յուրացման, ինչպես նաև շրջակա միջավայրի պահպանության նպատակով հատկացվող կապիտալ ներդրումները։

*Համագումարը գիտնականներին առաջարկեց ուսումնասիրել շրջակա միջավայրի պահպանության, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և վերարտադրության պրոբլեմները։ Բնական և տեխնիկական գիտությունների բնագավառում, մասնավորապես, խնդիր դրվեց ջանքերը կենտրոնացնել հողի, կենսոլորտի, համաշխարհային օվկիանոսի, շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմների լուծման վրա։*

*Մեծ են անելիքները նաև բնության վերափոխման բնագավառում։ Հայտնի է, որ Սովետական Միությունը ջրային հարուստ ռեսուրսներ ունի, սակայն դրանք երկրի տերիտորիայում տեղաբաշխված են շատ անհամաչափ։ Եվրոպական մասին, որտեղ ապրում է բնակչության մոտ 75 տոկոսը, բաժին է ընկնում գետային հոսքի միայն 22 տոկոսը։ Այս առնչությամբ համագումարը համապատասխան կազմակերպություններին ցուցում տվեց նախապատրաստական աշխատանքներ սկսել հյուսիսային գետերի հոսքի մի մասը Վոլգա գետի ավազանն ուղղելու համար, ինչպես նաև շարունակել գիտական ու նախագծային մշակումները Սիբիրի գետերի ջրերը Միջին Ասիա և Ղազախստան ուղղելու համար։*

*Բնության պահպանության գործում մեծ է միջազգային համագործակցության դերը։ Հիրավի, կյանքը պահանջում է բոլոր պետությունների բեղմնավոր համագործակցություն հանուն յուրաքանչյուր ժողովրդի և ամբողջ մարդկության առջև ծառացած խաղաղ, կոնստրուկտիվ խնդիրների լուծման։*

*Բնության պահպանության և բնական ռեսուրսների խելացի օգտագործման հարցերը սերտորեն առնչվում են խաղաղության պահպանության և սպառազինությունների մրցավազքի դադարեցման հարցերի հետ։ Ռազմական արդյունաբերությունն աղտոտում է շրջակա միջավայրը, կլանում արժեքավոր օգտակար հանածոների մեծ մասը։ Բնության վրա ծանր հետևանքներ են թողնում միջուկային զենքի փորձարկումները, սպառազինությունների մրցավազքը, որը հղի է պատերազմի վտանգով։ Խաղաղության պահպանումն այսօր դարձել է հրատապ խնդիր։*

*«Մոլորակը առանց այն էլ արդեն գերհագեցած է մասսայական ոչնչացման զենքով,— ասված է 1981 թվականի հունիսի 23-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի՝ աշխարհի պառլամենտներին ու ժողովուրդներին ուղղված դիմումում։— Բայց այդ զենքի կուտակումը շարունակվում է, ստեղծվում է ավելի ու ավելի կատարելագործված ու կործանիչ զենք...*

*Խաղաղությունը մարդկության ընդհանուր հարստությունն է, իսկ մեր ժամանակներում՝ նաև նրա գոյատևման առաջնագույն պայմանը։ Միայն համատեղ ջանքերով խաղաղությունը կարող է և պետք է պահպանվի և հուսալիորեն ապահովվի»։*

*Եթե սպառազինություններին հատկացվող միջոցների մի մասն անգամ տրամադրվի բնության պահպանությանը, ապա հնարավոր կլինի զգալի չափով բարելավել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և վերարտադրման ու շրջակա միջավայրի պահպանության գործը։*

*Այսպիսով, բնության պահպանությունը և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը եղել և մնում են կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության մշտական հոգածության առարկան, նրանց գործունեության բաղկացուցիչ մասը։*

---



# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԷՍԷՌՆԵՐԻ ԴԵՄ 1917 ԹՎԱԿԱՆԻՆ

**Ս. Հ. ՄԵԼԻՔՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ կարևորագույն պրոբլեմներից է քաղաքական կուսակցությունների պատմության ուսումնասիրությունը։ Ղեկավարվելով մարքս-լենինյան տեսության այն կարևոր դրույթով, որ «դասակարգերի քաղաքական պայքարի ամենաամբողջական, լիակատար ու ձևավորված արտահայտությունը կուսակցությունների պայքարն է» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 12, էջ 164), սովետական պատմաբանները երկարատև և բեղմնավոր աշխատանք են կատարել այդ պրոբլեմի շատ հարցերի պարզաբանման նպատակով։

Քաղաքական կուսակցությունների պատմության ուսումնասիրման ընդհանուր համակարգում իրենց ուրույն տեղն ունեն «միջին դասերի» շահերն արտահայտող մանրբուրժուական, ոչ պրոլետարական կուսակցությունները։ Այդ կուսակցությունների գաղափարական ու պրակտիկ գործունեության ուսումնասիրությունը, հատկապես XX դարի սկզբում ամբողջ աշխարհն ալեկոծած ռուսական երեք հեղափոխությունների ժամանակաշրջանում, հնարավորություն է ընձեռում ռեալ պատկերացում կազմելու մեր երկրում մանրբուրժուական սոցիալիզմի էվոլյուցիայի, նրա կրախի մասին։

Այսօր էլ հրատապ է Կ. Մարքսի այն դրույթը, որ «մանր բուրժուազիան կհանդիսանա բոլոր գալիք սոցիալական հեղափոխությունների բաղկացուցիչ մասը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր**, հ. 2, «Հայպետհրատ», 1950, էջ 583)։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցման դարաշրջանում դեռևս պահպանվում է մանրբուրժուական գաղափարախոսության սոցիալական հիմքը, հետևաբար՝ մեր օրերում նույնպես հնարավոր է մանրբուրժուական հեղափոխականության երևան գալը, նրա «հեղափոխական ֆրազների» վնասակարությունը ժամանակակից հեղափոխական պրոցեսի զարգացման, տարբեր դասակարգերի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի, սոցիալիզմի կառուցման և այլ հարցերի նկատմամբ։ Ուստի ներկայումս գաղափարական սուր պայքարի պայմաններում հույժ կարևոր է մանրբուրժուական հեղափոխականության դեմ բոլշևիկների կուսակցության պայքարի հարուստ փորձի ուսումնասիրությունը։

Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման և իրականացման ժամանակաշրջանում բոլշևիկների կուսակցության գործունեությունն ուղեկցվում էր ոչ պրոլետարական կուսակցությունների դեմ անզիջում պայքարով, որը նպաստում էր սոցիալիստական հեղափոխության քաղաքական բանակի ստեղծմանը։ Հասարակական մեծ հետաքրքրություն է ներկայացնում բոլշևիկյան կուսակցության պայքարի փորձի ուսումնասիրությունն ամենամասսայական մանրբուրժուական սոցիալիստ-հեղափոխականների՝ էսէռների կուսակցության դեմ, որը Վ. Ի. Լենինի բնորոշմամբ «ամենից ավելի էր արտահայտում մանրբուրժուական հեղափոխականության միտումները» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 18)։ Ինչպես հայտնի է, սոցիալիստ-հեղափոխականների կուսակցությունը Ռուսաստանում ստեղծվել է 1902 թվականին։ Պատմական նոր իրադրության մեջ այդ կուսակցությունը փորձում էր վերականգնել ձախողված նարոդնիկության ավանդույթները, ձգտում էր իրագործել մանրբուրժուական, գյուղացիական սոցիալիզմ և, Վ. Ի. Լենինի գնահատմամբ, նարոդնիկությունից դեպի մարք-

սիզմ տանող ճանապարհի էտապներից մեկն էր:

Էսէռական կուսակցության գործունեությունն Անդրկովկասում մինչև այժմ առանձին, ամբողջապես չի ուսումնասիրվել: Մինչդեռ այդ կուսակցությունը լիբերալ բուրժուազիայի հետ իր համաձայնողականությամբ զգալի դեր է խաղացել Անդրկովկասի հասարակական-քաղաքական կյանքում, մասնավորապես 1917—1918 թվականներին, լրջորեն խանգարելով սոցիալիստական հեղափոխության զարգացման գործին:

Էսէռական առաջին կազմակերպությունները Անդրկովկասում հանդես են եկել 1903—1905 թթ. Բաքվում, Թիֆլիսում, Երևանում և այլուր: Ռուսական առաջին հեղափոխության տարիներին էսէռների դիրքը շատ թույլ էր Անդրկովկասում: Դա հիմնականում բացատրվում էր երկրամասում անցյալ դարի վերջերին և XX դարի սկզբին ոչ պրոլետարական կուսակցությունների երևան գալով, որոնք թեպետև հիմնականում ազգայնական միտում ունեին, բայց ստանձնել էին նաև Ռուսաստանում գործող էսէռական-նարոդնիկական կուսակցությունների ֆունկցիաները: «Ռուս սոցիալիստ-հեղափոխականներն Անդրկովկասում,— գրել է Ա. Մռավյանը,— ունեցել են սոցիալապես հարազատ քույր կուսակցություններ— հայ դաշնակցականների, վրաց ֆեդերալիստների և մենշևիկների կուսակցությունները, որոնք հաջողությամբ կատարել են իրենց մեծ քրոջ դերը Անդրկովկասի սահմաններում» (Ա. Մռավյան, **Հոդվածներ ու ճառեր** (1913—1929), «Հայպետհրատ», 1961, էջ 120):

Այսուհանդերձ, Անդրկովկասում առաջ եկան և գործեցին այդ կուսակցության տեղական կազմակերպությունները: Էսէռները հիմնականում հենվում էին տեղական և ռուսական մանրբուրժուական մտավորականության փոքրաթիվ խմբերի վրա: Երկրամասի բնակչությունն իր մանրբուրժուական մեծամասնությամբ նպաստավոր հող էր ստեղծում այդ կուսակցության գործունեության համար: Ռեակցիայի և իմպերիալիստական պատերազմի տարիներին էսէռների դիրքն Անդրկովկասում բավականին թուլացավ: Նրանց կազմակերպությունների մի մասը կազմալուծվեց:

Անդրկովկասում սոցիալիստ-հեղափոխականների կուսակցությունն «իր երկրորդ ծնունդն» ապրեց 1917 թ. Փետրվարյան հեղափոխությունից հետո, երբ դրա պատմության մեջ սկսվում է, ինչպես իրենք՝ էսէռներն են գրում, աննախադեպ և «փառավոր» մի շրջան (տե՛ս նույն տեղը, էջ 121): Նկատի ունենալով էսէռական կուսակցության ժամանակավոր հաջողության ժամանակաշրջանը, Ա. Միկոյանը գրել է. «Ոչ միայն Բաքվում, այլև ամբողջ Ռուսաստանում Փետրվարյան հեղափոխության առաջին ամիսները էսէռական կուսակցության ծաղկման մեղրամիսն էին» («Бакинский рабочий», № 57, 14 марта, 1923): Էսէռական կուսակցության շարքերը սկսեցին համալրվել այսպես կոչված «մարտյան էսէռներով»: Նրանց շարքերում էին հասարակական ամենատարբեր խավերի ներկայացուցիչներ՝ չինովնիկներ, մտավորականներ, մանր առևտրականներ, սպաներ և այլն:

«Բոլորը կարող էին լցվել էսէռական ընդարձակ քակը,— գրում էր Ա. Վ. Լունաչարսկին:— Զգացվում էր, որ կադետական կուսակցությունը շարժման ամբողջ թափով չէր կարող դառնալ լայն մասսաների շահերի արտահայտիչը: Դրա հետ միասին էսէռական կուսակցությունն այլ բան չէր պարտավորեցնում: Այդ պատճառով նրա շարքերը ուռչում էին ոչ թե օրերով, այլ ժամերով» (**Бывшие люди.** Очерк истории партии эсеров, М., 1922, стр. 20): Էսէռական կուսակցության աչքի ընկնող անդամներից մեկը՝ Բ. Դ. Կամկովը, կուսակցության III համագումարում (1917 մայիս—հունիս) խոստովանում էր, որ «Մեր կուսակցությունը մոդային է դարձել» (Третий съезд партии социалистов-революционеров, Пг., 1917, стр. 403): Եվ իրոք, սոցիալիստ-հեղափոխականների կուսակցությանն անդամագրվում էին հաճախ ամբողջ գյուղերով և վաշտերով: Նրա անդամներից շատերը, հատկապես այսպես կոչված «մարտյան էսէռները», նույնիսկ ծանոթ չէին էսէռական կուսակցության ծրագրին: Նրանց հրապուրել էին էսէռների **Հողի և ազատության** վերաբերյալ արտաքինից խոստումնալից թվացող լոզունգները և կոչերը: Պարզաբանելով էսէռների և ընդհանրապես բանրբուրժուականության ժամանակավոր հաջողության պատճառները, Ա. Միկոյանը գրել է. «Բանվորական լայն մասսաները վայրենի հալածանքների ժամանակներից անմիջապես ընկնելով լայն ազատությունների պայմանները, ինչպիսիք հնարավոր են բուրժուական կառավարության ժամանակ, հեշտությամբ էին հրապուրվում մանրբուրժուական գաղափարներով» («Бакинский рабочий», № 57, 14 марта, 1923):

Էսէռականության գաղափարները լայն արձագանք էին գտնում ոչ միայն ազատագրական շարժման մեջ ներգրավված գյուղացիության, քաղաքի մանրբուրժուական տարրերի, գյուղից բանակ զորակոչված զինվորների, այլև բանվոր դասակարգի շրջանում: 1917 թ. գարնանը կուսակցության անդամների թիվը, որոշ հաշվարկների համաձայն, հասնում էր



շուրջ 700 հազարի (տե՛ս К. В. Гусев, **Партия эсеров:** от мелкобуржуазного революционаризма к контрреволюции, М., 1975, стр. 99):

Վ. Ի. Լենինը, ընդհանրացնելով Փետրվարյան հեղափոխությունից հետո երկրում հաստատված իրավիճակը, գրում էր. «Վիթխարի մանրբուրժուական ալիքը հեղեղել է ամեն ինչ, ճնշել գիտակից պրոլետարիատին ոչ միայն իր թվական մեծությամբ, այլև գաղափարապես, այսինքն՝ քաղաքականության նկատմամբ մանրբուրժուական հայացքներով վարակել, ընդգրկել է բանվորների խիստ լայն շրջանները» (**ԵԼԺ**, հ. 31, էջ 189):

Անդրկովկասը, որը բոլոր թելերով կապված էր Ռուսաստանի հետ և կազմում էր երկրի ծայրամասային կիսագաղութներից մեկը, զերծ չմնաց այս պրոցեսից: Ավելին, երկրամասի քաղաքական և տնտեսական կյանքը պայմանավորող մի շարք բնորոշ առանձնահատկությունները, մասնավորապես տնտեսական զարգացման հետամնացությունը, իրենց որոշակի կնիքը դրեցին տիրող իրավիճակի վրա: Անդրկովկասը, բացառությամբ մի շարք արդյունաբերական շրջանների, հիմնականում ագրարային երկրամաս էր՝ դեռևս ճորտատիրության պահպանված մնացորդներով: Մեծ դեր էր խաղում նաև ազգային գործոնը: Անդրկովկասն իր ազգային կազմի բազմազանությամբ Ռուսաստանի ամենաբնորոշ շրջաններից մեկն էր:

Էսէռների շարքերի աճը միայն տարերային բնույթ չէր կրում: Էսէռական կուսակցության ղեկավարները, օգտագործելով ժողովրդական մասսաների տրամադրությունները, ծանր իրավիճակներում խուսանավելու իրենց քաղաքական ողջ փորձը և ամբոխավարության իրենց անգերազանցելի տաղանդը, հասան այն բանին, որ սոցիալիստ-հեղափոխականների կուսակցությունը 1917 թ. գարնանը դարձավ Ռուսաստանի մասսայական կուսակցություններից մեկը, որն իր ճյուղերը տարածեց նաև Անդրկովկասում: Էսէռները սկսեցին ակտիվորեն մասնակցել երկրամասի քաղաքական կյանքին, հատկապես այն բանից հետո, երբ մեծամասնություն ստացան նաև բանվորների, զինվորների և գյուղացիների պատգամավորների սովետներում և քաղաքային ինքնավարության մարմիններում: Ճիշտ է նկատել Ա. Մռավյանը. «Դա մի պատմական անհեթեթություն էր, որ, օրինակ, Կարսի քաղաքագլուխ ընտրվում է ս.-հեղ. Տեր-Ներսիսյանը կամ Տփխիսի ու Գանձակի քաղաքագլխի օգնականներ ընտրվում են դարձյալ սոց.-հեղափոխականները» (Ա. Մռավյան, **Հոդվածներ ու ճառեր**, էջ 121):

Էսէռներն իրենց անվանում էին սոցիալիստներ, քանի որ խոսքով իրենց գլխավոր նպատակն էին համարում հասարակության վերափոխումը սոցիալիստական հիմունքներով: Էսէռների ծրագիրը, որպես վերջնական նպատակ, պահանջում էր դեմոկրատական հանրապետության հաստատում, ընդհանուր և հավասար ընտրական իրավունք, խոսքի, մամուլի, խղճի, ժողովների, միությունների ազատություն, պետությունից եկեղեցու անջատում, ընդհանուր ձրի ուսուցում և այլն (տե՛ս Программы политических партий в России, М., 1917, стр. 49): Առաջին հայացքից իդեալական կյանք խոստացող այս ծրագիրը, որը Փետրվարյան հեղափոխությունից հետո շատ շատերին գրավեց դեպի էսէռական կուսակցության շարքերը, դադարում էր իդեալական լինելուց, երբ հերթը հասնում էր դրանում արծարծված պահանջների իրագործմանը:

Փաստորեն դիմադրության չհանդիպելով աջից և բավականաչափ հենարան ունենալով բնակչության մեջ, սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում հիմնականում էսէռներից ու մենշևիկներից կազմված համաձայնողական բլոկը հնարավորություն ստացավ բուրժուաազգայնական կուսակցությունների հետ միասին գերիշխող դիրք գրավելու երկրամասի քաղաքական կյանքում:

Բնակչությանը կոչ արվեց պահպանել խաղաղություն և անդորրություն, չկազմակերպել ցույցեր և միտինգներ, ամեն կերպ նպաստել «քաղաքացիական խաղաղության» պահպանմանը: Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո Անդրկովկասի էսէռականության կյանքում տեղի ունեցած առաջին խոշոր իրադարձությունը մարզային համագումարն էր, որն իր աշխատանքները սկսեց Թիֆլիսում 1917 թ. ապրիլի 7-ին: Համագումարում քննարկվեցին ժամանակի բոլոր արմատական հարցերը: Ինչպես և սպասվում էր, համագումարն ընդունեց այնպիսի բանաձևեր, որոնցով վստահություն էին հայտնվում բուրժուական ժամանակավոր կառավարությանը և բանվորական, ագրարային, ազգային հարցերում նրա վարած քաղաքականությանը, իմպերիալիստական պատերազմը շարունակելուն, հեղափոխության առաջադրած արմատական հարցերի լուծումը մինչև Սահմանադիր ժողովի հրավիրումը հետաձգելուն և այլն:

Երկրում հասունացող խոր ճգնաժամը, որն արդյունք էր ժամանակավոր կառավարության վարած հակաժողովրդական քաղաքականության, ի վերջո հասավ բարձրակետին, որի

արտացոլումը եղան հունիսին իմպերիալիստական պատերազմի վերսկսումը և դրա անմիջական հետևանքը հանդիսացած Պետրոգրադի հուլիսյան իրադարձությունները: Ինչպես կանխատեսում էին բոլշևիկները, Արևմըտյան ռազմաճակատում սկսված հունիսյան հարձակումը ձախողվեց: Ռեակցիան այդ ամենի մեղքը գցեց բոլշևիկների վրա: Սկսվեց հեղափոխության հետևողական ուժերի վայրենի հալածանքը: Բանակում վերականգնվեց մահապատիժը:

Ձնայած այն հանգամանքին, որ տեղի պաշտոնական, համաձայնողական և բուրժուազգայնական մամուլն ամեն կերպ ցանկանում էր ժողովրդից թաքցնել ճշմարտությունը, այնուամենայնիվ, հուլիսյան իրադարձությունների լուրը ցնցող տպավորություն գործեց ամբողջ Անդրկովկասում: Ռեակցիան, էսէռամենշևիկյան և սևհարյուրակային մամուլը ռազմաճակատում անհաջողությունների համար անհեթեթության հասնող մեղադրանքներ էին բարդում բոլշևիկների վրա: Այսպես, օրինակ, սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության Անդրկովկասյան կոմիտեի օրգան «Знамя труда» թերթը Պետրոգրադի հեղափոխական զինվորների արդարացի ելույթը բնութագրում էր որպես «ոչ սոցիալիստական բնույթի», «անարխիստական» միջոցառում: Նա բոլշևիկյան կուսակցության առաջնորդներին որակում էր որպես «գերմանական գործակալների» և հանգում էր այն եզրակացության, որ «ռուսական իրականությունը Փետրվարյան հեղափոխությունից հետո պահանջում է ոչ թե հեղափոխության զարգացում, այլ՝ ամրապնդում» (տե՛ս «Знамя труда», Тифлис, № 80, 11 июля 1917):

Բաքվի էսէռների «Աշխատանքի դրոշակ» հայերեն թերթը հուլիսյան ցույցից հետո երկրում հաստատված ռեակցիան բնութագրում էր որպես «հեղափոխական դիկտատուրա» և խորհուրդ էր տալիս ոչինչ չխնայել «Ժամանակավոր կառավարությանն օգնելու՝ նրա ընկըրած մեծ փրկարար կռվում» (տե՛ս «Աշխատանքի դրոշակ», № 7, 16 հուլիսի, 1917):

Ուշագրավ է, որ Կովկասյան բանակի երկրային սովետի նախագահ, Անդրկովկասի էսէռականության պարագլուխներից մեկը՝ Դ. Դոնսկոյը, սովետի հուլիսի 10-ի նիստում «անցանկալի» բանավեճերի առաջն առնելու և բոլշևիկներին ահաբեկելու մտադրությամբ, նիստի հենց սկզբում հրապարակում է Կերենսկու հրամանը «բոլշևիկներին ձերբակալելու և բոլշևիկյան թերթերը փակելու» վերաբերյալ (տե՛ս ПА ГФ ИМЛ при ЦК КПСС, ф. 8, оп. 3, д. 944, л. 14):

Էսէռները, որոնց դիրքերն ինքնակալության անկումից հետո Անդրկովկասում համեմատաբար ամուր էին, Փետրվարյան հեղափոխությունից մի քանի ամիս անց զգալով, որ իրենց համաձայնողական քաղաքականությունը մատնված է կրախի և արագորեն կորցնում են իրենց հենարանը Անդրկովկասի բնակչության մեջ, ընդդեմ բոլշևիկների կիրառեցին է՛լ ավելի ռեակցիոն միջոցառումներ: Անդրկովկասում նս էսէռները բացահայտորեն անցում կատարեցին համաձայնողականությունից դեպի բացահայտ հակահեղափոխություն:

Իրականությունը ժողովրդին բացատրելու գործում անգնահատելի աշխատանք էին կատարում տեղի բոլշևիկյան կազմակերպությունները և, հատկապես, «Кавказский рабочий», «Бакинский рабочий», «Բանվորի կռիվ», «Բրձոլա», «Սոցիալ-դեմոկրատ», «Հումմեթ» և այլ բոլշևիկյան թերթերը:

Բնութագրելով Պետրոգրադի իրադարձությունները՝ «Кавказский рабочий»-ն գրում էր. «սոցիալիստ-հեղափոխականների անկայունությունը, համաձայնողականությունը և օպորտունիզմը մեկ անգամ ևս խանգարեցին դեմոկրատիային՝ գրավելու ամբողջ իշխանությունը: Դրությունն այնպիսին էր, որ պետք էր կամ վճռականորեն գրավել իշխանությունը, կամ դեմ գնալ շարժմանը: Սոցիալիստ-հեղափոխականներն ընտրեցին վերջինը: Նրանք ձեռք մեկնեցին ճնշող գեներալ Պոլովցևին» («Кавказский рабочий», Тифлис, № 115, 2 августа ,1917):

Բնութագրելով էսէռներին, խարազանելով նրանց հակահեղափոխական վարքագիծը, Ստ. Շահումյանը գրում էր. «Ռուսաստանում ոչ մի կուսակցություն չի տվել այնպիսի խոշոր պրովոկատորներ, ինչպես էսէռների կուսակցությունը: Եվ, չնայած դրան, քաղաքականապես ազնիվ ոչ մի մարդ մտքովն անգամ չէր կարող անցկացնել, որ գյուղացիական շարժումը գյուղերում կամ մանրբուրժուական ինտելիգենցիայի աշխատանքը քաղաքներում պրովոկացիայի արդյունք է» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 3, էջ 138—139):

Էսէռներին մերկացնող քննադատությամբ էին հանդես գալիս նաև Անդրկովկասի մյուս ականավոր բոլշևիկ գործիչները, բոլշևիկյան թերթերը: «Բանվորության համար ոչ մի թշնամի,— գրում էր «Բանվորի կռիվը»,— այնքան վտանգավոր չէ, որքան մանր բուրժուազիան: Այս հեղափոխության ընթացքում նա անողնելի և սոսկալի հարվածներ հասցրեց հեղափոխական պրոլետարիատին: Մանրբուրժուական մասսաները իրենք իրենց անվանում են «դեմոկրատիա»: Այդ չարաբաստիկ դեմոկրատիայի անունից խոսում են ու գործում էսէռներն ու մենշևիկները» («Բանվորի կռիվը», Թիֆլիս, № 10, 23 հուլիսի, 1917):

Նախորդ ժամանակաշրջանի իրենց քաղաքականությամբ էսէռները քայլ առ քայլ երկիրը կանգնեցրին կոռնիլովյան միապետական դավադրության փաստի առջև:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության նախօրյակին, ինչպես կենտրոնական Ռուսաստանում, այնպես էլ երկրի հեղափոխական կարևորագույն օջախներից մեկում՝ Անդրկովկասում, շարունակվում էր այն օբյեկտիվ պրոցեսը, որը հանգեցնում էր հեղափոխական մասսաների նկատելի ձախացմանը, համաձայնողական կուսակցությունների, այդ թվում էսէռների ու նրանց «հեղափոխական ֆրազի» վարկաբեկմանը: Դրան նպաստում էին ինչպես կյանքը, շարունակվող պատերազմը, այնպես էլ բոլշևիկների եռանդուն գործունեությունը:

Հոկտեմբերի նախօրյակին էսէռները ձգտում էին կանխել ողջ երկրում և Անդրկովկասում օր-օրի ձևավորվող հեղափոխական նոր իրադրության հասունացումը: Անդրկովկասում էսէռները ևս չէին ցանկանում թաքցնել իրենց բացասական վերաբերմունքը բոլշևիկյան կուսակցության նկատմամբ: «Մենք միշտ բացասական վերաբերմունք ենք ունեցել բոլշևիզմի նկատմամբ»,— գրում էր «Знамя труда»-ն:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության լուրը խուճապ առաջացրեց Անդրկովկասի էսէռականության, հակահեղափոխականության բոլոր ուժերի շարքերում: Նրանք ընկըսեցին բոլշևիկներին մեղադրել ավանտյուրիզմի և բռնություն գործադրելու մեջ: Ելնելով իրենց ծրագրային այն դրույթից, որ Ռուսաստանը սոցիալիստական հեղափոխությանը կմոտենա, սակայն ոչ միանգամից, այլ երկար տարիներ անց, էսէռները սոցիալիստական հեղափոխությունը որակեցին որպես «հակահեղափոխական ակտ»: «Ռուսական հեղափոխական դեմոկրատիայի համար մի հանգամանք պարզ է եղել միշտ,— գրում էր «Աշխատանքի դրոշակը»,— և այժմ էլ պարզ է, որ ռուսական այժմյան հեղափոխությունը սոցիալիստական չէ, որ խոսք չի կարող լինել սոցիալիստական հեղափոխության մասին մի երկրում, ուր 80 տոկոսն անգրագետ են և քաղաքացիորեն անպատրաստ» («Աշխատանքի դրոշակ», Բաքու, № 18, 5 նոյեմբերի, 1917): Էսէռները, բուրժուազիայի այդ հին կամակատարները, ցանկանում էին «երկար տարիների» ընթացքում ժողովրդին գրագետ դարձնել և քաղաքականապես պատրաստել, ապա նոր միայն միջոցներ ձեռնարկել դրա իրագործման համար: Իսկ կյանքի օբյեկտիվ ընթացքը չէր հարմարվում էսէռական ծրագրին: Հեղափոխական մասսաներն այլևս չկարողանալով հանդուրժել համաձայնողական կուսակցությունների վարքագիծը և երկրում հաստատված անարդար կարգերը, վճռական պայքարի էին ելել սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար, որից հետո նրանք կլուծեին և՛ անգրագիտության վերացման, և՛ ընդհանուր հետամնացության հաղթահարման պրոբլեմները:

Համակերպվելով այն մտքին, որ հեղափոխությունը Ռուսաստանում արդեն հաղթանակել է, Անդրկովկասի էսէռներն իրենց քաղաքականությամբ ձգտում էին կանխել հեղափոխական պրոցեսի զարգացումը գոնե Անդրկովկասում: Մանրբուրժուականության էվոլյուցիան հանդիպելով իր շահերին տրամագծորեն հակառակ հեղափոխական արմատական միջոցառումների, կտրուկ թեքվեց դեպի աջ, և այն էլ անվերադարձ:

Պայքարելով աջ էսէռականության դեմ, երկրամասի բոլշևիկները, մամուլի նրանց օրգանները օգնում էին աշխատավորներին պարզելու այդ կուսակցության իսկական դեմքը: Դա նպաստում էր Անդրկովկասում բոլշևիկների կուսակցության շուրջն աշխատավոր մասսաների գիտակցական համախմբմանը, երկրամասում հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ քաղաքական բանակի ստեղծմանը:

# XIX ԴԱՐԻ 40-60-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՅ ԱՌԱՋԱՎՈՐ ՄՏԱԾՈՂՆԵՐԸ ՄԱՐԴՈՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԷՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Ս. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ**

ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ տեսության և սոցիալիստական պրակտիկայի բուն նպատակը եղել և մնում է մարդը՝ սոցիալական ու հոգևոր շահագործումից ազատագրված, բազմակողմանի զարգացած անհատը: Հիմնավորելով սոցիալիստական ապրելակերպի զարգացման, նոր մարդու ձևավորման նյութական ու հոգևոր պայմանների ամրապնդման անհրաժեշտությունը, ՍՄԿԿ XXVI համագումարը հատուկ շեշտեց մարդու արժութային նշանակությունը, սովետական ժողովրդի բարեկեցության աճի ապահովման խնդիրը: Այս հումանիստական քաղաքականությունը բխում է մարքսիզմ-լենինիզմի էությունից, սոցիալական արդարությունը հաստատելու վսեմ նպատակից և ելնում է այն հիմնական գաղափարից, որ մարդն իր բոլոր յուրահատկություններով հանդերձ, ամենից առաջ, հասարակական էակ է:

Մարդու հասարակական էության մարքսիստական ըմբռնումը մեթոդաբանական այն կարևոր սկզբունքն է, որով պետք է առաջնորդվել մարդու պրոբլեմի ուսումնասիրության ժամանակ ընդհանրապես: Սա նաև այն չափանիշներից է, որի շնորհիվ բացահայտվում է արդի բուրժուական անտրոպոլոգիական ուսմունքների ռեակցիոն էությունը:

Այս առումով շատ կարևոր է, թե մարդու հասարակական էության հարցը ինչպես են ուսումնասիրել նախամարքսյան շրջանի, ներկա դեպքում՝ XIX դարի 40—60-ական թթ. հայ պրոգրեսիվ մտածողները:

Կղերաֆեոդալական գաղափարախոսության քննադատությունը, հայ ազգի մշակութային, սոցիալ-տնտեսական, քաղաքական զարթոնքի համար մղած պայքարը եղել է XIX դարի հայ առաջադեմ մտածողների տեսական ու պրակտիկ գործունեության հիմնական բովանդակությունը: Սա մի ամբողջական պրոբլեմ էր, որի քննարկումը ենթադրում էր բազմաթիվ հարցերի առաջադրում ու լուծում և անմիջականորեն առնչվում էր նաև մարդու էության՝ նրա առաջացման, հիմնական հատկությունների, բնության ու սոցիալական իրականության մեջ նրա ունեցած տեղի ու դերի վերլուծության հետ: XIX դարի կեսերին հայ իրականության մեջ տակավին իշխում էր մարդաստեղծման և նրա էության աստվածաշնչյան, կղերաֆեոդալական ըմբռնումը: Մինչդեռ մարդու էությունը նյութական-երկրային կապակցություններում քննելու անհրաժեշտությունը դառնում էր ժամանակի կարևոր պահանջ: Դարի 40—60-ական թվականների հայ նշանավոր մտածողները (Խ. Աբովյան, Ն. Զորայան, Ա. Փափովիչ, Ստ. Նազարյան, Ստ. Ոսկան, Հ. Սվաճյան, Մ. Նալբանդյան) հենց այս գիտակցությամբ վերաբերվեցին մարդու պրոբլեմին, բացահայտելով դրա տեսական-աշխարհայացքային կարևոր նշանակությունը:

Մարդու էությունը, նրա հիմնական բնութագիրը ամբողջականացնող հատկություններից հիշյալ մտածողները որոշիչ նշանակություն են տալիս մարդու հասարակական էությանը: Պրոբլեմի այս կողմին անդրադարձել են այդ շրջանի գրեթե բոլոր մտածողները, սակայն առավել ակնհայտ ձևով այն դրսևորվել է Աբովյանի, Նազարյանի և Նալբանդյանի մոտ:

Հասարակության զարգացման ըմբռնման առումով նրանք, ինչպես նախամարքսյան շրջանի մտածողները, իդեալիստներ էին և այս պատճառով չկարողացան հասկանալ մարդու առաջացման, հասարակության ու հասարակական հարաբերությունների կազմավորման իրական պատմությունը: Սակայն Աբովյանը, Նազարյանը, Նալբանդյանը, ելնելով հասարակության և միայն այդ համակարգում մարդու գոյության հնարավորության փաստից, անվերապահորեն ընդունեցին մարդու հասարակական էությունը: Նրանք տարբեր առիթներով նշում են մարդու հասարակական, «ընկերական» էակ լինելը, այն, որ մարդը «ընկերական վիճակ ունի» և գոյություն ունի «ընկերության համար» (Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու*, հ. 5, Երևան, 1948, էջ 318—320, Ստ. Նազարյան, **Շիլլերի Մեսինական հարսը**, «Հյուսիսափայլ», 1861, № 1, էջ 6, նույնի, **Առաջարկություն**, 1862, № 1, էջ 272, Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու**, հ. 1, Երևան, 1945, էջ 395):

Նազարյանը մարդու վարքը, գործունեությունը, նրա էությունը դետերմինացնում է հասարակայնորեն և ներառնում հասարակական կոնկրետ պայմանների մեջ: Նազարյանի պատկերացմամբ, մարդը ո՛չ միայն հասարակական կոնկրետ հարաբերությունների՝ ընտանիքի, ազգի, թագավորության կրողն ու ներկայացուցիչն է, այլև դրանց շնորհիվ նա շղթայվում է ընդհանուր մարդկությանը: «Ես մի հարկավոր հոդված եմ այն մեծ շղթայակապի մեջ,— գրում է Նազարյանը,— որ ընկույալ առաջին մարդու գիտակցությունից (անձնաճանաչութենից) դուրս է պարզվում մինչև անանց մշտնջենավորության ներսը: Եվ դու, ով լինեիր, դու որ ունիս մարդկային կերպարանք, և դու անդամակից էիր այս հասարակությանը, թեպետ ես ծանոթ չեմ քեզ և ոչ դու ինձ, այնուամենայնիվ ես ներգործում եմ քո վերա և դու ներգործում ես իմ վերա» (Ստ. Նազարյան, **Հանդես նոր հայախոսության**, երկրորդ մաս, Մոսկվա, 1857, էջ 497): «Ներգործումների» այս բնական անհրաժեշտության մեջ է, որ, ըստ Նազարյանի, գոյատևում է հասարակությունը, ձևավորվում են մարդու հասարակայնորեն անհատականացված որակները, մարդկայնացված հարաբերությունները: Ոչ ոք զերծ չէ այս ներգործությունից, որովհետև ոչ ոք հասարակությունից դուրս գտնվել չի կարող:

Ըստ Նազարյանի, հենց հասարակության մեջ, մարդկանց փոխադարձ կապերում է, որ մարդը հասնում է մարդկային կատարելության, ձևավորվում է նրա հոգեբարոյական աշխարհը: Այս պատճառով նա մերժում է եսապաշտական այն մտայնությունը, թե իբր մարդը «...իրեն բավարարում է կատարելապես, թե նա կարիք չի զգում իր առանձին հոգեկան և բարոյական գոյությունը կատարելագործելու և ամբողջացնելու՝ մի ուրիշով» (Նույնի, **Նամականի**, Երևան, 1965, էջ 506): Մարդու էության մեկնաբանման հասարակական կողմնորոշվածությունը հակադրելով մարդու եսապաշտական ըմբռնմանը, Նազարյանն արծարծում է հույժ կարևոր և հումանիստական այն գաղափարը, որ մարդը հասարակական էակ է, որ նրա գոյությունը դուրս է գալիս անհատական նշանակության շրջանակներից և ձեռք է բերում հասարակական-համամարդկային բովանդակություն: Մարդու հասարակական բնույթը ենթադրում է նաև մարդկանց համատեղ, միասնական ու հասարակայնորեն նպատակադիր գործունեություն: Այս պատճառով, «Մարդուս կյանքի ընկերական խորհուրդը ոչինչ տեղ բացերևում չէ մեզ այնպես մեծակշիռ չափով, որպես աշխարհաշինության հանդեսի մեջ. այդ տեղ ահա տեսնում ենք, որ մարդս ինքն յուրյան անբավական էր, թույլ, անզոր և անկարող միանգամայն, քանի որ նա միաբանվել չէր յուր ընմաններին հետ, քանի որ մարդիկ ամեն մինը ունեին յուրյանց առանձին, միմյանցից բաժանբաժան, շատ անգամ միմյանց ներհակ ու թշնամի օգուտները» («Հյուսիսափայլ», 1862, № 1, էջ 267—268): Ինչպես տեսնում ենք, առաջ քաշելով հասարակության մեջ մարդկանց ներդաշնակ փոխհարաբերությունների հաստատման նշանակությունը, Նազարյանը միաժամանակ զգում է, որ մարդկանց ներհակ շահերը («ներհակ ու թշնամի օգուտները») հակադիր են հասարակական ամբողջի բնականոն գոյությանը և այդպիսով՝ նաև մարդու էությանը: Այսպիսի մոտեցմամբ Նազարյանը մի կողմից շեշտում է մարդու հասարակական էակ լինելու և միայն հասարակության մեջ գոյություն ունենալու հանգամանքը, մյուս կողմից՝ այն, որ սոցիալական որոշակի պայմաններում մարդուն բնորոշող այդ կարևոր որակը վերածվում է մարդու էության հակադրության, ոտնահարվում են մարդու արժանապատվությունը, նրա իրավունքները, մարդը վերածվում է քմահաճույքի առարկայի: Անդրադառնալով այս հարցին՝ նա նշել է. «մարդս հարստահարության և տառապանքի մեջ կորուսել է յուր մարդկային արժանավորության գիտակցությունը, հավասարվել է հողի հետ. նա դարձել է մի անիրավունք բան, մի թշվառ խաղալիք անօրեն ու անկարգ իշխանությունների ձեռքում, մի անպաշտպան զոհ հոգով ու սրտով ցավագարված հրամայողների կամքի» (Նույն տեղը, էջ 268—269): Գիտակցելով սոցիալական այսպիսի վիճակի նշանակությունը մարդու ապամարդկայնացման պրոցեսում՝ Նազարյանը, սակայն, մնալով բուրժուական լուսավորության դիրքերում, չկարողացավ բացահայտել այդ պրոցեսը պայմանավորող սոցիալական օրինաչափությունների բնույթը և այդ պայմանների վերացման իրական հնարավորությունները: Այս պատճառով նա հիմնականում սահմանափակվեց ֆեոդալիզմի քննադատությամբ: Այ-

* Այսուհետև՝ Խ. Աբովյան, ԵԼԺ:

** Այսուհետև՝ Մ. Նալբանդյան, ԵԼԺ:

սուհանդերձ, մարդու հասարակական էության առաջադրումը, մարդու գոյությունը հասարակական կապակցություններում իմաստավորելու Նազարյանի գաղափարը ուներ պատմական ու պրակտիկ կարևոր նշանակություն և բխում էր հայ իրականությանը հուզող խնդիրներից: Այսպես, ազգը ըմբռնելով որպես հասարակական կարևոր միավոր, վերջինիս գոյությունը նա բնականաբար հիմնավորում էր՝ ելնելով ազգը կազմող անհատների փոխկապվածության իրական վիճակից: Այս նկատի ունենալով Նազարյանը նշում էր. «Վաղուց և վաղուց «Հյուսիսափայլը» բարձրաբարբառ քարոզել է ազգին, այժմ ևս կրկնում է միևնույնը, թե մարդուս մեծությունը և կարողությունը ընկերության մեջ է» («Հյուսիսափայլ», 1861, № 1, էջ 6):

Նալբանդյանը մարդու հասարակական էության հարցը հատկապես քննում է անձնավորության, անձնավորության և ազգի փոխկապվածության առումով և, այդպիսով, փորձում մեկնաբանել նաև մարդու հասարակայնացման բուն պրոցեսը: Վերլուծելով ազգի կառուցվածքային բաղադրիչները՝ Նալբանդյանը գտնում է, որ մարդը բնորոշվում է նաև իր ազգային-հասարակական հատկանիշներով, որովհետև «Ազգը բաղկանում է ընտանիքներից, ընտանիքը անհատներից: Ազգը ուրիշ բան չէ, եթե ոչ ժողով անհատների, որոնց մեջ կային հասարակաց բաներ, հասարակաց ըմբռնողությունք, հասարակաց ձև ու ոճ այդ ըմբռնողության համար, թող հատկությունքը, որ շատ անգամ սխալ քան թե ուղիղ, որպես հասարակաց վերագրվում է այս կամ այն ազգին: Ուրեմն ազգը է մի մեծ ընտանիք,... մի մեծ և հսկա անձնավորություն» (Մ. Նալբանդյան, **ԵԼԺ**, հ. 3, Երևան, 1940, էջ 337): Ըստ Նալբանդյանի, ազգը, որպես մարդկանց հասարակական հանրության ձև, իր մեջ խտացնում է հասարակական հանրությունների բնորոշ հատկությունները, որովհետև այն ամբողջականացնում, միավորում է այդ հատկությունները կրող անհատներին: Նշանակում է ազգայինն ու հասարակականը մարդուն, նրա էությանը բնորոշ հատկություններ են: Ավելին, ազգը որպես հասարակական կայուն միավոր ունի մշակութային, սոցիալ-քաղաքական, հոգեբարոյական կայուն հատկություններ: Ներառվելով ազգային կապակցությունների մեջ՝ մարդը բնականաբար դառնում է նաև այդ հատկությունների կրողը: Մարդը համայն մարդկության մեջ հանդես է գալիս իր անհատական, բայց առաջին հերթին, ազգային հատկանիշներով: Այդ հատկանիշները սուբստանցիոնալ նշանակություն ունեն մարդու ընդհանրական, մարդկային էության կազմավորման պրոցեսի համար, որովհետև, ինչպես նշում էր Նալբանդյանը, «Ազգությունը հառաջ է, քան թե ընդհանուր մարդկությունը, և ամենայն մարդ յուր ազգությամբ մտանում է ընդհանուր մարդկության մեջ» (նույն տեղը, հ. 1, էջ 454): Ըստ նրա, միայն համամարդկայինի հետ կապակցվող ազգային յուրահատկությունների մեջ է ձևավորվում մարդու իսկական հասարակական էությունը՝ մարդը որպես անձնավորություն: Անձնավորության ձևավորումը Նալբանդյանը համարում է այնպիսի պրոցես, որի ընթացքում կազմավորվում է մարդու ինքնությունը, մասնավորապես, մարդու հասարակայնորեն արժեքավորված անհատական որակները, այն ամենը, ինչով մարդը գիտակցում է իր և այլ մարդկանց կեցությունն ու անհատականությունը և այդպիսով սկզբնավորվում են մարդկանց մարդկայնացված փոխհարաբերությունները: «...մարդը չէ կարող լինել առանց անձնավորության,— ընդգծում է նա:— Եվ եթե պատահում է տեսանել մի մարդ առանց անձնավորության... այդ մի ողորմելի և թշվառ երևույթ է անօգուտ յուրյան և ուրիշներին: Անձնավորությունը ոչ թե միայն խափան չէ, այլ դորա հակառակ, նա միայն հնար է տալիս ազատ և կատարելապես հասկանալ մյուս մարդը, ուրիշ անձնավորությունք» (նույն տեղը, հ. 2, էջ 258): «Անձնավորություն» հասկացությունը, այսպիսով, Նալբանդյանը դարձնում է այն ելակետային, հասարակական իմաստ ունեցող ըմբռնումը, որով նշանակում է մարդու մարդկայնացման, ինքնարժեքավորման արտահայտությունը: Ըստ Նալբանդյանի, անձնավորության ձևավորումը ո՛չ միայն նշանակում է լիարժեք մարդու գոյություն, նրա հասարակայնացում և հասարակական էության արժեքավորում, այլ նաև՝ հասարակական ամբողջի ներդաշնակ գոյություն, անհատականի և հասարակականի փոխկապվածություն: «Հասարակական կապակցության մեջ,— նշել է նա,— չեն ոչնչանում անձնավորությունքը, այլ միայն հրաժարվում են յուրյանց մասնավորութենից, մի համաձայն ամբողջ կազմելու համար, բոլորի ցանկալի միավորությունը դուրս երևեցնելու համար: Անձնավորությունքը հնչում են հասարակության մեջ, ոչ որպես առանձին-առանձին, այլ որպես ներդաշնակ, ամբողջ երաժշտություն» (նույն տեղում, էջ 257):

Մարդու հասարակական էության, անձնավորության պրոբլեմի քննումը, ինչպես Նազարյանը, նույնպես և Նալբանդյանը կապում էր ժամանակի հայ ազգային խնդիրների հետ: Այսպես, որպես հեղափոխական-դեմոկրատ և



մեծ հումանիստ, Նալբանդյանի գործունեության հիմնական նպատակը համայն մարդկության ապագայի և առաջընթացի գաղափարն էր: Սակայն այս նպատակի իրագործումը վերջին հաշվով իր կոնկրետ արտահայտությունն էր ստանում հայ ազգի սոցիալ-քաղաքական ազատագրության, հայ կյանքի բարվոքման նրա մտահոգությունում: Այս իմաստով Նալբանդյանը, ինչպես Նազարյանը, արտահայտում էր ազգակազմության, հայ ազգի գոյության ու նրա զարգացման հեռանկարների մասին XIX դարի կեսերի հայ տեսական մտքին հուզող հիմնական պրոբլեմը: Խորամուխ լինելով այս բանում, Նալբանդյանը ցույց է տալիս, որ հայ ազգը, զրկված լինելով իր քաղաքական անկախությունից, հոգևոր-լեզվական ու սոցիալ-տնտեսական ընդհանրությունից, կորցնում է իր բնորոշ հատկանիշները և վերածվում «վերացական ազգի»: Նման պայմաններում և ազգային, սոցիալական ներքին հակասությունների պատճառով, ազգը կազմող անհատները փոխանակ մտահոգվեն նրա գոյության ու ապագայի հեռանկարներով, առաջնորդվում են ոչ թե ազգային, այլ անհատական շահերով: Ուստի, «...ազգի անդամքը, ամենեքյան համարում են յուրյանց անձը մասնավոր, ազգը դարձել է մի վերացականություն. և այդ է պատճառը, որ ազգի հառաջադիմության սայլը ընկած մնում է ճանապարհի վերա, որովհետև ամենայն մարդ, մասնավոր համարելով յուրյան, սիրտ չունի մոտենալ և ձգել տանել սայլը» (նույն տեղը, էջ 256): Անհատների էգոիստական սահմանազատումը միմյանցից և ազգից փաստորեն հանգեցնում է թե՛ մեկի և թե մյուսի ոչնչացման: Եթե մարդը կորցնում է իր ազգային-հասարակական էությունը, ապա ազգը վերածվում է վերացական հասկացության, որովհետև դրան նպաստում է այն բանը, որ «...ես, դու, նա, մյուսը անվանում ենք մեզ մասնավոր, առանց մտածելու, թե ով է ապա ազգը, և եթե մի բան պատահի, ազգի ամեն մի անդամը ասում է «թող ազգը հոգս առնե», այս ասելով ինքը յուր անձը որոշում է, հանում է միջից և համարում է մասնավոր, եթե մի ազգի բոլոր անդամքը այսպիսի մտածությամբ հրաժարվում են, ապա ո՞վքեր են, որ կազմում էին ազգը. ոչ ոք. ահա մի վերացական ազգ և մենք ենք այդ ազգը» (նույն տեղը):

Անհատների (անձնավորության) և ազգի (հասարակության) հարաբերության նման վիճակին Նալբանդյանը հակադրում է անձնավորության և ազգի ներդաշնակ գոյության, նրանց փոխկապվածության մասին իր առաջ քաշած իդեալը: Այս հարցում նա հակադրվում էր էգոիզմին, բուրժուական անհատապաշտությանը և անհատի գործունեությունն ու վարքը դետերմինացնելու, մարդու հասարակական էությունը կազմավորելու գործում առաջին պլան էր մղում ազգի առաջնայնության գաղափարը: «Ազգ ասացյալը է այն ուժը,— նշում էր նա,— այն կենդանի կապակցությունը մարդերի, որ առանց նորան, կամ նորանից դուրս, մասնավոր մարդը կը լիներ մի անօգուտ անձնասեր, эгоист, իսկ բոլոր մարդկությունը մի անպտուղ վերացականություն: Մի անձնավորության միմյանցից բաժանող եսական սկզբունքը չափավորվում են ազգի կենդանի կապակցության վերին սկզբունքով... հասարակական մեծահոգի սկզբունքով» (նույն տեղը, էջ 257): Այսպիսով, մարդու հասարակական էության ըմբռնումը Նալբանդյանին հնարավորություն է ընձեռում քննարկելու մարդու հասարակական գոյությունը հիմնավորող կարևոր խնդիրներ, որի առանցքը, հարկավ, կազմում էր անձնավորություն—ազգ փոխհարաբերությունը և որով հիմնավորվում էր նաև ազգի, որպես բացարձակ նպատակի, գաղափարը:

Մարդու հասարակական էության քննումը ինքնանպատակ չէր: Այն ուներ տեսական ու պրակտիկ կարևոր նշանակություն: Մարդուն համարել հասարակական էակ, նրան տարբերակել այլ կենդանի էակներից և նրա գոյությունը տեսնել հասարակության մեջ, նշանակում է ցույց տալ նաև, թե մարդը ինչպիսի տեղ ու դեր ունի հասարակական կյանքում, ինչումն է կյանքի իմաստը, մարդկային կեցության բովանդակությունը:

Աբովյանը մշակեց հասարակական կյանքում մարդու դերի ու կոչման լուսավորական-դեմոկրատական ըմբռնումը: Նա մարդու հասարակական դերի հարցը անմիջականորեն զուգակցեց նրա ակտիվ, հասարակայնորեն նպատակամետ գործունեության հետ և առաջին անգամ համակարգված ձևով մշակեց հայրենիքի, նրա անկախության ու ազատության համար գիտակցաբար պայքարող անհատի կերպարը: Հարցին մոտենալով այսպես, Աբովյանը կատարում է հումանիստական-աշխարհայացքային կարևոր եզրակացություններ և շեշտում է մարդու հասարակական գործունեության, կյանքի իմաստի ու մարդու կոչման իսկական շրջանակները: Նա այն գաղափարն է զարգացնում, որ մարդ-անհատի կատարած գործն արժեզրկվում, «թաղվում է մոռացության փոշու մեջ», եթե այն կաղապարվում է անձնականով, եթե չի ծառայում ազգայինին ու համամարդկայինին («աշխարհին») (Խ. Աբովյան, **ԵԼԺ**, հ. 10, Երևան, 1961, էջ 162): Հենց այս պատճառով Աբովյանը մարդատյաց, կործանարար և ար-

գնահատելի էր համարում Աթիլլայի, Չինգիզխանի, Լենկթեմուրի գործունեությունը: Ի տարբերություն մարդկանց, ազգերի ստրկացմանը ձգտող այսպիսի անհատների, Աբովյանը հատկապես բարձր է գնահատում ազգի ազատության, նրա իրավունքի համար և բռնության դեմ պայքարող մարտիկ-անհատին, ժողովրդին: Այն մարդկանց փառքը, նշում է Աբովյանը, որ «ազգի ազատության պաշտպան են եղել, տևում և մնում է դարեդար» (նույն տեղը, հ. 6, Երևան, 1955, էջ 53), այդպիսիների «...գործքը և յիշատակք... անմահ մնացէ, որքան տակաւին երկիր մեր հաստատուն կայցէ ի շրջանի իւրում» (նույն տեղը, հ. 10, էջ 162): Ավելին, այսպիսիների գործի ողջ իմաստը հանգում է նրան, որ կարողանում են զուգակցել ազգայինն ու համամարդկայինը և, այդպիսով, դառնալ համայն մարդկայինի կրողներն ու ներկայացուցիչները, դարի պահանջների արտահայտիչները: «Նոքա,— շեշտում է Աբովյանը,— հոգի եւռուն դարու իւրեանց, գլուխ եղէն ազգի և պսակ մարդկութեանն...: Նոքա խցեալ **առաքինութեամբ** և **ազգաշինութեամբ** զլորձանս կատաղածոր աշխարհակուլ, խեռ ժամանակին, կապեցին զերկիր ընդ երկնի ի շղթայս անխզելիս..: Յո՞ր ազգէ, յո՞ր տոհմէ, բարեկամն մարդկութեանն ոչ հարցանէ զայս, այլ անաղարտելի սիրով կապակցեալ ընդ նոսա, կենդանագործէ օրինակովք նոցա զհոգիս յապա եկելոց» (նույն տեղը): Այսպիսի մոտեցմամբ է Աբովյանը գնահատում ժողովուրդների քաղաքական ու մշակութային կյանքում կարևոր դեր կատարած մարդկանց, այսպես է գնահատում նաև հայ ժողովրդի երախտավորներին՝ Հայկին, Զարմայրին, Վարդան Մամիկոնյանին, Վռամշապուհին և այլոց (նույն տեղը, հ. 8, Երևան, 1958, էջ 101—102):

Արծարծելով մարդու կոչման ու դերի հարցը՝ Աբովյանն իր իդեալը վերջին հաշվով կապում էր նշանավոր անհատների գործունեության հետ: Այս հարցում նա հարազատ էր մնում անհատի դերի լուսավորական ըմբռնմանը: Սակայն, միաժամանակ, հաղթահարելով անհատի դերի հայեցողական ըմբռնումը, հատկապես հանդես գալով վոլյունտարիզմի դեմ, Աբովյանը նրանց վարքն ու գործունեությունը դետերմինացնում է այն սոցիալ-հասարակական պայմաններով, որ ծնում է նշանավոր անհատների նպատակային գործունեությունը (նույն տեղը, էջ 101): Այսպիսի ըմբռնումն այն նախադրյալներից էր, որով նա հիմնավորում էր ազգային-ազատագրական պայքարում նշանավոր անհատների վճռական նշանակությունը և այդ պրոցեսում՝ ժողովրդի համազգային գործունեության կազմակերպման անհրաժեշտությունը: Մեթոդաբանական այսպիսի սկզբունքով է, մասնավորապես, մշակված **Վերք Հայաստանի** վեպը: Աբովյանը մի կողմից, հանձին Աղասու, արտահայտում է աշխատավոր ժողովրդի, նրա ներկայացուցչի վճռականությունը հայրենիքի ազատագրության գործում, մյուս կողմից՝ նրա գործունեությունը շղթայում է հասունացած հասարակական-ազգային խնդիրների, ժողովրդի ինքնագործունեության հետ:

Ազգային-ազատագրական պայքարի, այս առումով՝ նաև անհատի հասարակայնորեն ակտիվ գործունեության հիմնավորումը Աբովյանը զուգակցում է կյանքի իմաստի, մարդու կոչման ու դերի կրոնական ըմբռնման նշանակության քննադատության հետ: Նա ցույց է տալիս, որ կրոնը, երկրորդական պլան մղելով երկրային կյանքը և հիմնական շեշտը դնելով աստված—մարդ հարաբերության վրա, կյանքի իմաստը և մարդու դերը հանգեցնում է հոգու փրկությանը և մարդուն ապակողմնորոշում է ազգային, երկրային խնդիրների լուծման մեջ (նույն տեղը, հ. 3, Երևան, 1948, էջ 83—84): Աբովյանն առաջ է քաշում ժողովրդի ուժի, նրա պայքարի գաղափարը, իր իրավունքները պաշտպանելու անհրաժեշտությունը՝ «Ամեն մարդ իր գլխի տերն ա,— նշում է Աբովյանը՝ արտահայտելով ժողովրդի վճռականությունը,— ինչի՞ են էսքան խղճացել, որ իրենց թուրը իրենց սիրտն են կոխում: Մարդ որ իր տանը, իր աշխատանքին մուղայթ չի կենա, իր հողի դարդը չգիտենա, մեռնի մեկ օր հառաջ լավ ա, քան սաղ մնա» (նույն տեղը, էջ 101, տե՛ս նաև էջ 82, 164): Այսպիսի մոտեցմամբ Աբովյանը հիմնավորում է մարդու կամքի ազատության, մարդու զինված պայքարի անհրաժեշտությունը և այն ծառայեցնում բարձրագույն նպատակին՝ հայրենիքի ազատագրության գաղափարին:

Աբովյանի պատկերացմամբ հայրենիքը այն ամենամեծ իդեալն է, որին պետք է ծառայի յուրաքանչյուր ոք, որով հիմնավորվում է յուրաքանչյուրի գործունեությունը: «Գործքը, քո գործքը, միայն քո անունը կպահեն,— նշում է նա:— Հայրենասիրությունը միայն քո հիշատակը կտռնի, ազգասիրությունը քո արածը կենդանի կպահի, քեզ սրբի տեղ պաշտել կտա» (նույն տեղը, հ. 8, էջ 321): Այս համոզվածությամբ է Աբովյանը ձևակերպել կյանքի և մահվան ըմբռնումը, որը ներառում էր նաև հասարակական իսկական անհատի գործունեության ծրագիրը՝ «Ապրել և մեռնել հայրենիքի համար» (նույն տեղը, հ. 10, էջ 257), լինել «ազգի հավատարիմ որդի» և մեռնել «ինչպես Հայկազուն՝ Հայաստանի համար»



(**Դիվան Խաչատուր Աբովյանի**, հ. 2, Երևան, 1947, էջ 23): Արծարծելով մարդու հասարակական էության հարցը, մարդու կոչումն ու կյանքի իմաստը տեսնելով հասարակական-ազգային հարաբերությունների մեջ, երբեմն նկատելով նաև սոցիալական անտագոնիզմին բնորոշ հակամարդկային երևույթները (Խ. Աբովյան, **ԵԼԺ**, հ. 4, Երևան, 1948, էջ 202), Աբովյանը, այսուհանդերձ, մնալով լուսավորության շրջանակներում, չկարողացավ բացահայտել մարդու վարքն ու գործունեությունը պայմանավորող հասարակական պրոցեսների իսկական օրինաչափությունները և հասարակական կյանքի վերափոխման գործում վճռական նշանակություն վերագրեց լուսավորության տարածմանը:

Նազարյանը մասամբ շարունակեց Աբովյանի գաղափարները: Խտացնելով ժամանակի հայ իրականությանը բնորոշ գաղափարական պայքարի ողջ էությունը և քննադատությունն ուղղելով հատկապես կղերա-ֆեոդալական գաղափարախոսության դեմ, Նազարյանը գտնում է, որ իսկական մարդը, իր ազգի ճակատագրով մտահոգված անձնավորությունը չի կարող այս պայքարից դուրս գտնվել: «Մեր ժամանակը պատերազմ է,— նշում է Նազարյանը,— և կարոտ է անձանձիր նահատակների. ով տղամարդ է, ով զգում է յուր մեջ այրական հոգի, որի համար դեռևս կենդանի է հայրենիք ասած բանը, թող ժողովէ և ամփոփէ յուր զորությունքը հանդես մտանելու և վճռաբար գործ կատարելու. ամենևին անխտիր, անզգա մնալ անկարելի է. հարկավոր է կացություն կամ աջկողմյան կամ ձախկողմյան դասի հետ» («Հյուսիսափայլ», 1859, № 11, էջ 208): Ըստ նրա, անհատի, որպես ազգի ներկայացուցչի գործունեությունը, անկախ նրա սոցիալական դիրքից և նյութական հնարավորություններից, պետք է ծառայի ազգին և նրա գործունեությունը գնահատվի նրանով, թե ազգի ամբողջությունը կազմող անհատները «որպես ազգի անդամք, որպես հասարակաց ազգի պաշտոնեայք, որպես բանական և բարոյական էակներ» որքանով են որդեգրվել ազգի գործին, ճշմարտությանը, որքանով են ջախջախել «խավար տգիտության վիշապի գլուխը» (նույն տեղը, 1858, № 1, էջ 2, 4) և նպաստել ազգի «հոգևոր տան շինությանը»: Այս նպատակով, Նազարյանը ձգտում էր ներդաշնակություն և համերաշխություն հաստատել ազգը կազմող հասարակական տարբեր շերտերի՝ հարուստների ու աղքատների միջև, դրանում տեսնելով հասարակության (ազգի) և անհատի գոյության բնական հիմքը: Սակայն Նազարյանն աստիճանաբար կռահում է, որ իր այդ ցանկությունն անիրականանալի է, որովհետև հասարակության սոցիալական շերտավորվածությունը կայուն է ու անլուծելի: Այս ընթացքում Նազարյանը հանգում է նաև այն եզրակացության, որ «մի ազգի գլխավոր ուժը և զորությունը հասարակի մեջ է, որովհետև հասարակի բազմությունը հարյուր հազարավոր, իսկ մեծատունների թիվը տասն ու քսան է. բացի դորանից, աշխարհիս բոլոր ականավոր գործերը իմաստության և ճարտարապետության մեջ, առաջացած են ժողովրդի միջակ և չքավոր դասակարգերից...» (նույն տեղը, 1863, № 1, էջ 3): Հոգևոր և նյութական մշակույթի և ընդհանրապես պատմության զարգացման մեջ ժողովրդի այսպիսի դերի ըմբռնումը հնարավորություն էր ընձեռում, որպեսզի մարդու հասարակական կոչման, նրա կյանքի իմաստի պրոբլեմն ստանար առաջադիմական-դեմոկրատական բնույթ: Խտացնելով մարդու կյանքի և գործունեության իմաստի սոցիալական բովանդակությունը՝ Նազարյանը նշում էր. «...կարող չենք մեր անձը բաղդավոր զգալ, միշտ և հանապազ մեր աչքի առաջև ունենալով մի թշվառացած, բարձի թողի արած ժողովրդական կացություն» (նույն տեղը, 1862, № 7, էջ 477): Ժողովրդի, մարդու կյանքը ժողովրդին ծառայեցնելու և կյանքի իմաստը այդ հարաբերությունում բացատրելու այսպիսի ըմբռնումը Նազարյանի մոտ տեսական համակարգի չի վերածվում, իսկ նրա լուսավորական ծրագիրը շատ նեղ էր այդ պրոբլեմը լուծելու համար:

Աբովյանի և Նազարյանի գաղափարները տոգորված էին լուսավորությանը բնորոշ խոր հումանիզմով. նրանք հանդես էին գալիս որպես ֆեոդալական հարաբերությունների համոզված հակառակորդներ, պաշտպանում ողջ տառապող մարդկության շահերը: Այս իմաստով լուսավորիչներին տված լենինյան գնահատականը ուղղակիորեն վերաբերում է նաև նրանց: «Չի կարելի մոռանալ,— նշում էր Լենինը,— որ այն ժամանակ, երբ գրում էին XVIII դարի լուսավորիչները... երբ գրում էին մեր լուսավորիչները 40-ական թվականներից մինչև 60-ական թվականները, հասարակական **բոլոր** հարցերը հանգում էին ճորտատիրական իրավունքի և նրա մնացորդների դեմ մղվող պայքարին: Հասարակական-տնտեսական նոր հարաբերությունները և նրանց հակասությունները այն ժամանակ դեռ սաղմնային վիճակում էին: Ուստի և այն ժամանակ բուրժուազիայի գաղափարախոսների մեջ ոչ մի շահախնդրություն չէր դրսևորվում. ընդհակառակը, թե՛ Արևմուտքում և թե Ռուսաստանում նրանք միանգամայն անկեղծորեն հավատում էին ընդհանուր բարօրությանը և անկեղծորեն

ցանկանում էին այն, անկեղծորեն չէին տեսնում (մասամբ դեռ չէին կարող տեսնել) հակասություններ այն կարգի մեջ, որ ճորտատիրականից էր անում» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 2, էջ 650):

Մարդու կյանքի իմաստի, նրա կոչման ու դերի առաջադիմական լուծումը մշակեց Նալբանդյանը: Վերջինս այս հարցը զուգակցում է արտաքին ու ներքին հարստահարիչների դեմ ժողովրդի պայքարի, նրա ակտիվ գործունեության հետ, առաջ մղելով այդ պրոցեսի սոցիալական ասպեկտը:

«Տնտեսական խնդիր—մարդ» բնականոն հարաբերության ստեղծումը, ըստ Նալբանդյանի, մարդու գործունեության հիմնական նպատակն է, որովհետև «Տնտեսական խնդիրը միակ խնդիր է մարդու կյանքը և գոյությունը ապահովելու համար և որչափ ծանր արժեք ունի այս խնդիրը, որչափ մարդը անքակտելի կապված է նորա հետ, այնքան դժբախտ է եղել այդ խնդրի ճակատագիրը» (Մ. Նալբանդյան, **ԵԼԺ**, հ. 3, էջ 51): Զարգացնելով այս միտքը՝ Նալբանդյանը մարդու հասարակական վարքն ու գործունեությունը, ազատության ձեռքբերման հնարավորությունը դետերմինացնում է «տնտեսական խնդիրով» և այդ եղանակով բարձրանում է մինչև մարդու հեղափոխական գործունեության ընդունումը: Նշելով, որ «...մարդուն համար, իբրև առաջին խնդիր առնում ենք տնտեսական խնդիրը և անվանում ենք նորան **«մահու և կյանքի խընդիր»»** (նույն տեղը, էջ 97), Նալբանդյանը գտնում էր, որ այդ նշանակում է «մարդ և հաց», առնչվում է գոյություն ունեցող սոցիալական սիստեմների հեղաշրջման հետ և «...կանուխ թե ուշ, թեև սոսկալի փոթորիկներով, պիտի լուծվի» (նույն տեղը, էջ 81): Նալբանդյանը, այսպիսով, իմաստավորում է մարդու սոցիալական վիճակը, հիմնավորում սոցիալ-տնտեսական խնդիրները «փոթորիկներով» լուծելու գաղափարը:

Ըստ Նալբանդյանի, պատմության զարգացումը պայմանավորող իրական ուժը ժողովուրդն է և ազգի, հասարակության նյութական, հոգևոր-բարոյական մակարդակը պետք է որոշվի «հասարակ ժողովրդի» իրական վիճակով: Այս գաղափարը կոնկրետացնելով հայ ազգի նկատմամբ՝ Նալբանդյանը նշում էր, որ ազգ ասելով պետք է նկատի ունենալ «...հայոց հասարակ ժողովուրդը», «այն խեղճ և կարեկցության արժանի ժողովուրդը, որի վերա ծանրացել է ազգային ապաքաղդության հետևանքը» (նույն տեղը, հ. 1, Երևան, 1945, էջ 452). «Ազգ ասելով պիտի իմանալ հասարակ ժողովուրդը և ոչ նորա միջից, նորա քրտինքով և նորա արյունով հառաջացած մի քանի մեծատունք» (նույն տեղը, հ. 3, էջ 45): Այսպիսով, Նալբանդյանը նախ փորձում է ակնբախ դարձնել ազգի սոցիալական վիճակը, բացահայտում է ազգի բուն բովանդակությունը և ապա՝ կոնկրետացնում մարդու հասարակական գործունեության նպատակայնությունը: «Այն մարդը,— նշում էր նա,— որ սիրում է ազգը, որ նվիրում է յուր անձը ազգի բարոյական սպասավորության, պարտական է ծառայել... հասարակ ժողովրդի օգտին» (նույն տեղը, հ. 1, էջ 453):

Ազգը և, ընդհանրապես, մարդկությանը ամեն տեսակ ճնշումից ազատագրելը, ազատության համար մղած պայքարը Նալբանդյանը համարում էր սոցիալ-քաղաքական առաջընթացի ամենամեծ չափանիշը, իսկ դրա իրականացումը՝ մարդու կյանքի իսկական իմաստը: Այս տեսանկյունից էր նա քննադատում գաղութատիրությունը, ազգերի բռնի ստրկացումը և հիմնավորում ազգային-ազատագրական շարժումների անհրաժեշտությունն ու արդարացիությունը: Այս տեսակետից էր նա առաջ քաշում հասարակության վերակառուցման, թեև ուտոպիական, բայց սոցիալիստական ծրագիրը, փորձում լուծել «հասարակ ժողովրդի» համար կյանք արժեցող «հացի» խնդիրը:

Մարդուն համարելով հասարակական էակ, Աբովյանը, Նազարյանը, Նալբանդյանը մարդու գոյության հնարավորությունը տեսնում են հասարակական որոշակի պայմանների մեջ: Ծեշտելով հասարակ ժողովրդին սոցիալական ստրկացումից ազատագրելու, սոցիալական կյանքի հեղափոխական վերակառուցման գաղափարը և մարդու գործունեությունն ու կյանքի իմաստը մեկնաբանելով այդ համակարգում, Նալբանդյանը հանդես էր գալիս որպես հեղափոխական դեմոկրատիզմի ականառու ներկայացուցիչ, Գերցենի, Չերնիշևսկու գաղափարական զինակից: Այնպիսի մի ժամանակ, երբ «սոցիալիստական պրոլետարիատի հեղափոխությունը **դեռևս** չէր հասունացել» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 18, էջ 14), Նալբանդյանը հասարակական երևույթների ուսումնասիրման իր առաջադիմական կողմնորոշվածությամբ հայ իրականության մեջ պայմաններ էր ստեղծում գիտական սոցիալիզմի գաղափարների հետագա տարածման համար:

---



# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆԵՐԴՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ արդյունավետության բարձրացման և այն զարգացման ինտենսիվ ուղու փոխադրելու կուսակցության կուրսը օբյեկտիվորեն ենթադրում է երկրի էկոնոմիկայում կոմպլեքս միջոցառումների մշակում և իրագործում: Այս կենտրոնական տնտեսական խնդրի լուծմանը պետք է նպատակամղվեն պլանավորումը և գիտատեխնիկական քաղաքականությունը:

Տնտեսական զարգացման արդի փուլում արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական գործոնը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումում, ժողովրդական տնտեսության մեջ ռեզերվները «պետք է որոնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում, գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումները արտադրության մեջ լայնորեն և արագ ներդնելու գործում»:

Մեր երկրում հիմնարար և կիրառական հետազոտությունների բնագավառում առկա հաջողությունների, նոր նյութերի, տեխնիկայի, տեխնոլոգիական պրոցեսների և այլ տարրերի ստեղծման հետ միասին դեռևս չեն հաղթահարված մի շարք դժվարություններ: Զգգձգվում են նոր տեխնիկայի որոշ տեսակների մշակման, յուրացման և ներդրման ժամկետները: Չլուծված հարցեր կան տնտեսական սախանիզմի, հատկապես գիտատեխնիկական առաջընթացի կառավարման, նրա պլանավորման, ֆինանսավորման, տնտեսական և նյութական խթանման գործում:

Գրախոսվող գիրքը* նվիրված է գիտատեխնիկական առաջընթացի կառավարման պրոբլեմների հետազոտմանը: Նրանում արծարծվում են հաստոցաշինության մեջ ԳՏՀ-ի էության և առանձնահատկությունների, արտադրության արդյունավետության վրա նոր տեխնիկայի ազդեցության, կոմպլեքսային պլանավորման հարցերը, պարզաբանվում են արտադրության կազմակերպման և վերազինման առաջավոր ձևերը, ցույց է տրվում տնտեսական խթանման մեխանիզմը, բացահայտվում են նոր տեխնիկայի ներդրման համար նյութական խրախուսման սիստեմի կատարելագործման հնարավորությունները: Այս հարցերի սոսկ թվարկումը վկայում է աշխատանքի հագեցվածության, հետազոտվող բնագավառի առավել հրատապ հարցերի ընդգրկման մասին: Կոնկրետ նյութի հիման վրա տրված է Հայկական ՍՍՀ հաստոցագործիքաշինական արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի փաստական արդյունավետության վերլուծությունը:

Հեղինակը պարզել է, որ պլանային ցուցանիշների համակարգում «հետազոտություն—արտադրություն» ցիկլի ոչ բոլոր փուլերն են ընդգրկված, տեխնիկական և արտադրական օղակների միջև չի հաղթահարված մասնատվածությունը, թույլ է նոր տեխնիկայի ազդեցությունը արտադրության տեխնիկատնտեսական կարևորագույն ցուցանիշների վրա: Գրքում հիմնավորված է այն դրույթը, որ անհրաժեշտ է նոր տեխնիկայի առաջադրանքները կազմել ընդհանուր տնտեսական գործունեության արդյունքների բազայի վրա: Արտադրության տեխնիկական զարգացման ցուցանիշների համակարգն ավելի կոմպլեքսային դարձնելու համար առաջարկվում է կիրառել նոր տեխնիկայի ներդրման հաշվին արտադրության ֆոնդատարության և նյութատարության փոփոխության պլանային ցուցանիշներ: Նշենք, որ արտադրանքի նյութատարությունը, այսինքն՝ ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու հաշվով նյութական ծախսումների մակարդակը 1983 թ. հունվարից արդեն մտցված է արդյունաբերական արտադրության պլանավորվող ցուցանիշների համակարգում:

Այստեղ իրավացիորեն նշվում է, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում կազմակերպական-կառավարչական լուծումների արդյունավետության գնահատման չափանիշ պետք է ընդունել հասարակական պահանջ-

* А. Д. Гомцян, Совершенствование управления внедрением новой техники, изд.-во АН Арм. ССР, Ереван, 1982.

մունքների բավարարման աստիճանը: Հաստոցագործիքաշինական արդյունաբերության վերաբերմամբ այս չափանիշի համապատասխանությանը խոչընդոտում են արտադրության ոչ բավարար համակենտրոնացումն ու մասնագիտացումը: Ճյուղում ռեզերվների առկայության մասին է վկայում այն փաստը, որ հանրապետությունում հաստոցների տեսակների կեսը պատրաստվում է փոքր արտադրախմբերով և միայն 5—7 տոկոսը՝ սերիաներով:

Ի դեպ, խոշոր ձեռնարկություններում նոր տեխնիկայի միջոցառումների արդյունավետությունը 1,5 անգամ ավելի բարձր է, քան փոքրերում:

Արժեքավոր են նոր տեխնիկայի ներդրման տնտեսական խթանման մեխանիզմի կատարելագործման առաջարկությունները: Բանն այն է, որ հաստոցագործիքաշինական արդյունաբերության ձեռնարկություններում լիովին չի բավարարվում նոր տեխնիկայի յուրացման միջոցների պահանջը: Նոր արտադրանքի յուրացման համար կենտրոնացված ֆոնդերից կատարվող հատկացումների չափերի և պահանջմունքների միջև առկա անհամամասնության հետևանքով արտադրանքի տարեկան նորացումը կազմում է ընդամենը 3—4 տոկոս: Հեղինակը հանդես է գալիս մասհանումների նորմատիվների տարբերակման օգտին՝ ելնելով արտադրանքի ընդհանուր ծավալում նոր արտադրանքի բաժնից, առաջարկելով տեխնիկայի յուրացման ֆոնդի մեջ մտցնել աշխատանքների խրախուսման ծախսերը: Ինչ վերաբերում է գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդին, ապա ուշադրության արժանի է գրքում առաջադրված այն միտքը, որ այդ ֆոնդի հաշվին հատուցվեն ոչ միայն նոր տեխնիկայի յուրացման ժամանակամիջոցի լրացուցիչ ծախսերը, այլև դրա հետ կապված շահույթի կորուստները:

Գրքի համառոտ վերլուծությունը վկայում է, որ այնտեղ ձևակերպված են մի շարք ուշագրավ առաջարկներ՝ ուղղված նոր տեխնիկայի կառավարման կատարելագործմանը:

Անշուշտ, աշխատանքը զերծ չէ նաև թերություններից: Պրոբլեմի ծավալն ու բարդությունը նկատի ունենալով, վատ չէր լինի, եթե մի շարք հարցեր ավելի մանրամասն քննարկվեին: Չնայած օգտագործված գրականության համեմատաբար մեծ ցանկին, դրանց հրատարակությունը հիմնականում վերաբերում է 70-ական թվականներին: Մինչդեռ տվյալ պրոբլեմը գրականության մեջ առավել լայնորեն լուսաբանվել է 70-ական թվականների վերջերին և 80-ական թվականների սկզբին: Այդ մասին վկայում է նաև տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. որոշումը: Գրախոսվող գիրքը, արծարծված հարցերի համակողմանի շարադրման շնորհիվ, արժանի է դրական գնահատականի: Այն հետաքրքրությամբ կընդունեն գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական պրոբլեմների բնագավառի մասնագետները, տնտեսագետները, ինժեներատեխնիկական աշխատողները:

**Ի. Վ. ՌԱԽԼԻՆ**
**Տնտեսական գիտությունների դոկտոր**
(Մոսկվա)



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, կուսակցական կյանք բաժին՝ 52—05—58, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 25.03.83 թ.: Ստորագրված է տպագրության՝ 15.04.83 թ.: ՎՖ 06787: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15832: Պատվեր՝ 788:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.